

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**12**

ԴԵԿՏԵՄԲԵՐ, 1985
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.

ИЗДАЕТСЯ С 1922 г.
Выходит один раз в месяц
на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический
и политический журнал ЦК КП Армении

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



ԵՐԵՎԱՆ ◆ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ







# ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ, ԴԵՊՈՒՏԱՏ Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ

## ՍՍՀՄ տասնմեկերորդ գումարման Գերագույն սովետի չորրորդ նստաշրջանում 1985 թվականի նոյեմբերի 27-ին

*Ընկեր դեպուտատնե՛ր:*

*ՍՍՀՄ Գերագույն սովետի սույն նստաշրջանի քննարկմանն են դրված սովետական պետության ներքին և արտաքին քաղաքականության կարևորագույն հարցեր:*

*ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1986 թվականի պետական պլանի և պետական բյուջեի մասին այս նստաշրջանի ընդունած օրենքները հսկայական նշանակություն ունեն մեր երկրի, նրա ներկայի ու ապագայի համար, յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվի, յուրաքանչյուր սովետական ընտանիքի համար: Առաջիկա 1986 թվականը տասներկուերորդ հնգամյակի սոսկ առաջին տարին չէ: Այն որակապես նոր փուլ է բացում սովետական հասարակության զարգացման մեջ:*

*1986 թվականի պլանն արտացոլում է երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու կուսակցության ստրատեգիական գիծը: Պլանով առաջադրված են ազգային եկամտի, արդյունաբերության ու գյուղատնտեսության արտադրանքի, աշխատանքի արտադրողականության աճի ավելի արագ տեմպեր: Աճելու է նյութական ռեսուրսների օգտագործման արդյունավետությունը: Որոշված է այն ճյուղերի առաջնային զարգացում, որոնք կոչված են ապահովելու գիտատեխնիկական առաջադիմությունը, արտադրանքի որակի բարձրացումը:*

*Միջոցառումներ են նախատեսված արտադրության վերակառուցումն արագացնելու, այն նորացնելու և արդիականացնելու, կառավարումն ու տնտեսական մեխանիզմը կատարելագործելու վերաբերյալ: Նախատեսված է ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացում:*

*Կարևոր է, ընկերներ, որ մենք բոլորս էլ մշտապես ի նկատի ունենանք 1986 թվականի պլանի առանձնահատկությունները:*

*Հնգամյակի արդեն առաջին տարում պետք է հստակ ռիթմ հաղորդվի ամբողջ հնգամյակին: Ելնելով դրանից, 1986 թվականին ժողովրդական տնտեսության զարգացման այնպիսի տեմպեր են նախատեսված, որ դրանց իրականացումը հետագա տարիներին լարվածության աստիճանաբար ուժեղացման պայմաններում կապահովի ամբողջությամբ վերցված հնգամյակի առաջադրանքների իրացման ուղի դուրս գալը: Դա թույլ կտա խուսափել այն վիճակից, որն ստեղծվել էր վերջին հնգամյակում, երբ առաջին տարիների համար նվազեցված ցուցանիշներ էին սահմանվում, իսկ հիմնական հավելաճը տեղի էր ունենում վերջին տարիներին: Թե այդ պրակտիկան ինչ բացասական արդյունքների հանգեցրեց՝ հայտնի է:*

Պլանի երկրորդ առանձնահատկությունն այն է, որ նա կազմվել է գիտատեխնիկական առաջընթացն արագացնելու անհրաժեշտությունն առավելագույնս հաշվի առնելով։ Ելնելով ՍՄԿԿ Կենտկոմում կայացած հունիսյան խորհրդակցության հիմնադրույթից, պլանի մեջ նախ և առաջ մտցվել են գիտատեխնիկական առաջընթացն արագացնելու առաջադրանքներ, որոնք նախատեսված են ժողովրդական տնտեսության ճյուղերում գիտության ու տեխնիկայի կարևորագույն ուղղությունները զարգացնելու մասին ընդունված որոշումներով։ Միաժամանակ մեծապես վերանայված են պլանավորման գործում ստեղծված հիմքերը։ Պլանում առաջին անգամ են նախատեսված ճյուղերի գիտատեխնիկական առաջընթացի, նրա արդյունավետության կարևորագույն ընդհանրացնող ցուցանիշներ։ Եվ այդ ցուցանիշները սահմանվում են գիտության ու տեխնիկայի զարգացման առաջավոր բնագծեր դուրս գալն ապահովելու ուղղությամբ մինիստրությունների, միավորումների և ձեռնարկությունների գործնական աշխատանքը ակտիվացնելու նպատակով։

1986 թվականի պլանի հաջորդ առանձնահատկությունը տնտեսավարման ինտենսիվ մեթոդներին գործնականորեն անցնելն իրականացնելու կողմնորոշումն է։ Դա թելադրվում է բուն կյանքի կողմից, աշխատանքային և նյութական ռեսուրսների ոլորտում ստեղծված ոչ հասարակ իրադրությամբ, էկոնոմիկայի աճի հիմնականում էքստենսիվ գործոնների սպառումով։ Եկող տարի մենք պետք է հասնենք այն բանին, որ արտադրության ծավալների հավելաճը առավելագույնս ապահովվի ռեսուրսախնայողության հաշվին, այլ խոսքով՝ տնտեսումը իրականում դառնում է արտադրության ծավալների ամբողջ հավելաճի ռեսուրսաապահովման հիմնական աղբյուրը։ Այդ են վկայում հետևյալ թվերը։ Եկող տարի ազգային եկամտի հավելաճի 97 տոկոսը ստացվելու է աշխատանքի արտադրողականության աճի հաշվին, ազգային եկամտի մետաղատարությունը նվազելու է 2,7 տոկոսով, իսկ էներգատարությունը՝ 3 տոկոսով։

Եվ, վերջապես, դա լայն անցումն է իրենց դրականորեն դրսևորած տնտեսավարման նոր մեթոդներին։ 1986 թվականի հունվարից արդյունաբերությունը ամբողջ արտադրանքի կեսից ավելին թողարկելու է նոր պայմաններով աշխատող ձեռնարկություններում։

Մի խոսքով, ընկերնե՛ր, ճիշտ գիծ է վերցված։ Այժմ մենք պետք է այն իրացնենք թե՛ ճյուղերում, հանրապետություններում, երկրամասերում ու մարզերում, միավորումներում ու ձեռնարկություններում պլանների հետագա վերամշակման պրոցեսում և թե, անշուշտ, գործնական կոնկրետ աշխատանքում։ Այս կողմը անհրաժեշտ է շեշտել նաև այն պատճառով, որ կենտրոնում և տեղերում, այդ թվում՝ պլանատնտեսական մարմիններում, շատ աշխատողներ լիովին չեն տոգորվել երկրի տնտեսական, սոցիալական ու ֆինանսական պրոբլեմների նորովի գնահատման և լուծման կարևորության ըմբռնումով։

Սույն նստաշրջանը տեղի է ունենում անչափ պատասխանատու նախահամագումարյան շրջանում։ ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումը մշակեց հասարակության սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու կուրսը, դրեց տնտեսական և քաղաքական խնդիրների լուծման նկատմամբ ցուցաբերվող մոտեցումներում էական վերափոխումների սկիզբը, նոր ռիթմ հաղորդեց կուսակցական, պետական, սովետական կազմակերպությունների, մեր բոլոր կադրերի և աշխատավորական կոլեկտիվների ամբողջ գործունեությանը։

Կուսակցության քաղաքական կուրսը ինչպես ներքին կյանքի հարցերում, այնպես էլ միջազգային պրոբլեմներում իր առավել լիակատար արտացոլումն է ստացել ՍՄԿԿ XXVII համագումարի քննարկմանը ներկայացվելիք տեսական ու քաղաքական կարևորագույն փաստաթղթերում՝ ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության, կուսակցության կանոնադրության փոփոխությունների, ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների նախագծերում։

Ժողովրդի հետ կուսակցության ծավալած մեծ խորհրդի առաջին ար-



դյունքները վկայում են, որ քննարկման դրված փաստաթղթերը խոր գոհունակություն են պատճառում սովետական մարդկանց։ Կուսակցության ստրատեգիական կուրսին ցույց տրվող ակտիվ պաշտպանությունը՝ խոսքով ու գործով ցույց տրվող պաշտպանությունը, աղբյուր է ծառայում մեր լավատեսության համար, ընտրած կուրսի ճշտության նկատմամբ, այն բանի նկատմամբ վստահության համար, որ նախատեսվածը անպայման կկատարվի։ (Երկարատև ծափահարություններ)։

Ինչպես գիտեք, ընկեր դեպուտատնե՛ր, կուսակցության Կենտրոնական կոմիտեն և սովետական կառավարությունը վերջերս մի շարք խոշոր միջոցներ են ձեռնարկել ինտենսիվ զարգացման ռելսերի վրա էկոնոմիկայի փոխադրումն արագացնելու, ժողովրդական տնտեսության կառավարման արդյունավետությունը բարձրացնելու նպատակով։ Գործնական քայլեր են արվում այսուհետև էլ կարգուկանոնը, աշխատանքային ու պետական կարգապահությունը, խստագույն խնայողության ռեժիմը ամրապնդելու, հարբեցողության և ալկոհոլիզմի դեմ պայքարելու համար։ Այլ խոսքով՝ հասարակական կյանքի բոլոր ոլորտներում ծավալվել է մեծ, լարված աշխատանք, որն արդեն սկսել է տալ իր պտուղները։

Այն նորը, ինչ այսօր մեր կյանքն է մտնում, ալեկոծեց սովետական մարդկանց, ակտիվացրեց նրանց ստեղծագործական ուժերը, կրկին ու կրկին ցույց տվեց, թե ինչպիսի հսկայական ռեզերվներ ու հնարավորություններ են թաքնված սոցիալիստական կարգերի մեջ։

Այժմ մենք կարող ենք հաստատապես ասել. գործերն սկսել են փոխվել դեպի լավը։ Արագանում են արտադրության աճի տեմպերը, բարելավվում են մյուս տնտեսական ցուցանիշները։ Չնայած տարվա սկզբին ժողովրդական տնտեսության մի շարք ճյուղերում եղած խափանումներին, սովետական մարդիկ կարողացան շտկել դրությունը, ապահովել էկոնոմիկայի դուրսբերումը պլանավորված բնագծեր։ Դրական տեղաշարժեր են կատարվում երկրի նաև ագրարային հատվածում։

Այն բանում, ինչ ձեռք է բերված, հսկայական ծառայություն ունի մեր հերոսական բանվոր դասակարգը, որը ուժ ու եռանդ չխնայելով, դժվարությունները հաղթահարելով, ամեն ինչ արեց նախատեսված պլանները կատարելու համար։ Դրական արդյունքների մեջ առկա է կոլտնտեսային գյուղացիության, ագրոարդյունաբերական համալիրի բոլոր աշխատողների լարված աշխատանքը։ Մեր նվաճումներում առկա է գիտնականների, ինժեներների, ժողովրդական մտավորականության ստեղծագործական միտքը։ Որպես կարևոր շատ ձեռնարկումների առաջամարտիկ ու նախաձեռնող է հանդես եկել մեր երիտասարդությունը, որը համարձակորեն և եռանդով ձեռնամուխ է լինում դժվարին ու բարդ խնդիրների լուծմանը, ակտիվորեն զորավիգ է լինում հասարակության մեջ կատարվող վերափոխումներին, դրանց հետ կապելով իր ապագան։

Այդ վերափոխումները մենք նաև կապում ենք կուսակցական, սովետական ու արհմիութենական մարմինների, մեր բոլոր կադրերի գործունեության ակտիվացման հետ։

Մի խոսքով, ընկեր դեպուտատնե՛ր, քիչ բան չի արվում։ Սակայն սխալ կլիներ այդ ամենը գերագնահատել։ Ասենք՝ դա մեր ավանդույթներին չի էլ համապատասխանում։ Մենք գտնվում ենք նախատեսված ուղու՝ բարդ, լարված ուղու սկզբնամասում, որը պահանջում է կյանքի առաջադրած խնդիրների նկատմամբ ստեղծագործական մոտեցումը զուգորդել նպատակասլացության հետ, բարձր կարգապահության, անձնվիրության հետ։ Մենք հսկայական ռեզերվներ ու հնարավորություններ ունենք, և պետք է հիմնավորապես աշխատել դրանք գործի դնելու, առավելագույն հատույցով օգտագործելու համար։ Մենք այդ բանը պետք է անենք տնտեսական, սոցիալական ու մշակութային շինարարության բոլոր ուղղություններում, ամենից առաջ այնտեղ, որտեղ իրադրությունը մնում է բարդ, իսկ ետ մնալը դանդաղ է հաղթահարվում։

Եվ այժմ՝ հնգամյակի ավարտափուլում, պետք է լավ աշխատել, որպեսզի

վել էին երկկողմ համագործակցության գրեթե բոլոր թելերը։ Բուն լիցքաթափումը հայտարարվել էր Ամերիկայի Միացյալ Նահանգների շահերին հակասող։

Վարելով ՍՍՀՄ-ի նկատմամբ ռազմական գերազանցության հասնելու կուրս, վարչակազմը ձեռնամուխ եղավ ԱՄՆ-ի միջուկային և այլ կարգի վերազինման ծրագրերի իրագործմանը։ Արևմտյան Եվրոպայում սկսվեց առաջին հարվածի ամերիկյան հրթիռների ծավալումը։ Ստեղծվում էր այնպիսի իրադրություն, որը հղի էր ռազմաքաղաքական անորոշության և դրա հետ կապված ռիսկի բարձր մակարդակով։

Եվ, վերջապես, ի լրումն հայտնվեց «աստղային պատերազմների» ծրագիրը՝ այսպես կոչված «ստրատեգիական պաշտպանական նախաձեռնությունը»։ Վաշինգտոնում ուղղակի «հիվանդացան» այդ գաղափարով, այնքան էլ չմտածելով այն ծանր հետևանքների մասին, որ անխուսափելի են այդ գաղափարի իրագործման դեպքում։ Զենքով տիեզերք դուրս գալու մտադրությունը անչափ վտանգավոր է աշխարհի առանց բացառության բոլոր ժողովուրդների համար։

Բայց մենք գիտեինք նաև մեկ այլ բան. ԱՄՆ-ի նման քաղաքականությունն անխուսափելիորեն պետք է բախվի ռեալ իրականության հետ։ Այդպես էլ եղավ։ Սովետական Միությունը իր դաշնակիցների հետ մեկտեղ՝ պարզորոշ հայտարարեց. իր նկատմամբ ռազմական գերազանցություն թույլ չի տա։

Անգամ ԱՄՆ-ի դաշնակիցների շրջանում շփոթմունք առաջացավ իրենց անվտանգության շահերի բացահայտ քամահրման, ռազմական գերազանցության ցնորքի ետևից ընկած ամեն ինչ բախտախաղի դնելու Վաշինգտոնի պատրաստակամության դեմ-հանդիման։ Բուն Միացյալ Նահանգներում էլ այդ կուրսը լուրջ կասկածներ առաջ բերեց։ Իսկ «աստղային պատերազմների» նախապատրաստության պլանների հռչակումը ամբողջ մոլորակում հնչեց որպես տագնապի իսկական ազդանշան։

Իրենց հաշիվներում սխալվեցին նաև նրանք, ովքեր կարծում էին, թե առճակատման իրենց գիծը որոշիչ կդառնա միջազգային զարգացման համար։ Այս կապակցությամբ, թերևս, ավելացնեմ, որ աշխարհակալության մասին երազանքները արատավոր են ի սկզբանե՝ և՛ նպատակի առումով, և՛ միջոցների առումով։ Ինչպես հավերժական շարժիչի նախագծերն են ծնվում բնության տարրական օրենքները չիմանալուց, այնպես էլ կայսրապետական հավակնություններն առաջանում են արդի աշխարհի մասին ռեալ իրականությունից հեռու պատկերացումներից։

Ռազմաստրատեգիական հավասարակշռությունը խախտելու ԱՄՆ-ի գծին տրվող վճռական հակահարվածը Սովետական Միությունը զուգորդում էր լայնընդգրկուն խաղաղասիրական նախաձեռնությունների առաջադրման, խաղաղության ու անվտանգության կենտրոնական հարցերում զսպվածության և կոնստրուկտիվության դրսևորման հետ։

Մեր նախաձեռնություններով, իսկ դրանք այնքան էլ քիչ չեն, մենք պարզորոշ ցույց ենք տվել, թե ինչի ենք ձգտում համաշխարհային ասպարեզում, ինչի ենք կոչում ԱՄՆ-ին ու նրա դաշնակիցներին։ ՍՍՀՄ-ի այդ գործողություններն արժանացել են համաշխարհային հասարակայնության ջերմ հավանությանը, դրանք բարձր են գնահատել շատ երկրների կառավարություններ։

Այդ գործոնների ազդեցության ներքո Վաշինգտոնը ստիպված էր մանևրել։ ԱՄՆ-ի վարչակազմի հայտարարություններում ի հայտ եկան ցուցադրական խաղաղասիրության նոտաներ։ Դրանք չէին ամրապնդվում գործերով, բայց դրանց բուն հայտնվելը հատկանշական էր։

Տարվա սկզբին մեր նախաձեռնությամբ համաձայնություն ձեռք բերվեց ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի նոր բանակցությունների շուրջը, բանակցություններ, որոնք պետք է փոխադարձ կապով ընդգրկեն տիեզերական և միջուկային սպառազինությունների ամբողջ կոմպլեքսը, նպատակ ունենան թույլ չտալ սպառազինությունների մրցավազք տիեզերքում և դադարեցնել այն երկրագնդի վրա։

Սովետա-ամերիկյան հարաբերությունների մթնոլորտը, ինչ-որ չափով նաև ԱՄՆ-ի միջազգային վարքագիծը, սկսել են փոփոխություններ կրել, ինչը,



իհարկե, նույնպես չէր կարող հաշվի չառնվել բարձր մակարդակի հանդիպման հնարավորության հարցը քննարկելիս։

Ընդունելով այդպիսի որոշում, մենք վճռականորեն ելնում էինք այն բանից, որ բանակցություններում կենտրոնական տեղը պետք է գրավեն այն հարցերը, որոնք որոշում են մեր հարաբերություններն ու աշխարհի ամբողջ իրադրությունը՝ անվտանգության հարցերը։ Ընդ որում մենք հաշվի էինք առնում Եվրոպայի և աշխարհի քաղաքական և ստրատեգիական իրողությունները, մեր բարեկամների ու դաշնակիցների կարծիքը, շատ երկրների կառավարությունների ու հասարակական շրջանների դիրքորոշումը, Սովետական Միության ուղղված նրանց թախանձագին դիմումները՝ հնարավոր ամեն բան անել, որպեսզի բարձր մակարդակի հանդիպումը կայանա։ Մենք հասկանում էինք, թե որքան շատ հույսեր են այդ հանդիպման հետ կապվում ամբողջ աշխարհում, և կոնկրետ քայլեր ձեռնարկեցինք միջազգային կլիման առողջացնելու, հանդիպման համար այն ավելի նպաստավոր դարձնելու նպատակով։

Միջուկային և տիեզերական սպառազինություններին նվիրված ժնևի բանակցություններում մենք արեցինք կոնկրետ և արմատական առաջարկություններ։ Ո՞րն է դրանց էությունը։

Մենք առաջարկեցինք նախ և առաջ լիովին արգելել հարվածային տիեզերական սպառազինությունները։ Առաջարկեցինք, որովհետև տիեզերքում սպառազինությունների մրցավազքն սկսելը, և անգամ երկրաշուրջ տարածությունում միայն հակահրթիռային համակարգեր ծավալելը, ոչ ոքի անվտանգությունը չի ամրապնդի։ Տիեզերական «վահանով» պաշտպանված հարձակման միջուկային միջոցները է՛լ ավելի վտանգավոր կդառնան։

Հարվածային տիեզերական միջոցների երևան գալը կարող էր ներկա ստրատեգիական հաշվեկշիռը վերածել ստրատեգիական քաոսի, բոլոր ուղղություններով առաջացնել սպառազինությունների տենդագին մրցավազք, խարխլել դրա սահմանափակման կարևորագույն հիմքերից մեկը՝ հակահրթիռային պաշտպանությանը նվիրված պայմանագիրը։ Դրա հետևանքով անվստահությունը երկրների միջև կաճի, իսկ անվտանգությունը զգալիորեն կնվազի։

Այնուհետև։ Հարվածային տիեզերական սպառազինությունների լրիվ արգելման դեպքում մենք առաջարկեցինք կիսով չափ կրճատել ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի ունեցած այն բոլոր միջուկային միջոցները, որոնք ունակ են հասնելու միմյանց տարածքները։ Իսկ դրանց միջուկային լիցքերի ընդհանուր թիվը կողմերից յուրաքանչյուրի համար կրճատել՝ թողնելով առավելագույնը 6000 միավոր։ Դա արմատական կրճատում է, որը չափվում է հազարավոր միջուկային լիցքերով։

Նման մոտեցումն արդարացի է։ Դա ընդգրկում է բոլոր այն միջոցները, որոնք կազմում են ուժերի ստրատեգիական հարաբերակցությունը, թույլ է տալիս հաշվի առնել յուրաքանչյուր կողմի համար ռեալ գոյություն ունեցող միջուկային սպառնալիքի ծավալը, անկախ այն բանից, թե ինչով և որտեղից են նրանց տարածքները հասցվում միջուկային լիցքերը՝ հրթիռով թե ինքնաթիռով, իր տարածքից թե դաշնակիցների տարածքից։

ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջուկային միջոցների կրկնապատիկ կրճատումը մենք դիտում ենք որպես սկիզբ։ Պատրաստ ենք նաև առաջ գնալ՝ ընդհուպ մինչև միջուկային զենքի լրիվ ոչնչացումը, իհարկե, հաշվի առնելով նաև մյուս միջուկային պետություններին։

Հասկանալի է, որ միջուկային սպառազինությունների մրցավազքն առանձնակի անհանգստություն է պատճառում եվրոպական ժողովուրդներին։ Մենք լավ ենք հասկանում այդ անհանգստությունը։ Եվրոպան գերհագեցած է միջուկային միջոցներով։ Սովետական Միությունը հանդես է գալիս Եվրոպան թե՛ միջին հեռահարության և թե տակտիկական միջուկային զենքից լիովին ազատելու օգտին։ Սակայն ԱՄՆ-ը և ՆԱՏՕ-ի գծով նրա պարտնյորները դրան չեն համաձայնում։ Այդ ժամանակ մենք առաջարկեցինք սկսել գոնե միջանկյալ լուծումներից, իսկ հետո բանը տանել դեպի հետագա կրճատումներ։ Մենք համոզված ենք, որ մեր առաջարկությունները համապատասխանում

և, ես կասեի, չափազանց բացորոշ։ Այստեղ անհնար է խորամանկությամբ գերազանցել մեկ-մեկու կամ էլ բավարարվել քաղաքական ու պրոպագանդիստական շառամներով. անչափ շատ բան է կախված պատերազմի ու խաղաղության այդ առանցքային հարցերից։

Ամերիկյան կողմը հանդիպման ընթացքում համառորեն պնդում էր «ստրատեգիական պաշտպանական նախաձեռնության» իր ծրագրի իրականացման վրա։ Մեզ ասում էին, թե խոսքը վերաբերում է զուտ պաշտպանողական միջոցների ստեղծմանը, որոնք իբր ընդհանրապես զենք չեն հանդիսանում։ Ասում էին նաև, թե այդ միջոցները կօգնեն կայունացնելու իրադրությունը, ընդհանրապես ազատվելու միջուկային զենքից։ Նույնիսկ առաջարկում էին ինչ-որ տեսանելի ապագայում «կիսել» այդ միջոցները, միմյանց առջև բացել լաբորատորիաների դռները։

Մենք պրեզիդենտին անկեղծորեն ասացինք, որ համաձայն չենք նման գնահատականներին։ Մենք այս բոլոր հարցերը մանրակրկիտ վերլուծեցինք և եկանք միանշանակ եզրակացության։ Տիեզերական սպառազինություններն ամենևին էլ պաշտպանողական չեն։ Դրանք կարող են այն վտանգավոր պատրանքն ստեղծել, թե կարելի է առաջին միջուկային հարվածը հասցնել տիեզերական «վահանի» ետևից, իսկ պատասխան հարվածը կանխել կամ առնվազն թուլացնել։ Բացի դրանից, ի՞նչ երաշխիքներ կան, որ տիեզերական զենքը ինքնին չի օգտագործվի որպես երկրագնդի վրա նշանակետեր խոցելու միջոց։ Ամեն ինչ վկայում է հենց այն, որ ԱՄՆ-ի հակահրթիռային տիեզերական համակարգը հղացվում է բնավ էլ ոչ որպես «վահան», այլ որպես միասնական հարձակողական համալիրի մի մաս։

Իհարկե, մենք չենք կարող համաձայնել այն պնդմանը, թե դրա ծրագրով նախատեսվող տիեզերական միջոցները ընդհանրապես զենք չեն հանդիսանում։ Մենք չենք կարող նաև հույս դնել այն հավաստիացումների վրա, թե Միացյալ Նահանգները մեզ հետ կփոխանակեն այն, ինչ իրենց կհաջողվի ստեղծել այդ առումով։

Իսկ եթե լաբորատորիաները բացվեն, ապա դա պետք է արվի միայն հարվածային տիեզերական սպառազինությունների ստեղծման արգելքը վերահսկելու և բնավ էլ ոչ դրանք լեգալացնելու նպատակով։

Մեզ ասում են, թե ուզում են վերացնել հրթիռների վանդեպ եղած սարսափը, հասնել ընդհանրապես միջուկային զենքի վերացման։ Նման ցանկությունը կարելի է միայն ողջունել, դա լիովին համապատասխանում է մեր քաղաքականության նպատակներին։ Բայց չէ որ շատ ավելի հեշտ է վերացնել այդ սպառազինությունները, ընդ որում դրա համար չստեղծելով տիեզերական հարվածային համակարգեր։ Ինչո՞ւ տասնյակ ու հարյուր միլիարդավոր դոլարներ ծախսել և միջուկային սպառազինությունների կողքին դիզել նաև տիեզերական սպառազինությունների սարեր։ Ո՞րն է այստեղ իմաստը։

Ես պրեզիդենտին հարցրի. մի՞թե ԱՄՆ-ի ղեկավարությունը լրջորեն կարծում է, թե ամերիկյան տիեզերական զենքի ստեղծման պայմաններում մենք կկրճատենք մեր ստրատեգիական պոտենցիալը, մեր ձեռքերով ԱՄՆ-ին կօգնենք թուլացնելու այն։ Դրա վրա չպիտի հույս դնել։ Տեղի կունենա ճիշտ հակառակը. Սովետական Միությունը հավասարակշռությունը վերականգնելու համար ստիպված կլինի մեծացնել իր սպառազինությունների արդյունավետությունը, ճշգրտությունը, հզորությունը՝ այն հաշվով, որ, եթե պահանջվի, չեզոքացնի ամերիկացիների կողմից ստեղծվող «աստղային պատերազմի» էլեկտրոնային տիեզերական մեքենան։

Եվ մի՞թե ամերիկացիները իրենց ավելի ապահով կզգան, եթե Վաշինգտոնի կողմից պլանավորվող տիեզերական սպառազինությունների էշելոններին տիեզերքում ավելանա մեր զենքը։ Չէ՞ որ ԱՄՆ-ում չեն կարող հույս տածել, թե իրենք մենաշնորհատեր կդառնան տիեզերական տարածության մեջ։ Այդ ամենը առնվազն անլուրջ բան է։

Սակայն ԱՄՆ-ի վարչակազմը դեռևս չի հրաժարվում ռազմական գերազանցություն ստանալու հնարավորությունը փորձելու գայթակղությունից։ Ահա հիմա էլ ձեռնարկելով սպառազինությունների մրցավազքին տիեզերքում,



մտածում են առաջ անցնել մեզ էլեկտրոնիկայով և կոմպյուտերներով։ Բայց պատասխանը, ինչպես արդեն քանիցս եղել է անցյալում, մենք կգտնենք։ Ընդ որում գործնական, բավական արագ պատասխան ու, թերևս, պակաս թանկարժեք, քան ամերիկյան ծրագիրն է։ Այս բանը մենք նույնպես պրեզիդենտին ասացինք ամենայն պարզությամբ։ (Երկարատև ծափահարություններ)։

Կարծում եմ, մեր հարաբերություններում իսկական շրջադարձ կատարելու համար, որը համապատասխաներ ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի շահերին, աշխարհի ժողովուրդների շահերին, անհրաժեշտ են նոր մոտեցումներ, թարմ հայացք շատ բաների վրա և, որ գլխավորն է, երկու երկրների ղեկավարության քաղաքական կամք։ ՍՍՀՄ-ը, և ես սա ընդգծեցի Ժնևում, թշնամություն չի տածում ԱՄՆ-ի հանդեպ, հարգում է ամերիկյան ժողովրդին։ Մենք մեր քաղաքականությունը չենք կառուցում ԱՄՆ-ի ազգային շահերին դիպչելու ցանկության վրա։ Կասեմ ավելին. մենք, օրինակ, չէինք ուզենա ստրատեգիական հաշվեկշռի փոփոխում մեր օգտին։ Չէինք ուզենա այն պատճառով, որ նման իրավիճակը կուժեղացնի մյուս կողմի կասկածամտությունը, կմեծացնի ընդհանուր իրավիճակի անկայունությունը։

Կյանքն այնպես է դասավորվում, որ մեր երկու երկրներին հարկ կլինի ընտելանալ ստրատեգիական զուգակշռությանը՝ որպես բնական վիճակի։ Հարկ կլինի հասնել այն բանի համատեղ ըմբռնմանը, թե կողմերից յուրաքանչյուրի սպառազինությունների ո՛ր մակարդակը կարելի է համեմատաբար բավարար համարել նրա հուսալի պաշտպանության տեսանկյունից։ Մենք համոզված ենք, որ այդ բավարարության մակարդակը շատ ավելի ցածր է այն բանից, ինչ փաստորեն այժմ ունեն ՍՍՀՄ-ը և ԱՄՆ-ը։ Իսկ դա նշանակում է, որ միանգամայն հնարավոր են ծանրակշիռ գործնական քայլեր սպառազինությունների սահմանափակման և կրճատման ուղղությամբ։ Միջոցառումներ, որոնք ո՛չ միայն չեն թուլացնի, այլև կամրապնդեն ինչպես ՍՍՀՄ-ի, այնպես էլ ԱՄՆ-ի անվտանգությունը, աշխարհի ամբողջ ստրատեգիական կայունությունը։

Ի՞նչ ասել հանդիպման ժամանակ քննարկված մյուս հարցերի մասին։

Կսկսեմ ռեգիոնալ կոնֆլիկտների պրոբլեմից։ Երկու կողմերն էլ մտահոգություն արտահայտեցին այդպիսի «թեժ կետերի» պահպանման առիթով։ Եվ դա հասկանալի է։ Նման կոնֆլիկտները վտանգավոր բան են, մանավանդ, որ միջուկային դարում դրանց ընդլայնման սպառնալիք կա։

Սակայն այդ կոնֆլիկտների պատճառների և դրանց վերացման միջոցների նկատմամբ մեր մոտեցումները, կարելի է ասել, ոչ թե պարզապես տարբեր են, այլ ուղղակի հակադիր։ ԱՄՆ-ը, որը սովոր է մտածել «շահերի ոլորտների» կատեգորիաներով, այդ պրոբլեմները հանգեցնում է Արևելքի և Արևմուտքի մրցակցությանը։ Բայց չէ՞ որ մեր օրերում դա ժամանակավրեպ բան է, կայսերապետական մտածողության ռեցիդիվ, որը ժխտում է ինքնուրույնաբար մտածելու և վճռելու ժողովուրդների մեծ մասի իրավունքը։

Այդ կոնֆլիկտների խորքային ակունքները բազմակողմանի են. մասամբ դրանց արմատները գալիս են պատմությունից, իսկ գլխավորը այն սոցիալական ու տնտեսական պայմաններն են, որոնցում դրված են ազատագրված երկրները։ Իհարկե, պատահական չէ, որ, խոսելով ռեգիոնալ կոնֆլիկտների պրոբլեմի մասին, ԱՄՆ-ը լռության է մատնում ապարտեիդի գազանությունները Հարավաֆրիկյան Հանրապետությունում, այդ երկրի ագրեսիան ընդդեմ իր աֆրիկացի հարևանների, ամերիկյան մարիոնետների պատերազմները Կենտրոնական Ամերիկայում և Հարավ-արևելյան Ասիայում, Իսրայելի ավազակությունը Մերձավոր Արևելքում և ուրիշ շատ բան։ Վաշինգտոնը փորձում է հավասարության նշան դնել ազգային ազատագրության ու սոցիալական առաջադիմության ուղիով ընթացող պետությունների օրինական կառավարությունների և հակահեղափոխության միջև։

Ինքնին հասկանալի է՝ մենք չէինք կարող ընդունել նման մեկնաբանումը։ Պրեզիդենտին ասվեց, որ մենք յուրաքանչյուր ժողովրդի ազատության և անկախության ուղու ինքնուրույն ընտրության անկապտելի իրավունքի ճանաչման կողմնակից ենք։ Այն բանի կողմնակիցը, որ այդ իրավունքը ոչ ոքի կող-

մից չտանահարվի, որ դրսից միջամտելու փորձեր չարվեն, որ հաղթի ազատությունը և ոչ թե բռնապետությունը։ Մենք եղել ենք ու կլինենք իրենց անկախությունը պաշտպանող ժողովուրդների կողմը։ Սա մեր սկզբունքային կուրսն է։ (Ծափահարություններ)։

Պրեզիդենտը շոշափեց Աֆղանստանի հարցը։ Այս առնչությամբ մի անգամ ևս հավաստվեց, որ Սովետական Միությունը հետևողականորեն հանդես է գալիս Աֆղանստանի շուրջն ստեղծված դրության քաղաքական կարգավորման օգտին։ Մենք այն բանի կողմնակիցն ենք, որ մեր բարեկամ դրացի Աֆղանստանը լինի անկախ չմիացած պետություն, որ հաստատվի Աֆղանստանի գործերին չմիջամտելու երաշխավորված ռեժիմ։ Դրանով իսկ կլուծվի նաև այդ երկրից սովետական զորքերի դուրսբերման հարցը։ Սովետական Միությունը և Աֆղանստանի կառավարությունը ամբողջովին դրա կողմնակիցն են։ Իսկ եթե որևէ մեկը խանգարում է հարցի շուտափույթ լուծմանը, ապա դա նախ և առաջ ԱՄՆ-ն է, որը ֆինանսավորում, պաշտպանում, զինում է հակահեղափոխականների հրոսակախմբերին, ձախողում այստեղ իրադրությունը նորմալացնելու համար գործադրվող ջանքերը։

Բանակցություններում զգալի տեղ գրավեցին երկկողմ հարաբերությունների հարցերը։ Վերջին ժամանակներս այստեղ ի հայտ եկած որոշակի աշխուժացումը հիմա վավերագրված է գիտության, կրթության ու մշակույթի բնագավառում փոխանակումների ու կոնտակտների վերաբերյալ, մեր երկրների միջև օդային հաղորդակցության վերահաստատման վերաբերյալ կոնկրետ համաձայնագրերով։

Բայց, իհարկե, այստեղ գոյություն ունեցող պոտենցիալը լրիվ չափով ծավալելը շատ ավելի հեշտ է այնպիսի պայմաններում, երբ կսկսվի անվտանգության հարցերի լուծումը, որոնք որոշում են մեր փոխհարաբերությունները։ Ու եթե պետք է համագործակցել, ապա հավասար հիմունքներով, առանց որևէ խտրականության ու նախապայմանի, առանց մյուս կողմի ներքին գործերին միջամտելու փորձերի։ Այստեղ մեր դիրքորոշումը հաստատուն ու հետևողական է։

Իսկ ինչպե՞ս կարելի է գնահատել Ժնևի հանդիպման գլխավոր արդյունքները։

Հանդիպումը, անտարակույս, նշանակալից իրադարձություն եղավ։ Օգտակար է ուղղակի, պարզ ու կոնկրետ խոսակցությունը, օգտակար է դիրքորոշումները հստակորեն համադրելու հնարավորությունը։ Անչափ շատ պայթյունավտանգ, սուր պրոբլեմներ էին կուտակվել, որոնք հարկավոր էր լրջորեն քննության առնել և փորձել մեռյալ կետից տեղաշարժել։

Մենք գնահատում ենք ԱՄՆ-ի պրեզիդենտի հետ հաստատված անձնական կոնտակտը։ Բարձրաստիճան ղեկավարների երկխոսությունը միշտ էլ ճշմարտության մոմենտ է պետությունների փոխհարաբերություններում։ Կարևոր է, որ նման երկխոսություն տեղի ունեցավ. ներկայիս բարդ ժամանակներում դա ինքնըստինքյան կայունացնող գործոն է։

Բայց մենք իրատեսներ ենք և պետք է ուղղակի ասենք, որ հանդիպման ժամանակ չհաջողվեց գտնել սպառազինությունների մրցավազքի դադարեցման հետ կապված կարևորագույն հարցերի լուծումներ։ Այն, որ ԱՄՆ-ի ղեկավարությունը չուզեց հրաժարվել «աստղային պատերազմների» ծրագրից, Ժնևում թույլ չտվեց կոնկրետ համաձայնությունների հասնել իրական զինաթափման ու նախ և առաջ միջուկային և տիեզերական սպառազինությունների կենտրոնական պրոբլեմի շուրջը։ Երկուստեք կուտակված զենքի քանակը հանդիպման հետևանքով նվազեցնել չհաջողվեց, սպառազինությունների մրցավազքը շարունակվում է։ Դա չի կարող հիասթափություն չառաջացնել։

ՍՍՀՄ-ին և ԱՄՆ-ին առաջվա նման խոշոր տարաձայնություններ են բաժանում նաև աշխարհի դրության, առանձին շրջաններում իրադարձությունների զարգացման մի շարք այլ սկզբունքային հարցերում։ Բայց մենք հեռու ենք նաև այն բանից, որ նվազեցնենք Ժնևում ձեռք բերված համաձայնությունների նշանակությունը։



Հիշեցնեմ դրանցից առավել կարևորները։ Դրանք են, նախ և առաջ, համատեղ հայտարարությամբ վավերագրված ընդհանուր ըմբռնումը, որ միջուկային պատերազմ երբեք չպետք է սանձազերծվի, որ դրանում չեն կարող հաղթողներ լինել, ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի պարտավորությունը՝ իրենց հարաբերությունները կառուցելիս ելնել այդ անվիճելի ճշմարտությունից, չձգտել ռազմական գերազանցության։

Մենք այն կարծիքին ենք, որ համատեղ և բարձր մակարդակով հավաստված այդ ըմբռնումը պետք է իրականում դրվի երկու պետությունների արտաքին քաղաքականության հիմքում։ Եթե ընդունվում է, որ միջուկային պատերազմն իր բնույթով չի կարող ծառայել որևէ ռացիոնալ նպատակի ձեռքբերմանը, կնշանակի, որ առավել ևս ուժեղ պետք է լինի դրա կանխմանը, զանգվածային բնաջնջման միջոցների մշակումների ու փորձարկումների դադարեցմանը, միջուկային սպառազինությունների կուտակված պաշարների լիակատար վերացմանը նպաստող ազդակը։ Եվ առավել ևս անթույլատրելի է սպառազինությունների մրցավազքի նոր ուղղություններ սկզբնավորելը։ Իհարկե, համատեղ հայտարարությունը պայմանագիր չէ, բայց դա երկու երկրների ղեկավարներին մեծապես պարտավորեցնող սկզբունքային հիմնադրույթ է։

Այնուհետև, ՍՍՀՄ-ը և ԱՄՆ-ը հստակորեն հավաստեցին միջուկային զենքը չտարածելու ռեժիմի արդյունավետության ըստ ամենայնի բարձրացմանը նպաստելու իրենց պարտավորությունը և պայմանավորվեցին համատեղ գործնական քայլեր ձեռնարկել այդ ուղղությամբ։ Ներկայիս միջազգային անհանգիստ իրադրության մեջ դա քիչ կարևոր նշանակություն չունի աշխարհում կայունություն հաստատելու, միջուկային պատերազմների ծագման վտանգը նվազեցնելու համար։

Սկզբունքային նշանակություն ունի երկու երկրների ղեկավարների համատեղ ելույթը հանուն զանգվածային բնաջնջման այնպիսի բարբարոսական զենքի համընդհանուր ու լիակատար արգելման և ոչնչացման, ինչպիսին քիմիականն է։ Ուզում ենք հուսալ, որ ԱՄՆ-ը գործնական քաղաքականության մեջ ևս կհետևի այդ կարևոր ըմբռնմանը։

Սովետա-ամերիկյան հարաբերությունների շրջանակներից մեծապես դուրս է գալիս նաև ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի ղեկավարության այն համաձայնությունը, որ Ստոկհոլմի կոնֆերանսի մասնակից մյուս պետությունների հետ համատեղ նրա շուտափույթ ավարտմանը նպաստեն փաստաթղթի ընդունումով, այնտեղ ներառներ ինչպես ուժ չգործադրելու կոնկրետ պարտավորություններ, այնպես էլ վստահության ամրապնդման փոխադարձաբար ընդունելի միջոցներ։

Կարելի է միայն ողջունել, որ հանդիպման շնորհիվ մի շարք օգտակար համաձայնություններ երևան եկան ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի երկկողմ համագործակցության զարգացման բազմաթիվ ուղղությունների վերաբերյալ։ Ես կարծում եմ, որ դրանք լավ հիմք կհանդիսանան մեր երկրների և ժողովուրդների փոխվստահության մակարդակը բարձրացնելու համար, եթե իհարկե, խնամքով վերաբերվեն մշակվածին և զարգացնեն այն ամեն լավը, որ դրված է նրա հիմքում, այլ ոչ թե արհեստական պատրվակներ որոնեն դրանք ի չիք դարձնելու համար։

Հատկապես պետք է խոսել այն նշանակության մասին, որ ունեն Սովետական Միության և Միացյալ Նահանգների քաղաքական կոնտակտները, ներառյալ բարձր մակարդակի նոր հանդիպումները շարունակելու մասին Ժնևում ձեռք բերված համաձայնությունը։

Այսպիսով, մենք իրավունք ունենք ասելու, որ Ժնևի ընդհանուր հաշվեկշիռը դրական է։

Նման հուսադրող արդյունքի ձեռքբերմանը, անշուշտ, վճռականորեն նպաստեց մեր երկրի կոնստրուկտիվ, հետևողական քաղաքականությունը։ Դրա հետ մեկտեղ անարդարացի կլիներ այստեղ չասել նաև այն մասին, որ հանդիպման ժամանակ ամերիկյան կողմի դիրքորոշման մեջ ի հայտ եկան իրատեսության որոշակի տարրեր, ինչը նպաստեց մի շարք հարցերի լուծմանը։

Վտանգավոր ցնցումներով է հղի նաև հարաճուն խզումը բարձր զարգացած մի բուռ կապիտալիստական երկրների և այն զարգացող երկրների միջև, իսկ նրանք հսկայական մեծամասնություն են կազմում, ում վիճակվել են աղքատություն, սով, անելանելի դրություն։ Այդ երկու համաշխարհային բևեռների միջև անդունդը ավելի ու ավելի է խորանում, իսկ նրանց հարաբերությունները ավելի հակամարտ են դառնում։ Դրանք ուրիշ չեն էլ կարող լինել, եթե զարգացած կապիտալիստական երկրները չփոխեն իրենց եսամոլական քաղաքականությունը։

Այդ բոլոր պրոբլեմները մարդկությունն ի վիճակի է լուծելու այսօր, եթե միավորի իր ուժերն ու բանականությունը։ Այն ժամանակ մատչելի կդառնան քաղաքակրթության զարգացման նորանոր բարձունքներ։

Միլիտարիզմը թշնամի է ժողովուրդներին։ Սպառազինությունների մրցավազքը, որը սաստկացվում է հարստության տենչով համակված ռազմարդյունաբերական համալիրի կողմից, խելացնորություն է։ Դա խփում է բոլոր երկրների ու ժողովուրդների կենսականորեն կարևոր շահերին։ Ահա թե ինչու, երբ մեզ առաջարկում են միջուկային զենքի ոչնչացման փոխարեն սպառազինությունների մրցավազքը դուրս բերել նաև տիեզերք, մենք վճռականորեն ասում ենք «ոչ»։ Մենք ասում ենք «ոչ», որովհետև այդպիսի քայլը նշանակում է միջոցների մի նոր անմիտ վատնում։ Մենք ասում ենք «ոչ», որովհետև դա նշանակում է աշխարհի վրա կախված վտանգի ուժեղացում։ Մենք ասում ենք «ոչ», որովհետև ինքը կյանքն է պահանջում մրցել ոչ թե սպառազինությունների, այլ հանուն խաղաղության համատեղ գործողությունների բնագավառում։

Սովետական Միությունը վճռական կողմնակից է միջազգային կյանքի զարգացմանը այդ ուղղությամբ։ (Ծափահարություններ):

ՍՍՀՄ-ի նախաձեռնությամբ տարբեր երկրների գիտնականների մասնակցությամբ սկսվել է «Տոկամակ» ջերմամիջուկային ռեակտորի նախագծի մշակումը, որը հնարավորություն է բացում արմատապես լուծելու էներգետիկ պրոբլեմը։ Գիտնականների վկայությամբ կարելի է արդեն այս դարում ստեղծել «երկրային արեգակ»՝ ջերմային էներգիայի մի անսպառ աղբյուր։ Մենք գոհունակությամբ ենք նշում, որ Ժնևում պայմանավորվեցինք շարունակել այդ կարևոր աշխատանքը։

Մեր երկիրը ՄԱԿ-ի քննարկմանն է ներկայացրել տիեզերքում խաղաղ համագործակցության, այնպիսի համաշխարհային տիեզերագիտական կազմակերպության ստեղծման մի ծավալուն ծրագիր, որը կոորդինացներ երկրների ջանքերը տիեզերքի հետազոտման, յուրացման գործում։ Դրա հնարավորությունները հիրավի անսպառ են։ Դրանք են՝ հիմնարար գիտական հետազոտությունները և դրանց արդյունքների կիրառումը երկրաբանության, բժշկագիտության, նյութագիտության բնագավառում, կլիմայի և բնական միջավայրի ուսումնասիրման բնագավառում։ Դրանցից է նաև կապի արբանյակային գլոբալ համակարգերի, երկրագնդի հեռուստազոնդավորման համակարգերի ստեղծումը։ Դրանցից է, վերջապես, տիեզերական նոր տեխնիկայի, ներառյալ գիտական խոշոր ուղեծրակայանների, զանազան օդաչուավոր տիեզերանավերի ստեղծումը և դրանց օգտագործումը ի շահ բոլոր ժողովուրդների, իսկ հեռանկարում՝ երկրաշուրջ տարածության ինդուստրացումը։ Այսպիսին է «աստղային պատերազմների» պլանների ռեալ այլընտրանքը, որը նպատակամիտված է համայն մարդկության խաղաղ ապագային։

Սովետական Միությունը հանդես եկավ որպես Համաշխարհային օվկիանոսի ռեսուրսների տնտեսական օգտագործման ռեժիմի վերաբերյալ միջազգային կոնվենցիայի կնքման ակտիվ մասնակիցներից մեկը։ Այդ խնդրի լուծումը նաև հսկայական նշանակություն ունի մարդկային քաղաքակրթության առաջընթացն ապահովելու, ժամանակակից հասարակության հնարավորություններն ընդլայնելու և բազմապատկելու համար։

Մենք ամբողջ աշխարհին, այդ թվում կապիտալիստական պետությունների աշխարհին առաջարկում ենք փոխշահավետ համագործակցության մի լայն, երկարաժամկետ, բազմակողմանի ծրագիր, որը հաշվի է առնում այն նոր հնարավորությունները, որ մարդկության առջև բացում է գիտատեխնիկական հեղափոխության դարաշրջանը։ Եվ այդ ծրագրի իրականացման ասպարեզում երկու այնպիսի պետությունների համագործակցությունը, ինչպիսիք են Սովետական Միությունը և Ամերիկայի Միացյալ Նահանգները, կարող էր խաղալ բնավ էլ ոչ վերջին դերը։

Մեր քաղաքականությունը պարզ է. այն խաղաղության ու համագործակցության քաղաքականություն է։

Ընկերնե՛ր, մեր արտաքին քաղաքականության հաջողությունների ակունքները սոցիալիստական կարգերի ներքին բնույթի մեջ են։ Կոմունիստական կուսակցությունը լավ է զգում և բարձր է գնահատում իր ներքին և արտաքին քաղաքականությանը ցույց տրվող համաժողովրդական պաշտպանությունը։ Այդ պաշտպանությունը միլիոնավորների ու միլիոնավորների ամենօրյա պրակտիկ աշխատանքի մեջ է։ Ժողովրդական տնտեսության ասպարեզում ձեռք բերված արդյունքները ո՛չ միայն տնտեսական, այլև կարևորագույն բարոյաքաղաքական արդյունք են, մեր վարած կուրսի ճշտության վկայություն։

Մեզ սպասում են կարևոր և ոչ դյուրին գործեր. «Բայց դժվարությունն անիրագործելիություն չէ,— սովորեցրել է մեծ Լենինը։— Կարևոր է ուղին ճիշտ ընտրած լինելու համոզվածությունը, և այս համոզվածությունը հարյուրապատիկ ուժեղացնում է հեղափոխական եռանդն ու հեղափոխական խանդավառությունը...»։ Եվ նման համոզվածությունը, որը բազմապատկում է մեր ուժերը, կա կուսակցության և սովետական ժողովրդի մեջ։ (Երկարատև ծափահարություններ):

Մենք վստահ ենք, որ յուրաքանչյուր կոմունիստ, յուրաքանչյուր բանվոր, յուրաքանչյուր գյուղացի, յուրաքանչյուր ինժեներ ու գիտնական, յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվ հայրենիքի հանդեպ բարձր պատասխանատվության գիտակցությամբ կկատարի իր պարտքը։

Մենք վստահ ենք, որ յուրաքանչյուր աշխատատեղում ամեն ինչ կարվի, որպեսզի 1986 թվականի պլանները հաջողությամբ կատարվեն ու գերակատարվեն, որպեսզի մեր երկիրը դառնա է՛լ ավելի հարուստ ու հզոր, իսկ աշխարհի խաղաղության գործը ամրապնդվի ու հաղթանակի։ (Բուռն, երկարատև ծափահարություններ):

---

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

**1985 թվականի նոյեմբերի 15-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումը:**

**Պլենումը քննարկեց «ՍՄԿԿ Կենտկոմում գիտատեխնիկական առաջադիմության արագացման հարցերին նվիրված խորհրդակցությունում առաջ քաշված խնդիրների իրականացման ուղղությամբ Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի աշխատանքի մասին» հարցը:**

**Զեկուցումով հանդես եկավ Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահ ընկ. Ֆ. Տ. Սարգսյանը:**

**Զեկուցման շուրջը ծավալված մտքերի փոխանակությանը մասնակցեցին ՀԿԿ Երևանի քաղկոմի քարտուղար ընկ. Ա. Ս. Արզումանյանը, ՀԿԿ Լենինականի քաղկոմի երկրորդ քարտուղար ընկ. Ռ. Մ. Գալստյանը, Կիրովականի ճշգրիտ հաստոցների գործարանի փականագործների բրիգադավար ընկ. Մ. Վ. Խաչատրյանը, Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի քիմիական գիտությունների բաժանմունքի ակադեմիկոս-քարտուղար, քիմիական ֆիզիկայի ինստիտուտի դիրեկտոր ընկ. Ա. Բ. Նալբանդյանը, ՀԿԿ Սպիտակի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Հ. Հ. Մկրտչյանը, Արտաշատի շրջանի Մխչյանի կոլտնտեսության դաշտավարական բրիգադի օղակավար ընկ. Ա. Հ. Բաղդասարյանը, Հայկական ՍՍՀ ավտոմոբիլային տրանսպորտի մինիստր ընկ. Խ. Ա. Դրամփյանը, գիտատեխնիկական ընկերությունների հանրապետական խորհրդի նախագահի տեղակալ ընկ. Գ. Ա. Տեր-Մարտիրոսյանը, Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատի դիրեկտոր ընկ. Ն. Ս. Սարգսյանը:**

**Պլենումում ճառով հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը:**

**Քննարկված հարցի վերաբերյալ Կենտկոմի պլենումն ընդունեց համապատասխան որոշում:**

**Պլենումի աշխատանքին մասնակցում էր ՍՄԿԿ Կենտկոմի պատասխանատու աշխատող ընկ. Ն. Մ. Տիշչենկոն:**

**Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումն ավարտեց աշխատանքը:**



# ԱՆՀԱՏԻ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅԱՆ ԵՎ ՀԱՄԱԿՈՂՄԱՆԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ԿՈՆՑԵՊՑԻԱՆ

**Ս. ԲԵԳԻՅԱՆ**
Իրավաբանական գիտությունների դոկտոր

*ԱՇԽԱՏԱՆՔԻ ՄԱՐԴԻԿ երկար դարեր երազել են սոցիալական արդարության հասարակության մասին, նրան հասնելու, բռնությունից, խավարից ազատվելու ուղիներ են փնտրել, մտածել այնպիսի ժամանակվա մասին, երբ կապրեն լիության մեջ՝ օգտվելով նյութական ու հոգևոր արտադրության բոլոր բարիքներից: Խոսելով պատմության այդ շրջանի մասին, Վ. Ի. Լենինը գրել է. «Անցել են միամիտ, ուտոպիական, երևակայական, մեխանիկական, ինտելիգենտական սոցիալիզմի այն ժամանակները, երբ գործն այնպես էին պատկերացնում, թե մարդկանց մեծամասնությանը կհամոզեն, սոցիալիստական հասարակության գեղեցիկ պատկերը կգծագրեն, և մեծամասնությունը սոցիալիզմի տեսակետի վրա կկանգնի» (ԵԼԺ, հ. 38, էջ 436):*

*Մարքսն ու Էնգելսը սոցիալիզմն ուտոպիայից գիտության վերածելու ճանապարհին ձևակերպեցին այն հետևությունը, որ ապագա սոցիալիստական հասարակության հիմնական սկզբունքը կլինի յուրաքանչյուր անհատի լիակատար ու ազատ զարգացումը, որ միայն սոցիալիզմը հասարակության բոլոր անդամների համար կապահովի գոյության բարելավող նյութական պայմաններ, ինչպես նաև նրանց ֆիզիկական ու հոգևոր կարողությունների լիակատար զարգացում ու կիրառում (տե՛ս* К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 23, стр. 605, т. 20, стр. 294)*:*

*Մասսաների աղքատության և խավարամտության վերացումը և դրանց փոխարինումը աշխատանքի մարդկանց աճող բարեկեցությամբ ու համակողմանի զարգացմամբ սկզբից ևեթ դարձան Լենինի, բոլշևիկների կուսակցության ստեղծած սոցիալական ծրագրի հիմքը: Արդեն իր առաջին աշխատություններում երիտասարդ Լենինը բացահայտեց և ձևակերպեց պահանջմունքների, այդ թվում նաև աշխատանքի մարդկանց պահանջմունքների, վեհացման օբյեկտիվ օրենքը և ցույց տվեց նրա կապը գիտական սոցիալիզմի դրոշի ներքո մղվող հեղափոխական պայքարի հետ: Հենվելով ապագա սոցիալիստական հասարակության հիմնական սկզբունքի վերաբերյալ Մարքսի և Էնգելսի արտահայտած մտքերի վրա, նա ստեղծագործաբար զարգացրեց դրանք՝ ստեղծելով սոցիալիստական հասարակության անդամների բարեկեցության և համակողմանի զարգացման իր ծավալուն կոնցեպցիան: Սահմանելով սոցիալիզմի օրոք հասարակական արտադրության նպատակը, նա 1902 թ. ընդգծում էր, որ այն ծառայելու է «...հասարակության բ ո լ ո ր անդամների* լիակատար բարեկեցությունը և ազատ համակողմանի զարգացումն *ապահովելու համար» (ԵԼԺ, հ. 6, էջ 293):*

Լենինյան կոնցեպցիայի իրականացման համար պայքարը հեշտ չէր՝ ի նկատի ունենալով երկրի տնտեսական ու կուլտուրական հետամնացությունը։ Սակայն առկա էր բանվոր դասակարգը՝ ամբողջ աշխարհի ամենահեղափոխական դասակարգը նոր տիպի կուսակցության գլխավորությամբ, կուսակցություն, որը պատրաստ էր կազմակերպելու և ղեկավարելու պայքարը հանուն սոցիալական արդարության, պրոգրեսի հասարակության, որպիսին կարող էր լինել և ժամանակի ընթացքում դարձավ սոցիալիզմը։ Այդ իդեալն ամրապնդվեց բանվոր դասակարգի գիտակցության մեջ, վերածվեց հզոր հոգևոր ուժի։ Կուսակցությունը կազմակերպեց բանվոր դասակարգին, կոփեց նրա կամքը նման հասարակարգ ստեղծելու պայքարի համար։

Աշխատանքի մարդուն արժանավայել կյանքի պայմաններ ապահովելու վերաբերյալ Ռուսաստանի բանվոր դասակարգի արդարացի պահանջները բախվում էին աշխատավորներին տաժանակիր աշխատանքի, անմարդկային շահագործման դատապարտած կապիտալիստների և ցարիզմի հակազդմանը։

Լենինի ղեկավարությամբ կոմունիստները հետևողականորեն պայքարում էին հանուն աշխատավորների սոցիալական պահանջմունքների բավարարման։ «Մենք պայքարում ենք,— գրել է նա,— բոլոր աշխատավորների ազատության և երջանկության համար։ Մենք պայքարում ենք բռնությունից, ճնշումից, աղքատությունից տասնյակ և հարյուրավոր միլիոն մարդկանց ազատելու համար» (ԵԼԺ, հ. 7, էջ 167)։

Հոկտեմբերյան հեղափոխության խոր հումանիզմը նրանումն է, որ այն իրականացրեց մասսաների ազատագրումը քաղաքական, տնտեսական ու սոցիալական ստրկությունից, դասակարգային ու ազգային ճնշումից, իր ստեղծած սովետական պետության նպատակը դարձրեց հոգատարությունը մարդու բարօրության, աշխատանքի մարդկանց համակողմանի զարգացման նկատմամբ։ Նյութական արտադրությունն ու հոգևոր կյանքը պատմության մեջ առաջին անգամ ենթարկվեցին աշխատավորների հարաճուն պահանջմունքների բավարարման խնդրին։

Աշխատավորների բարօրությունն ու համակողմանի զարգացումը գործնականում ապահովելու իր ըմբռնումը Լենինը ստեղծագործաբար զարգացրեց նաև Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո։ Հոկտեմբերի հաղթանակից արդեն մի քանի ամիս անց նա առաջադրեց և հիմնավորեց այն դրույթը, որ սոցիալիզմը կոչված է բոլոր աշխատավորների կյանքը դարձնելու առավել թեթև, նրանց բարօրության հնարավորություն ապահովող (տե՛ս ԵԼԺ, հ. 36, էջ 467)։ Երբ սովետների երկիրը դեռևս առաջին քայլերն էր անում նոր կյանքի կառուցման ասպարեզում, Վ. Ի. Լենինն ասել է. «Եվ երբ ամեն կողմերից մենք տեսնում ենք նոր պահանջներ, մենք ասում ենք. դա այդպես էլ պետք է լինի, դա էլ հենց սոցիալիզմն է, երբ յուրաքանչյուրը ցանկանում է բարելավել իր դրությունը, երբ բոլորն ուզում են օգտվել կյանքի բարիքներից» (Նույն տեղը, էջ 611)։

Թե՛ կուսակցական, թե՛ սովետական այն կարևոր փաստաթղթերը, որոնցում հռչակվում և մշակվում էր սոցիալական ծրագիրը, կապված են Լենինի անվան հետ։ Նա անձամբ գրել ու խմբագրել է սոցիալական ծրագրի վերաբերյալ կուսակցության Կենտկոմի կարևորագույն որոշումների, Համառուսաստանյան Կենտգործկոմի և Ժողկոմխորհի դեկրետների նախագծերը։ Լենինյան դեկրետների իրականացման շնորհիվ վերացվեց աշխատավոր գյուղացիության հողազրկությունն ու սակավահողությունը, որը նպաստեց նրա բարեկեցության աճին, մտցվեց 8-ժամյա աշխատանքային օր, կատարվեցին առաջին քայլերն այնպիսի բարդ սոցիալական խնդրի լուծման գործում, ինչպիսին աշխատավորներին բնակարանով ապահովելու խնդիրն է և այլն։ Սոցիալական վերափոխումների անհրաժեշտ և կարևոր տարրերից մեկը կրթության, կուլտուրայի դեմոկրատացումն էր։ Սովետական պետության, նրա բոլոր կենտրոնական ու տեղական մարմինների կարևորագույն խնդիրներից մեկը դարձավ մասսայական անգրագիտության և կիսագրագիտության վերացումը։ Ողջ երկիրը, նրա բոլոր կարող ուժերն ընդգրկվեցին այդ խնդրի իրականացման նպատակով ծավալված համաժողովրդական պայքարում։



Ազգայնացնելով արդյունաբերությունը, այդ թվում՝ սննդի, կոշիկի և բնակչության համար այլ սպառման առարկաներ արտադրող ձեռնարկությունները, հողն առանց որևէ փրկագնի հանձնելով այն մշակողներին, սովետական պետությունը նախադրյալներ ստեղծեց բնակչությանն անհրաժեշտ սննդամթերքի և արդյունաբերական ապրանքների արտադրությունը մեծացնելու համար։ Սոցիալական ծրագրի կատարման ասպարեզում առաջին հաջողությունները ձեռք բերվեցին դեռևս առաջնորդի կենդանության օրոք՝ զգալի չափով լինելով նրա ամենօրյա ուշադրության ու օգնության, նրա խորհուրդների ու ցուցումների իրականացման արդյունք։ Սակայն բնակչությանն անհրաժեշտ քանակի սննդամթերքով ու արդյունաբերական ապրանքներով ապահովելը Լենինը դիտում էր որպես աշխատավորների կենսամակարդակի բարձրացման միջոցներից մեկը, բայց ոչ միակը։ Ինչպես վկայում է Ա. Վ. Լունաչարսկին, Լենինը մարդկանց սնունդով, հագուստով, ոչ երկարատև աշխատանքային օրով ապահովելու խնդիրը մշտապես կապում էր անհատի հոգևոր զարգացման խնդրի հետ։ «Դիցուք,— հիշում է Լենինի խոսքերը Ա. Վ. Լունաչարսկին,— ամեն մի մարդ լիուլի ունի սնունդ, հագուստ, բանվորն ունի շատ ազատ ժամանակ... Բայց միայն դրա համար չէ, որ մարդն ապրում է։ Նա ապրում է այն բանի համար, որ համակողմանիորեն, լայնությամբ ու խորությամբ զարգանա» (А. В. Луначарский, Ленин и народное образование, М., 1960, стр. 109), այսինքն՝ աշխատավորների նյութական բարեկեցության աճը դիտարկում էր նրանց համակողմանի զարգացման հետ անքակտելի միասնության մեջ։

Գնահատելով այս որակապես նոր, լենինյան հանճարով լուսավորված սովետական փորձը, Չեխոսլովակիայի առաջադեմ գործիչներից մեկը՝ Բոգումիր Շմերալը, 1920 թ. գրել է. «Այն, ինչ տեղի է ունենում Ռուսաստանում, գլխապտույտ է առաջացնում, հսկայական է, բանական, ազնիվ, անխուսափելի, անհաղթահարելի» (Революция, изменившая мир. Слово прогрессивных людей мира о Великой Октябрьской соц. революции. Политиздат, М. 1977, стр. 125):

Երկրի առջև ծառացել էր կարճ ժամանակում աղքատիկ կենսամակարդակը, զանգվածային հիվանդությունները, անգրագիտությունը, ազգերի և ռասաների անհավասարության ամեն մի դրսևորում հաղթահարելու խնդիրը։ Նման խնդիր առաջադրելով, սովետական պետությունը գիտակցում էր, որ դրա լուծման համար կպահանջվեն երկար ժամանակ, լուրջ ջանքեր, հսկայական միջոցներ։ Բայց իրականացնելով իր ստրատեգիան, սովետական պետությունը վստահ էր, որ աշխատանքի մարդուն վերաբերող հարցերն առաջին պլան մղելն արդեն ինքնին կհանդիսանա երկրի տնտեսական վերածննդի հզոր լծակ, այն ուժը, որը կմղի ավելի լավ աշխատելու, տնտեսական պոտենցիալ ստեղծելու սոցիալական խնդիրների լուծման համար։

Լենինյան սոցիալական ծրագրի իրականացումը առաջնորդի մահից հետո ընթացել և ընթանում է նրա կանխանշած ուղիով։ Հաջողությամբ իրականացվեց երկրի ինդուստրացման լենինյան ծրագիրը, որը մեծ դեր խաղաց գյուղի սոցիալական վերափոխման գործում։ Բանվոր դասակարգի անձնուրաց աշխատանքի շնորհիվ առաջին հնգամյակը (1929—1933 թթ.) կատարվեց չորս տարի և երեք ամիս ժամկետում։ Առաջին հնգամյակների ստեղծագործական խանդավառությունը վճռական դեր խաղաց ինդուստրացման հաջողություններում, բարձրացավ բանվորների ու գյուղացիների նյութական ու կուլտուրական մակարդակը։ Տարեցտարի, հնգամյակից հնգամյակ երկրի զարգացումն առավելապես էր պայմանավորվում ժողովրդի բարեկեցության բարձրացմամբ, աշխատանքի մարդկանց կյանքի կուլտուր-կենցաղային պայմանների բարելավմամբ։

Սովետական յուրաքանչյուր սահմանադրություն, լինելով մեր պետության զարգացման վերելքի աստիճաններից մեկը, միևնույն ժամանակ նոր փուլ էր սովետական հասարակության սոցիալական զարգացման և ժողովրդի բարեկեցության բարձրացման գործում։ Սովետների VIII համամիութենական արտակարգ համագումարը, ընդունելով 1936 թ. սահմանադրությունը, նրա 11-րդ

հոդվածում օրենսդրորեն ամրագրեց սոցիալիզմի օրոք գործող դրույթն այն մասին, որ տնտեսական կյանքն իրականացվում է հանուն աշխատավորների նյութական և կուլտուրական մակարդակի անշեղ բարձրացման։

Նոր սահմանադրության ընդունմամբ սովետական պետության հիմնական օրենքն ավելի կողմնորոշվեց դեպի մարդն ու նրա բարօրությունը։ Հոգատարությունը մարդու նկատմամբ գլխավոր սահմանադրական սկզբունքն է, սովետական պետության գլխավոր մտահոգությունը։ ՍՍՀՄ, միութենական ու ինքնավար հանրապետությունների սահմանադրությունների բոլոր հոդվածներում արտահայտված է պետության հոգածությունը ՍՍՀՄ քաղաքացու նկատմամբ։

Սովետական պետությունը հետևողականորեն իրականացնում է լենինյան երկարաժամկետ ստրատեգիան, որը նպատակաուղղված է այն բանին, որպեսզի տարեցտարի բարելավվեն սովետական մարդկանց նյութական ու հոգևոր կյանքի պայմանները։ ՍՄԿԿ XXVI համագումարի մշակած սոցիալական ծրագրի իրականացման ընթացքում, ծրագիր, որն ընդգրկում է սովետական մարդկանց կյանքի բոլոր կողմերը, զգալիորեն բարձրացել է նրանց կենսամակարդակը, բարելավվել է ժողովրդական սպառման արդյունաբերական ապրանքների նկատմամբ բնակչության աճող պահանջարկի բավարարման գործը։ Հնգամյակի անցած չորս տարիների ընթացքում ապահովվել է ժողովրդական սպառման ապրանքներ արտադրող արդյունաբերության ճյուղերի առաջանցիկ զարգացումը, հաջողությամբ կենսագործվում է պարենային ծրագիրը, կայուն կերպով աճում է մսի, կաթի, բանջարեղենի, մրգերի, ձկան և այլ սննդամթերքների արտադրությունը։ Այս ամենում իրենց արժանի ավանդն ունեն նաև Սովետական Հայաստանի աշխատավորները, որոնք տարեցտարի բազմապատկում են երկրի նյութական ու հոգևոր հարստությունները։

Ժողովրդի բարեկեցության աճի ամենակարևոր, որոշիչ ցուցանիշներից են բնակարանաշինարարությունը և սովետական մարդկանց բնակարանով ապահովելը։ Միայն վերջին չորս տարում քառասուն միլիոն մարդ բարելավել է իր բնակարանային պայմանները, իսկ 1984 թ. կառուցվել է 2 մլն նոր բարեկարգ բնակարան։ Սովետական Հայաստանում պետական կապիտալ ներդրումների հաշվին միայն 1985 թ. հունվար—օգոստոս ամիսներին շահագործման են հանձնվել մոտ 300 հազար քառակուսի մետր ընդհանուր մակերեսով բնակելի տներ, որոնց համար պետական միջոցներից կատարվել է շուրջ 120 մլն ռուբլու ներդրում։ Խոշոր չափերի բնակարանաշինարարությունը ՍՍՀՄ-ում համոզիչ վկայությունն է այն բանի, որ մեր սոցիալական քաղաքականության գլխավոր իմաստը մարդկանց բարեկեցությունն է, նրանց կենսական պահանջների բավարարումը։ Սովետական Միությունում ավելի շատ են կառուցվում բնակարաններ, դպրոցներ, հիվանդանոցներ, պոլիկլինիկաներ, մանկական նախադպրոցական հիմնարկություններ, թատրոններ, կուլտուրայի պալատներ, քան աշխարհի ցանկացած երկրում։

Սովետական երկրի սոցիալ-տնտեսական ու հոգևոր պրոցեսի կարևոր գործոն են դարձել կուլտուրան, արվեստը։ Կուլտուրայի բնագավառում ձեռքբերումներից մեկը կուլտուրական արժեքների համընդհանուր մատչելիությունն է։ Սովետական պետությունն ակտիվորեն նպաստում է աշխատավոր մարդկանց հոգևոր պահանջմունքների համընդհանուր վեհացմանը։ Մեր երկրում կրթությունը և կուլտուրական սպասարկման շատ տեսակներ անվճար են, գրքերը, թերթերը, ամսագրերը, ներկայացումները, համերգները, թանգարանները, ցուցահանդեսները, կինոդիտումներն ավելի մատչելի են, քան Արևմուտքում։ Տարեցտարի ընտանեկան բյուջեներում ավելանում է այն ծախսերի տեսակարար կշիռը, որոնք կապված են կուլտուրական պահանջմունքների հետ։ Նման ծախսերի բաժինը վերջին տասը տարում ավելացել է 2,5 անգամ։

Տնտեսական և սոցիալ-կուլտուրական առաջընթացը, քաղաքացիների բարեկեցության ու կուլտուրական մակարդակի աճը բնավ չեն ենթադրում արտադրության և սոցիալ-կուլտուրական ոլորտների ընթացքի ու տեմպերի միջև հակասությունների բացակայություն։ Ինդուստրացման տարիներին մեր եր-



կիրը, գտնվելով կապիտալիստական շրջապատման մեջ, ծանր արդյունաբերություն ստեղծելու, իր պաշտպանունակությունն ամրապնդելու նպատակով ստիպված էր տնտեսել նաև թեթև արդյունաբերության, այսինքն՝ սպառման ապրանքների արտադրության հաշվին։ Սովետական մարդիկ համոզված էին, որ ինդուստրացման հիման վրա, շնորհիվ սովետական պետության հոգատարության, իրենց աշխատավարձը կայուն կերպով կավելանա, կբարելավվեն բնակարանային պայմանները, սնունդը, հագուստը, կենցաղային հարմարությունները։ Սոցիալիզմի պայմաններում նյութական բարիքների, այդ թվում՝ սպառման և կուլտուրական գործածության առարկաների, արտադրությունը պետությունը ենթարկում է աշխատավորների շահերին, այսինքն՝ դրանց տալիս է սոցիալական ու կուլտուրական ուղղվածություն։

Սոցիալիստական շինարարության ողջ պատմությունը համոզիչ կերպով հավաստեց բարեկեցության աճի և հասարակության բոլոր անդամների ազատ համակողմանի զարգացման միասնության վերաբերյալ լենինյան կոնցեպցիայի կենսական ուժը։ Հնգամյակների ընթացքում առավել վառ բացահայտվեց սովետական պետության ստեղծարար մեծ ուժը, որի նպատակն է ժողովրդի բարօրությունը, կուլտուր-կենցաղային պայմանների բարելավումը, մեր մարդկանց համակողմանի զարգացման ապահովումը։

Պատմական փորձը վկայում է, որ ոչ մի հասարակարգ այնպիսի ազատություն չի ընձեռել մարդու համակողմանի հոգևոր հարստությունների բացահայտման, նրա կուլտուրական պահանջմունքների բավարարման համար, ինչպես սոցիալիզմը, որն զգալիորեն առաջ է անցել կապիտալիզմից ոչ միայն բնակարանաշինարարության, սոցիալական ապահովության, առողջապահության, աշխատանքի պահպանման նկատմամբ քաղաքացիների իրավունքի երաշխավորման ոլորտում, այլև կրթության, գիտության, արվեստի մարզում։

Եվ այսօր առավել քան արդիական է սովորելու վերաբերյալ լենինյան պատգամը, որը նշանակում է ոչ միայն խորապես տիրապետել գիտելիքներին, այլև սովորել կազմակերպվածություն, աշխատանքային գիտակցական կարգապահություն, դաստիարակել խոր կոմունիստական համոզվածություն, բարոյական անաղարտություն, անհաշտ լինել հասարակական իրավական նորմերից ամեն մի նահանջի, մեզ խորթ գաղափարախոսության նկատմամբ, հիշելով, որ սոցիալիստական համակեցության կանոնները պահպանելու, ՍՍՀՄ քաղաքացու բարձր կոչումը արժանապատվությամբ կրելու պարտականությունները բարձրացված են սահմանադրական պահանջների մակարդակին։

Սխալ կլիներ մտածել, որ կրթական ու կուլտուրական մակարդակի աճը, նույնիսկ և քաղաքականության հիմունքների ու սոցիալիստական գաղափարախոսության սկզբունքների իմացությունն ինքնաբերաբար զուգակցվում են անհատի գաղափարաբարոյական հատկանիշների ձևավորմամբ։ Քիչ չեն այն դեպքերը, երբ կրթվածությունն ու իրազեկությունը, ինչպես և քաղաքական գիտելիքները չեն ուղեկցվում քաղաքացիական պարտքի գիտակցությամբ։ Փորձն ուսուցանում է, որ մեր պատմական նվաճումների վեհությունը բացահայտելիս չի կարելի թույլ տալ իդեալականացում, արդեն հաստատված սոցիալ-բարոյական մակարդակի չափազանցում, մոռանալ նոր մարդու ձևավորման ճանապարհին եղած մեծ բարդություններն ու դժվարությունները։ ՍՄԿԿ-ն մշտապես լուրջ ուշադրություն է դարձնում ձեռք բերված գիտակցականության աստիճանին, նրա խոր և օբյեկտիվ վերլուծությանը՝ ղեկավարվելով Վ. Ի. Լենինի այն հիմնարար ցուցումներով, թե անհրաժեշտ է «...զգաստությամբ հետևել հենց ամբողջ դասակարգի (և ոչ միայն նրա կոմունիստական ավանգարդի), հենց ամբողջ աշխատավոր մասսայի (և ոչ թե միայն նրա առաջավոր մարդկանց) գիտակցականության ու պատրաստականության իրական վիճակին» (ԵԼԺ, հ. 41, էջ 51)։

Սովետական մարդու նոր կերպարը, նրա բարոյականությունը ձևավորվում ու ամրապնդվում են կոմունիստական շինարարության, բարդությունների ու դժվարությունների հաղթահարման, մեր կյանքում դեռևս առկա բացասական երևույթների դեմ պայքարի ընթացքում։ Տակավին կան ոչ քիչ թվով

մարդիկ, որոնց համար թանկ չեն մեր բարոյականությունը, մեր ապրելակերպը։ Նրանց համար խորթ են պարտքի, պատվի, խղճի, պատասխանատվության հասկացությունները։

Որոշ աշխատավորական կոլեկտիվներում կան մարդիկ, որոնք դեմ չէին լինի իրենց բարեկեցությանը հասնել ուրիշների, հասարակության հաշվին՝ իրենց անձնական օգուտի համար չարաշահելով առանձին սպառողական ապրանքների պակասը, աշխատանքի չափի և սպառման չափի նկատմամբ վերահսկողության համակարգի թերությունները։ Կամ էլ՝ աշխատանքի նկատմամբ գիտակցական վերաբերմունքի կողքին կարելի է հանդիպել անկարգապահության, թափթփվածության դրսևորումների։ Հետևելով հասարակության անդամների բարեկեցության աճի և համակողմանի զարգացման միասնության վերաբերյալ լենինյան կոնցեպցիային, ՍՄԿԿ-ն, սովետական կառավարությունն առաջնակարգ ուշադրություն են նվիրում այն բանին, որպեսզի մարդկանց նյութական ունեցվածքը հիմք ծառայի գիտելիքների աճի, հոգևոր արժեքներին տիրապետելու, ունակությունները կատարելագործելու ասպարեզում նրանց ամենաբարձր պահանջմունքներն առավել լիովին բավարարելու համար, որպեսզի սոցիալական զարգացումը չհասկացվի որպես բացառապես նյութական արժեքներ ձեռք բերելու մարմաջ։

Սովետական մարդկանց ներկայիս սերունդն ապրում ու զարգանում է մեր ամբողջ պատմության ընթացքում նյութական ու հոգևոր ամենաբարենպաստ պայմաններում։ Նրանցից յուրաքանչյուրի կյանքը դարձել է առավել ապահովված ու բովանդակալից։ Դա սովետական մարդկանց բարեկեցության բարձրացման և համակողմանի զարգացման միասնության վերաբերյալ լենինյան կոնցեպցիայի հաղթանակի ամենավառ ապացույցներից է։ Այո՛, մեծ է անցած ուղին։ Բայց կուսակցությունը, սովետական ժողովուրդը, հավատարիմ լենինյան պատգամին, չեն բավարարվում ձեռք բերածով։ Իրենց ամբողջ արտադրական, սոցիալական, հոգևոր աշխատանքում նրանք շարունակում են ղեկավարվել լենինյան կոնցեպցիայով՝ այն իրականացնելով իրենց ամենօրյա գործերում։

ՍՄԿԿ-ն, ստեղծագործաբար զարգացնելով լենինյան այդ կոնցեպցիան, իր XXVI համագումարի որոշումներում և նյութերում նշեց. նախ, որ անհրաժեշտ է հասնել մշտական համապատասխանության երկրի սոցիալ-տնտեսական զարգացման, սովետական մարդկանց նյութական բարեկեցության բարձրացման և հասարակության հոգևոր կյանքի, նրա կուլտուրայի աճի, հասարակության բոլոր անդամների համակողմանի զարգացման միջև, երկրորդ՝ խիստ կարևոր է ավելի արդյունավետ դարձնել գաղափարախոսական աշխատանքը, ուժեղացնել նրա ներազդեցությունը սովետական մարդու կոմունիստական դաստիարակության, նրա ակտիվ կենսադիրքորոշումը, բարձր բարոյականությունն ու գաղափարական համոզվածությունը ձևավորելու գործում։

Ինչպես հայտնի է, սոցիալիստական արտադրության նպատակը աշխատավորների պահանջմունքների առավել լիովին բավարարումն է՝ օգտագործելով արտադրության բոլոր հնարավորությունները։ Ընթանալով դեպի իր հերթական XXVII համագումարը, կուսակցությունը հասել է լուրջ հաջողությունների՝ XXVI համագումարի մշակած տնտեսական ու սոցիալական զարգացման պլանի և Կենտկոմի 1982 թ. մայիսյան պլենումի մշակած պարենային ծրագրի իրականացման գործում, որոնց նպատակն է բավարարել ժողովրդի հարաճուն նյութական ու կուլտուրական պահանջմունքները։

Կուսակցության մշակած միջոցառումների իրականացման աշխատանքը, ինչպես նշեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Մ. Ս. Գորբաչովը Ցելինոգրադում 1985 թ. սեպտեմբերի 7-ին կայացած կուսակցական-տնտեսական ակտիվի խորհրդակցությունում, ծավալվում է բոլոր ուղղություններով։ Հատկապես ուրախալի են գյուղատնտեսության զարգացման բնագավառում ձեռք բերված հաջողությունները։ 1983—1984 թթ. գյուղատնտեսական մթերքների արտադրությունը, 1981—1982 թթ. համեմատությամբ, աճեց 22 մլրդ ռուբլով կամ 9 տոկոսով։ Այն շարունակում է աճել նաև այս տարի։

Բնակչության սննդի ընդհանուր կալորիականությամբ ՍՍՀՄ-ը հասել է



աշխարհի ամենազարգացած երկրների մակարդակին և միայն մսի և պտուղների՝ մեկ հոգուն ընկնող սպառմամբ հետ է մնում որոշ երկրներից։ Գյուղատնտեսության աշխատողների առջև խնդիր դրվեց բարձրացնել անասնապահական մթերքների արտադրության ու մթերման տեմպերը, համակողմանի ինտենսիվացնել անասնապահությունը։ Ինչ վերաբերում է սովետական մարդկանց կենսապայմանների բարելավման ողջ կոմպլեքսին, ապա այստեղ ևս զգալի են հաջողությունները։ Բնակարանաշինարարությունը, այդ թվում՝ նաև գյուղում, հնգամյակի պլանային առաջադրանքների համեմատ գերակատարվում է, հսկայական են հաջողությունները հոգևոր զարգացման բնագավառում, ինչպես նաև սովետական մարդկանց կյանքի և աշխատանքի մյուս ասպարեզներում։

Անշուշտ, այսօր սովետական մարդկանց, և ոչ միայն նրանց, կենսամակարդակը շատ ավելի բարձր կլիներ, եթե ստիպված չլինեինք զգալի միջոցներ ծախսել պաշտպանական նպատակներով։ Ժողովրդի ամենաբազմազան պահանջմունքները լիովին բավարարելու համար անհրաժեշտ են խաղաղ պայմաններ։ Մեր երկիրն ընթացել ու ընթանում է խաղաղության և խաղաղ գոյակցության լենինյան կուրսով, պայքարել ու պայքարում է ընդդեմ սպառազինությունների մրցավազքի, որովհետև այն սպառնում է ոչ միայն մարդկանց կենսամակարդակին, այլև նրանց բուն կյանքին։

Սահմանելով տասներկուերորդ հնգամյակի խնդիրները, կուսակցությունը դրանց գլխավոր բովանդակությունը համարում է հոգատարությունը մարդու, նրա բարեկեցության հետագա բարձրացման նկատմամբ։ Առաջիկայում առավել բարձր տեմպերով կբարելավվեն մարդկանց կյանքի ու աշխատանքի պայմանները, որովհետև մեր երկրում սոցիալ-տնտեսական զարգացման արագացումն իրականացվում է հանուն մարդկանց, որոնք և գիտակցում են ու շահագրգռված են այդ արագացմամբ։ Այսպիսին են հաջողություններն ու խնդիրները սոցիալիստական հասարակության անդամների լիակատար բա- րեկեցությանն ու համակողմանի զարգացմանը հասնելու լենինյան կոնցեպ- ցիան իրականացնելու գործում։ «Երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու բարձրագույն իմաստը,— ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումում նշեց Մ. Ս. Գորբաչովը,— կուսակցությունը համարում է այն, որ անշեղորեն, հետզհետե բարձրացնի ժողովրդի բարեկեցությունը, բարելավի սովետական մարդկանց կյանքի բոլոր կողմերը, բարենպաստ պայմաններ ստեղծի անհատի ներդաշնակ զարգացման համար»։

Բոլոր կոմունիստների, սովետական բոլոր մարդկանց քննարկմանը ներկայացված ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության նախագծում, որը պիտի հաստատման դրվի մեր կուսակցության XXVII համագումարում, հստակորեն ձևակերպված են ՍՍՀՄ-ի կոմունիստական հեռանկարը և սոցիալ-տնտեսական զարգացման արագացման անհրաժեշտությունը, որով հնարավոր է դառնում հասարակության բոլոր անդամների լիակատար բարեկեցությունը և ազատ համակողմանի զարգացումն ապահովող էական առաջընթացը։

«ՍՄԿԿ-ն խնդիր է դնում,— ասված է ծրագրի նախագծում,— սովետական մարդկանց բարեկեցությունը բարձրացնելու որակապես նոր աստիճանի, ապահովելու նյութական, սոցիալական ու մշակութային բարիքների սպառման այնպիսի մակարդակ ու կառուցվածք, որոնք առավելագույնս կհամապատասխանեն ներդաշնակորեն զարգացած, հոգեպես հարուստ անհատի ձևավորման, սովետական մարդկանց ընդունակությունների, ձիրքերի ու տաղանդների առավել լրիվ բացահայտման համար անհրաժեշտ պայմանների ստեղծման նպատակներին՝ հօգուտ հասարակության»։

---

# ԱԳՐՈԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ՀԱՄԱԼԻՐԻ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՄԱՆ ՄԻ ՔԱՆԻ ՀԱՐՑԵՐ

Գ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ

ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ արդի փուլի առանցքային
խնդիրներից մեկի՝ պարենային ծրագրի, իրաց-
ման կարևոր պայմաններից է ագրոարդյունաբերական համալիրի (ԱԱՀ)
կառավարման, պլանավորման ու տնտեսական խթանման կատարելագործու-
մը, տնտեսական լծակների օգնությամբ ողջ համակարգի նպատակամղումը
վերջնական բարձր արդյունքների ապահովմանը։
ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումում ընկեր Մ. Ս. Գորբաչովը
հատուկ ընդգծեց. «Մենք ինչ հարց էլ որ քննարկելիս լինենք, ինչ կողմից էլ
որ էկոնոմիկային մոտենանք, վերջին հաշվով ամեն ինչ հանգում է կառա-
վարման, ամբողջությամբ վերցված, տնտեսական մեխանիզմի լուրջ բարե-
լավման անհրաժեշտությանը»։
Այս խնդիրը առանձնակի նշանակություն ունի ագրոարդյունաբերական
համալիրի զարգացման գործում, որի հիմնական նպատակն է բնակչության
հարաճուն պահանջմունքների բավարարումն անհրաժեշտ սննդամթերքներով
և գյուղատնտեսական հումքից պատրաստված լայն սպառման ապրանքներով,
ինչպես նաև արտադրության արդյունավետության բարձրացման ու գյուղի
սոցիալ-տնտեսական զարգացման պայմանների ապահովումը։
ԱԱՀ-ն հասարակական աշխատանքի բաժանման խորացման, արդյունա-
բերական ու գյուղատնտեսական արտադրության ինտեգրացման պրոցեսի օրի-
նաչափ հետևանքն է։ Դեռևս Կ. Մարքսն է նշել, որ խոշոր մեքենայական
արտադրությունը և նրա հանրայնացման բարձր մակարդակը ստեղծում են
«մի նոր, ավելի բարձր սինթեզի— հողագործության ու արդյունաբերության
դաշինքի նյութական նախադրյալներ նրանց հակադրորեն զարգացած ձևերի
հիմքի վրա» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. 1, էջ 528)։
Գյուղատնտեսության արտադրության մասնագիտացման, մեքենայացման,
այդ բնագավառում արդյունաբերական տեխնոլոգիայի արմատավորման
շնորհիվ ստեղծվել է հարակից կազմակերպությունների լայն ցանց։
Միջճյուղային հաշվեկշռի տվյալներով արդյունաբերության այն ճյուղե-
րի թիվը, որոնց արտադրանքն ուղղվում է գյուղատնտեսության ընդ-
լայնված վերարտադրության ապահովմանը, տեխնիկական բազայի ամրա-
պնդմանը, 1959—1980 թվականների ընթացքում եռապատկվել է և հասել
90-ի։ Միջճյուղային կապերի ընդլայնումը պայմանավորված է նաև արդյու-
նաբերական վերամշակման ենթակա արտադրանքի ծավալի ավելացմամբ։
Եթե 1959 թ. գյուղատնտեսական արտադրանքի միայն 39,6 տոկոսն էր հաս-
կացվում արդյունաբերական վերամշակման, ապա 1980 թ.՝ 60,2 տոկոսը։
Հարկ է նշել, որ զարգացած ԱԱՀ ունեցող մի շարք երկրներում այդ ցուցա-
նիշը կազմում է 70—80 տոկոս («Экономическая газета», № 5, 1982 г.)։
Ագրոարդյունաբերական արտադրության ինտեգրացման պայմաններում
կառավարման ճյուղային սկզբունքը չէր ապահովում ԱԱՀ-ի ներդաշնակ զար-



գացումը, որը և պահանջեց վերակառուցել այդ համալիրի տնտեսական ղե-
կավարման մեխանիզմը։
Առաջնորդվելով ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. մայիսյան և 1985 թ. ապրիլյան
պլենումների հիմնադրույթներով, ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների
խորհուրդը որոշում ընդունեցին արմատապես վերակառուցել ագրոարդյունա-
բերական համալիրի կառավարման ու պլանավորման սիստեմը և ստեղծելով
պետագրոարդի միասնական համակարգ։
ԱԱՀ-ի կառավարման նոր մարմինների ֆունկցիաները արտադրության
տարբեր մակարդակներում (երկրի, հանրապետության, շրջանի) պայմանա-
վորված են տվյալ համակարգի կառուցվածքով, տարբեր մինիստրություննե-
րի ու գերատեսչությունների ենթակայության, ագրոարդյունաբերական ինտե-
գրացման մեջ գտնվող կազմակերպությունների կազմով ու նշանակությամբ։
Երկրի ԱԱՀ-ի համակարգում ընդունված է առանձնացնել նյութական ար-
տադրության երեք ոլորտ։ Առաջին. արդյունաբերության այն ճյուղերի ամ-
բողջությունը, որն աշխատանքի միջոցներով ապահովում է գյուղատնտեսու-
թյունը, թեթև ու սննդի արդյունաբերությունը, մթերման համակարգը և լուծում
է այդ ճյուղերի տեխնիկական զինման հարցերը։ Այս ոլորտն ընդգրկում է
ԱԱՀ-ի աշխատողների մոտ 11 տոկոսը։ Երկրորդ. գյուղատնտեսական արտա-
դրությունը, որի բաժինը ողջ համալիրում աշխատուժի ընդգրկման առումով
կազմում է 64 տոկոս։ Երրորդ. այն ճյուղերի ամբողջությունը, որն ապահովում
է գյուղատնտեսական հումքի փոխադրումը, պահպանումը և արդյունաբերա-
կան վերամշակումը։ Այս ոլորտում զբաղված է ԱԱՀ-ի աշխատուժի 25 տոկոսը։
Ռեգիոնալ ԱԱՀ-ի համակարգում նպատակահարմար է առանձնացնել գի-
տահետազոտական հաստատությունները, գյուղի սոցիալական ինֆրակառուց-
վածքի զարգացումն ապահովող կազմակերպությունները։ Նշված օղակների
միասնական, որպես մեկ ամբողջություն, կառավարումն ու պլանավորումը
կնպաստեն գիտության նվաճումները արտադրության մեջ ներդնելու ժամկետ-
ների կրճատմանը, տեխնիկական առաջադիմության տեմպերի բարձրացմա-
նը, գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացմանն ու գյուղի սոցիա-
լական ինֆրակառուցվածքի զարգացմանը։
Հանրապետության ԱԱՀ-ի կառուցվածքում կենտրոնական տեղը պատկա-
նում է գյուղատնտեսությանը, որի մասնագիտացումը, զարգացման մակար-
դակն ու տեմպերը պայմանավորում են ողջ համալիրի դերը արտադրողական
ուժերի զարգացման ու տեղաբաշխման գործում։ Գյուղատնտեսությանը բա-
ժին է ընկնում հանրապետության հասարակական ամբողջական արդյունքի
7,7 տոկոսը և նոր ստեղծված արդյունքի 9,4 տոկոսը (1985 թ. պլանային
տվյալներով)։ 1984 թվականի սկզբին ՀՍՍՀ գյուղատնտեսությունն ընդգրկում
էր 280 կոլտնտեսություն, 77 միջտնտեսային կազմակերպություն ու միավո-
րում և 479 սովխոզ։
Հանրապետությունում հետևողականորեն աճում են գյուղատնտեսության
զարգացման տեմպերը։ 1984 թ. ճյուղի համախառն արտադրանքը կազմել է
910 մլն ռուբլի, որը 130,7 մլն ռուբլով ավելի է, տասներորդ հնգամյակի
միջին տարեկան արտադրանքից։ 1980 թ. նկատմամբ համախառն արտա-
դրանքն ավելացել է 16,9 տոկոսով։
Վերջին տարիներին մի շարք հիմնական արտադրատեսակների գծով ձեռք
է բերվել նշանակալից աճ։ Ազգաբնակչության մեկ շնչի հաշվով 1984 թ.
արտադրվել է կարտոֆիլ 55,2 տոկոսով ավելի, քան 1975 թ., բանջարեղենի
արտադրության աճը կազմել է 58,4, մսինը՝ 29,1, ձվինը՝ 35,7 տոկոս։ Սա-
կայն որոշ արտադրատեսակների, հատկապես հացահատիկի, կաթի, խաղողի
արտադրության ծավալը մեկ շնչի հաշվով կրճատվել է։
Այդ տարիներին մեծ աշխատանքներ են տարվել գյուղատնտեսության
արտադրական կարողությունների ավելացման ուղղությամբ։ 1984 թ. տարե-
սկզբի դրությամբ՝ գյուղատնտեսության հիմնական արտադրական ֆոնդերը
կազմել են 1,65 մլրդ ռուբլի՝ մոտավորապես երեք անգամ ավելի, քան 1970
թ.։ Աշխատանքի ֆոնդազինվածությունը կազմել է 7,1 հազար ռուբլի՝ 1970 թ.

ցուցանիշը գերազանցելով 2,5 անգամ: Մեծացել է նաև 100 հեկտար հողահանդակների ֆոնդաապահովվածությունը (2,84 անգամ): Նշանակալից չափով համալրվել է գյուղատնտեսության մեքենայական պարկը: Հանքային պարարտանյութերի մատակարարման ծավալը այդ ժամանակահատվածում կրկնապատկվել է: Ընդլայնվել է ջրովի հողերի տարածքը՝ հասնելով 303,7 հազար հեկտարի՝ 1970 թ. 265,9 հեկտարի դիմաց: Հանրապետությունում ստեղծված է գյուղատնտեսական արտադրության զարգացման վիթխարի արտադրական պոտենցիալ, որի արդյունավետ օգտագործման խնդիրը հանդիսանում է ԱԱՀ-ի կառավարման ու պլանավորման առանցքային հարցը:

Գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացումը պահանջում է գործուն միջոցներ ձեռնարկել հատկապես աշխատանքի արտադրողականության բարձրացման ուղղությամբ: Վերջին 13 տարիների ընթացքում ճյուղում աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 29 տոկոսով: Սակայն խախտվել է ֆոնդազինվածության աճի համեմատ աշխատանքի արտադրողականության բարձրացման առաջանցիկ տեմպերի ապահովման օրինաչափ պահանջը, որի հետևանքով զգալի չափով նվազել է ֆոնդահատույցը:

Վերջինիս նվազումը գյուղատնտեսության մեջ պայմանավորված է եղել նաև ԱԱՀ-ի տարբեր ոլորտների կառավարման ու պլանավորման ճյուղային սահմանազատվածությամբ և տնտեսավարման միասնական մեխանիզմի բացակայությամբ: Հայտնի է, որ գյուղատնտեսական մեքենաների գների բարձրացումը մեծ չափով գերազանցել է դրանց արտադրողականության աճին և չի փոխհատուցվել գյուղատնտեսական արտադրանքի գնման գների բարձրացմամբ:

ԱԱՀ-ի տարբեր ոլորտների տնտհաշվարկային շահերի համաձայնեցման մյուս կարևոր պահանջը գյուղին մատակարարվող աշխատանքի միջոցների մեծածախ գների և թողարկվող գյուղատնտեսական արտադրանքի գնագոյացման մեխանիզմի համաձայնեցումն է: Երկարատև օգտագործման արտադրատեխնիկական նշանակության գյուղատնտեսական տեխնիկայի մեծածախ գների սահմանման ժամանակ անհրաժեշտ է հաշվի առնել նրանց օգտակար արդյունքը կամ արտադրողականության աճի վրա ունեցած ազդեցությունը: Հակառակ դեպքում անխուսափելի են գյուղատնտեսական արտադրանքի ինքնարժեքի բարձրացումն ու շահութաբերության նվազումը:

Վիճակագրական տվյալները վկայում են, որ վերջին տարիներին գյուղատնտեսական մթերքների արտադրման աշխատանքային ուղղակի ծախսերը կրճատվել են, մինչդեռ ինքնարժեքը բարձրացել է: Այսպես, մեկ ցենտներ հացահատիկի արտադրության աշխատատարությունը 1983 թ. կազմել է 5,2 մարդ-ժամ՝ 1971—75 թթ. միջին տարեկան 6,7 մարդ-ժամի փոխարեն (կրճատվել է 22,4 տոկոսով): Այդ նույն ժամանակամիջոցում մեկ տոննա հացահատիկի ինքնարժեքը բարձրացել և 96 ռուբլուց հասել է 115 ռուբլու, այսինքն՝ 19,9 տոկոսով: Նույն միտումը դիտվում է նաև բանջարեղենի, կարտոֆիլի, մսի և այլ մթերքների արտադրության բնագավառում:

Կոլտնտեսությունների ու սովխոզների տնտհաշվարկային գործունեության նորմալ պայմաններ ստեղծելու նպատակով 1983 թվականից բարձրացվել են գյուղատնտեսական հիմնական արտադրատեսակների գնման գները, և որոշ չափով դրանք տարբերակվել են վնասաբեր և ցածր շահութաբեր տնտեսությունների համար (հաշվի առնելով օբյեկտիվ պատճառները): Այսուհետ ևս ԱԱՀ-ի միասնական տնտեսավարումը պահանջում է փոխադարձորեն համապատասխանեցնել գյուղատնտեսության աշխատանքի միջոցների և գյուղատնտեսական արտադրանքի գնագոյացման մեխանիզմը, գյուղատնտեսությունը սպասարկող կազմակերպությունների ծառայությունների փոխհատուցման և տնտեսական խթանման համակարգը:

Ագրոարդյունաբերական համալիրի կառավարման ու պլանավորման կատարելագործումը պահանջում է նաև նրա կազմում առարկայական բնույթ ունեցող պարենային և ոչ պարենային ապրանքների ենթահամակարգերի առանձնացում: Մեր հանրապետության ԱԱՀ-ն հիմնականում ներկայացնում է պարենային համակարգը, որը և պայմանավորել է գյուղատնտեսության ու



սննդարդյունաբերության ինտեգրացման գերակշռումը ԱԱՀ-ում: Հայաստանում գյուղատնտեսական հումքը վերամշակող ճյուղերի արտադրանքի ընդհանուր ծավալում 64,9 տոկոսը բաժին է ընկնում սննդի, իսկ 20,5 տոկոսը՝ մսեղենի և կաթնեղենի արդյունաբերությանը:

Յուրաքանչյուր ենթահամակարգ, որպես պլանավորման ինքնուրույն օբյեկտ, պետք է կոմպլեքս ձևով ընդգրկի վերարտադրության բոլոր փուլերը՝ սկսած գիտահետազոտական աշխատանքներից, նոր տեխնիկայի արմատավորումից, նյութատեխնիկական, աշխատանքային ռեսուրսներով ապահովվածությունից, կապիտալ ներդրումների պլանավորումից մինչև գյուղատնտեսական մթերքների արտադրությունը, նրանց պահպանումը, փոխադրումը, արդյունաբերական վերամշակումն ու իրացումը:

Այս միասնական շղթայի տարբեր օղակների աշխատանքները մինչև վերջերս իրականացնում էին առանձին մինիստրությունների ու գերատեսչությունների ենթակայության բազմաթիվ կազմակերպություններ, որոնց ներդաշնակ զարգացմանը և միասնական պլանավորմանը հաճախ խոչընդոտում էին գերատեսչական պատնեշները: Այդ իսկ նկատառումով, ՍՄԿԿ Կենտկոմի հավանությամբ, ՌՍՖՍՀ-ում տնտեսափորձեր անցկացվեցին ՇԱԱՄ կառավարման կատարելագործման ուղղությամբ: Մասնավորապես ստուգվում էին մի շարք մինիստրությունների ձեռնարկություններն ու կազմակերպությունները ագրոարդյունաբերական միավորումների ենթակայությանը հանձնելու նպատակահարմարությունը:

Առանձին տնտեսական շրջանների ԱԱՀ-ի և «արտադրող-սպառող» կազմակերպությունների հաշվեկշռված զարգացման ապահովման խնդիրները պահանջում են ՇԱԱՄ պլանավորման ու կառավարման համակարգում ընդգրկել տվյալ տարածքում գտնվող բոլոր կազմակերպությունները: Հանրապետության ԱԱՀ-ի շրջանային միավորումներից մեկի՝ Հոկտեմբերյանի միավորման կառուցվածքային սխեմայի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ համալիրում ընդգրկված են 25 կոլտնտեսություն, 8 սովխոզ (շրջանում գործող 10 սովխոզից), մեկ թռչնաբուծական ֆաբրիկա, պահածոների, կաթի և հացի գործարաններ: Գյուղատնտեսական ու արդյունաբերական ոլորտի արտադրական և սոցիալական ինֆրակառուցվածքը սպասարկում են թվով 13 կազմակերպություններ: Այստեղ ՇԱԱՄ-ի կառավարման միասնական համակարգից մինչև վերջերս դուրս էին մնացել շրջանի երկու սովխոզներ, գինու-կոնյակի մի քանի արտադրություններ: Դրանք հիմնականում հանրապետական ենթակայության կամ միջշրջանային գյուղատնտեսական ձեռնարկություններ ու կազմակերպություններ են, որոնք տեղավորված են տվյալ շրջանի վարչական տերիտորիայում, բայց ընդգրկված չէին շրջանային միավորման կազմի մեջ:

Նպատակահարմար է այդ կազմակերպությունները և տնտեսությունները նույնպես ներառնել տվյալ շրջանի ԱԱՄ-ի կազմում: Դա կնպաստի խաղողագինեգործական ենթահամակարգի զարգացման օպտիմալ պլանների մշակմանը, հարակից արտադրությունների համամասնական, հաշվեկշռված զարգացմանը, մթերքների արտադրության, պահպանման, փոխադրման, վերամշակման ու իրացման բոլոր փուլերի միասնական պլանավորմանն ու կառավարմանը: Շրջանային միավորման կազմում չընդգրկված կազմակերպությունները չեն մասնակցում միասնական նյութական խրախուսման, սոցիալ-կուլտուրական միջոցառումների և բնակարանային շինարարության, արտադրության զարգացման ֆոնդերի ստեղծմանը: ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումում նշվեց. «Գերատեսչական շահերի ազդեցությամբ շրջանային և մարզային միավորումները հաճախ չեն կարողանում հարկ եղածին պես համաձայնեցված լուծել գյուղատնտեսության և դրա հետ կապված ճյուղերի կոմպլեքսային զարգացման հարցերը: Եթե մենք հաստատ համոզված ենք, որ հողի վրա պետք է լինի միասնական տեր, և ագրոարդյունաբերական միավորումներն են լիակատար պատասխանատվություն կրում պարենային ծրագրի կատարման համար, մի բան, որ, կարծում ենք, ոչ ոքի մեջ կասկած չի հարուցում, ապա հարկավոր է իրականացնել այնպիսի միջոցառումներ, որոնք հնարավորություն կընձեռնեն կառավարելու, պլանավորելու և ֆինան-

սավորելու ագրոարդյունաբերական համալիրը բոլոր մակարդակներում՝ որպես միասնական ամբողջություն»։

Այսպիսի միջոցառումներից են հողային ֆոնդի ռացիոնալ օգտագործումը, տեղական պայմանների ու առանձնահատկությունների հաշվառումը, տվյալ շրջանի բնական և աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման ապահովումը, տնտեսությունների մասնագիտացումը։ Այդ նպատակով ՇԱԱՀ կառավարման նոր մարմինների անմիջական խնդիրն է տվյալ ռեգիոնի զարգացման միջճյուղային կոմպլեքս ծրագրերի մշակումն ու գործնական իրացումը, ինֆորմացիոն-հաշվողական համակարգի ստեղծումն ու ներդրումը, ինչպես նաև էկոնոմիկա-մաթեմատիկական մեթոդների լայնորեն կիրառումը պլանավորման ու կառավարման պրակտիկայում։ Այդ նպատակով անհրաժեշտ է տնտեսական շրջաններում ստեղծել հաշվիչ կենտրոններ, ներդնել ԱԱՀ-ի գործունեության վերլուծության ու պլանավորման ավտոմատացված համակարգեր, լուծել շրջանների ագրոարդյունաբերական համալիրի օպտիմալացման խնդիրները։

Ագրոարդյունաբերական համալիրի կառավարման ու պլանավորման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշման ոգով այժմ կատարելագործվում են շրջանային ագրոարդյունաբերական միավորումների կառուցվածքը, կառավարման սխեման, նրանց իրավասության տակ կենտրոնացվում է տվյալ տարածքում առկա ագրոարդյունաբերական համալիրի ողջ տնտեսական պոտենցիալը։ Շրջանային ագրոարդյունաբերական միավորումները պետք է տնօրինեն շրջանի բնական, նյութական ու աշխատանքային ռեսուրսները, արտադրական կարողությունները, տեխնիկան, ֆինանսական միջոցները, ապահովեն նրանց ռացիոնալ օգտագործումը, լուծեն շրջանի արտադրատնտեսական ու սոցիալական զարգացման խնդիրները։

Ցելինոգրադ քաղաքում տեղի ունեցած կուսակցական-տնտեսական ակտիվի խորհրդակցությունում ընկեր Մ. Ս. Գորբաչովը նշեց, որ այժմ մեր առջև որպես առաջնահերթ խնդիր կանգնած է բարձր հատույցի ապահովումը այն ամենից, ինչ կա գյուղատնտեսության, ամբողջությամբ վերցրած, ագրոարդյունաբերական համալիրի տրամադրության տակ։

Հիմնական օղակը, որով պետք է զբաղվել գյուղում մեր առջև կանգնած գործնական խնդիրների ողջ շղթան կարգավորելու համար, արտադրության կազմակերպումն է, կոլտնտեսությունների, սովխոզների, ագրոարդյունաբերական համալիրի բոլոր ձեռնարկությունների աշխատողների աշխատանքի կազմակերպումը, բարձր արտադրողական, արդյունավետ աշխատանքի արդեն կուտակված փորձի լայն օգտագործումը։ Այստեղ ամեն ինչ կախված է ոչ թե լրացուցիչ կապիտալ ներդրումներից, այլ ղեկավար կադրերի, կուսակցական, սովետական ու տնտեսական մարմինների գործունեությունից։

---

# ԼԱՅՆ ՃԱՆԱՊԱՐՀ ՆՈՐԻՆ, ԱՌԱՋԱՎՈՐԻՆ

**Վ. ԲԱՂՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու

ԸՆԹԱՑԻԿ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ ԼԱՅՆ ՄԱՍՇՏԱԲԻ միջոցառումներ են իրականացվում աշխատանքի կազմակերպման և վարձատրության բրիգադային ձևի կիրառման, նրա արդյունավետության բարձրացման նպատակով։ Գիտատեխնիկական առաջընթացի արագացման հարցերին նվիրված համամիութենական խորհրդակցությունում ընկ. Մ. Ս. Գորբաչովը նշեց. «Շատ կարևոր է, որ փոխադարձ սերտ կապ հաստատվի կոլեկտիվների աշխատանքի արդյունքների և աշխատանքի վարձատրության միջև։ Այստեղ պետք է ուղղակի կապ լինի։ Կարևոր է ավելի համարձակորեն դիմել կոլեկտիվ կապալի սկզբունքների տարածմանը միավորումների և ձեռնարկությունների գործունեության վրա»։ Այս սկզբունքային դրույթը իր արտացոլումն է գտել նաև ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրույթի և երկրի ժողովրդական տնտեսության զարգացման հիմնական ուղղությունների նախագծերում։

Արտադրության տեխնիկական առաջընթացի, արտադրապրոցեսների մեքենայացման, կարողությունների արդյունավետ օգտագործման, արտադրանքի որակի բարձրացման և, իհարկե, նաև աշխատանքի կազմակերպման ու նյութական խթանման բրիգադային ձևի ակտիվ կիրառման շնորհիվ Երևանի հրուշակեղենի-մակարոնի կոմբինատի կոլեկտիվը վերջին տարիներին աշխատում է համաչափ, դինամիկ կերպով զարգանում է արտադրության տեխնիկական բազան, նորացվում են սարքավորումները։ Հաջողությամբ կատարվում են տարեկան և հնգամյա պլաններով սահմանված առաջադրանքները։ Հատկանշական է, որ թողարկվող արտադրանքի ամբողջ հավելաճի 95,3 տոկոսը ձեռք է բերվել աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։

Արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի, նրա արտադրողականության հետագա բարձրացման ապահովման կարևոր ուղղություններից մեկը աշխատանքի կազմակերպման և նյութական խթանման բրիգադային ձևի զարգացումն է։ Բրիգադային աշխատանքի պայմաններում բարձրանում են աշխատանքային կարգապահությունը, աշխատաժամանակի օգտագործման մակարդակը, առավել ճշտորեն է սահմանվում կատարված աշխատանքի քանակի և նրա վարձատրության հարաբերակցությունը։

Կոմբինատում արդեն մի քանի տարի է, ինչ կիրառվում է աշխատանքի կազմակերպման այդ առաջավոր ձևը։ Հետևողականորեն ավելանում է նոր ձևով աշխատող բրիգադների և այնտեղ ընդգրկված բանվորների թիվը։ Կոմբինատի բոլոր բանվորների 61,4 տոկոսն այսօր աշխատում է բրիգադային եղանակով։ Նոր ձևով աշխատող բանվորներն ընդգրկված են մոտ 100 բրիգադում, որոնցից 62-ը կոմպլեքսային են, իսկ 38-ը մասնագիտացված։

Նոր ձևով աշխատանքի անցնելու համար կոմբինատում անհրաժեշտ էր լուծել մի շարք տեխնիկատնտեսական, սոցիալ-տնտեսական և հոգեբանական խնդիրներ։ Առաջին հերթին անհրաժեշտ էր հիմնավորել բրիգադների կազմը

և թվաքանակը, քանի որ բրիգադը արտադրության նպատակով մարդկանց կազմակերպչական, տեխնոլոգիական միավոր լինելուց զատ նաև համատեղ աշխատանք կատարող սոցիալական միավոր է։

Արտադրական բրիգադը ձեռնարկության կոլեկտիվի սկզբնական բջիջն է և աշխատանքի կազմակերպման ստորին օղակը։ Բրիգադի կազմում մարդկանց աշխատանքային գործունեությանը համընթաց տեղի է ունենում անձի դաստիարակման ակտիվ պրոցես, ստեղծվում ու զարգանում են կոլեկտիվի ավանդույթները։

Անմիջական մասնակցությունը արտադրության կառավարմանը մարդկանց մոտ ձևավորում է աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունք և ընկերական փոխօգնության հարաբերություններ։ Այդ պայմաններում բրիգադի թվաքանակը պետք է սահմանել՝ ելնելով մի ամբողջ շարք գործոններից, որոնք բխում են բրիգադի աշխատանքի տեխնիկական-կազմակերպչական պայմաններից, սոցիալ-հոգեբանական առանձնահատկություններից և զարգացման մակարդակից։ Ակնհայտ էր բրիգադները խոշորացնելու անհրաժեշտությունը, որի դեպքում ավելի ճիշտ են հաշվի առնվում մարդկանց մասնագիտական ու ֆիզիկական ընդունակությունները, հնարավորություն է ստեղծվում յուրաքանչյուրի համար ընտրելու այնպիսի օպերացիա, որը նա ավելի լավ կարող է կատարել։ Նախկինում, երբ բրիգադներում մեծ մասամբ ընդգրկվում էր 5—6 մարդ, նշանակալի չափերի էին հասնում սարքավորումների պարապուրդները, քանի որ յուրաքանչյուր կարգաբերող բանվոր սպասարկում էր մեկ տեղամաս և հոգ էր տանում իր սպասարկած մեքենայի աշխատանքի համար։ Նրան հաճախ քիչ էր հետաքրքրում, թե ինչ է կատարվում հարևան աշխատատեղերում։ Այժմ յուրաքանչյուր կարգաբերող պատասխանատու է բրիգադը սպասարկող բոլոր մեքենաների աշխատանքի համար, որով զուգակցվում է անհատական և կոլեկտիվ պատասխանատվությունը։ Փոքր բրիգադներում ցածր է նաև առաջավոր փորձի տարածման արդյունավետությունը։ Բրիգադների խոշորացումը հնարավորություն տվեց մոտեցնել բանվորների պրոֆեսիոնալ վարպետության աստիճանը, նվազագույնի հասցնել սարքավորումների պարապուրդներն ու աշխատաժամանակի կորուստները, կրճատել խոտանը։

Աշխատանքի կազմակերպման նոր ձևի ճիշտ կիրառման կարևոր սկզբունքը բրիգադի յուրաքանչյուր անդամի ներդրած ավանդի և նրա վարձատրության չափի ճիշտ որոշումն է։ Այն կատարվում է աշխատանքային մասնակցության գործակիցների միջոցով, որոնք սահմանվում են բրիգադի խորհրդի կողմից՝ հիմք ընդունելով յուրաքանչյուրի աշխատանքի անհատական արտադրողականությունն ու որակը, մասնագիտությունների համատեղման աստիճանը, բրիգադի մյուս անդամներին ցույց տրված օգնությունը, աշխատանքային կարգապահությունը։ Այսպիսով, աշխատանքային մասնակցության գործակիցներն արտահայտում են կոլեկտիվ աշխատանքում բանվորի մասնակցության ամենատարբեր կողմերը։ Դա բխում է ՍՄԿԿ XXVI համագումարի ուղղակի պահանջից՝ «շարունակել նյութական խրախուսման սիստեմի կատարելագործումը, հաշվի առնելով յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվի և առանձին աշխատողի կոնկրետ ներդրումը ձեռքբերված արդյունքների մեջ» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 320)։

Կոմբինատի համապատասխան բաժինները և արհմիութենական կազմակերպությունները մշտապես հետևում են աշխատանքային մասնակցության գործակիցների ճիշտ և արդյունավետ կիրառմանը։ Դա հնարավորություն է տալիս ժամանակին բացահայտել և վերացնել այդ գործում թույլ տրված վրիպումները։

Կոմբինատում փոխվել է նաև պարգևատրման կարգը։ Նախկին անհատական փոխարեն այժմ բրիգադի պարգևի չափը հաշվարկվում է՝ ելնելով բրիգադի ամսական վաստակից, իսկ արտադրանքի որակը համարվում է պարգևատրման պայման, այսինքն՝ որակի պահանջների չկատարման դեպքում բրիգադի կոլեկտիվը լրիվ կամ մասնակիորեն զրկվում է պարգևից։ Այս հանգամանքը կարևոր ազդակ է բրիգադի բոլոր անդամների համար՝ խստիվ կատա-



րելու որակին ներկայացվող պահանջները։ Դրա շնորհիվ կոմբինատում 1984 թ.
առևտրի տեսչության կողմից ստուգված ընդհանուր արտադրանքի տեսակա-
րար կշռում խոտանը նվազել է 0,5 տոկոսով, իսկ մակարոնի գծով՝ 1,2 տո-
կոս։

Յուրաքանչյուր բրիգադի համար սահմանվում են թողարկվող արտա-
դրանքի, աշխատավարձի ֆոնդի, աշխատանքի արտադրողականության ամ-
սական, եռամսյակային և տարեկան պլաններ։ Մշակված և հաստատված են
բրիգադային կանոնադրությունը, սպասարկման և արտադրական նորմաներն
ու սոցպարտավորությունները։ Դրա հետ կապված՝ վերանայվեցին աշխա-
տանքի նորմաները, որը հնարավորություն տվեց կոմբինատի մասշտաբով
աշխատանքի նորմաների մակարդակը միջին հաշվով բարձրացնել 1,5 տոկո-
սով։ Լայնորեն կիրառվում է բանվորների մասնագիտությունների համատեղ-
ման սկզբունքը։ Այստեղ համատեղվում են փականագործի ու եռակցողի,
եփողի և աղացողի, ապարատավարի ու կշռավարի, մակարոնը կտրողի և հա-
կավորողի, մամլողի ու չորացնողի, կոմպրեսորավարի և կոնդիցիոներ սպա-
սարկողի աշխատանքները։ Դրա շնորհիվ տարվա ընթացքում արտադրության
այլ տեղամասերն են փոխադրվել 15 մարդ։

Բանվորների մոտ հարակից մասնագիտությունների տիրապետումը մաս-
սայական բնույթ է կրում։ Մասնագիտությունների համատեղման, բրիգադի
անդամների կողմից իրենց տեղամասում գործող մի քանի մասնագիտություն-
ների տիրապետումը բարձրացնում է յուրաքանչյուրի աշխատանքի փոխապա-
հովվածությունը։ Այդ բոլորը հնարավորություն է ստեղծում բրիգադի կազ-
մում բացակայությունների դեպքում փոխարինել միմյանց, բացառել պարա-
պուրդները, միաժամանակ օրվա, շաբաթվա կամ ամսվա ընթացքում պարբե-
րաբար փոխել կատարվող օպերացիան՝ հարստացնելով աշխատանքի բովան-
դակությունը և նվազագույնի հասցնելով նրա միատարրությունն ու նյարդա-
յին լարվածությունը։ Կոմբինատում արտադրամասերի, բրիգադների, կոլեկ-
տիվների և առանձին աշխատողների միջև լայնորեն ծավալվում է սոցիալիս-
տական մրցությունը, յուրաքանչյուր ամիս ամփոփվում են մրցության ար-
դյունքները։ Սահմանված են փոխանցիկ դրոշներ՝ դրամական պարգևներով։
Նյութական խրախուսման ֆոնդի 11 տոկոսը հատկացվում է մրցության հաղ-
թողներին։ Բրիգադային ձևով աշխատող 20 կոլեկտիվներ արժանացել են կո-
մունիստական աշխատանքի բարձր կոչման։

Նոր ձևով աշխատանքը կոլեկտիվին շահագրգռում է նաև տնտեսելու հում-
քը և նյութերը։ Անցյալ տարի կոմբինատում տնտեսվել է 40 հազար կվտ-ժամ
էլեկտրաէներգիա, 135 տոննա պայմանական վառելանյութ, 1.100 տոննա գո-
լորշի։ Աշխատանքի կազմակերպման բարելավման շնորհիվ կոլեկտիվը աշ-
խատանքի արտադրողականության անցյալ տարվա առաջադրանքը կատարել
է 115,1 տոկոսով, որը նախորդ տարվա մակարդակը գերազանցում է 8,1 տո-
կոսով։ Հատկանշական է, որ միջին աշխատավարձը այդ նույն ժամանակում
աճել է 3,2 տոկոսով։ Ձեռք բերված արտադրական հաջողությունների համար
կոմբինատի կոլեկտիվը բազմիցս արժանացել է ՍՍՀՄ սննդարդյունա-
բերության մինիստրության և սննդարդյունաբերության բանվորների արհմիու-
թյան Կենտրոնական կոմիտեի և ՀՍՍՀ սննդարդյունաբերության մինիստրու-
թյան ու ճյուղային արհմիության հանրապետական կոմիտեի փոխանցիկ դրո-
շներին։ 1984 թ. աշխատանքի արդյունքների համար կոլեկտիվը պարգևա-
տրվել է ՀԿԿ Կենտկոմի, Մինիստրների խորհրդի, ՀԼԿԵՄ Կենտկոմի և ՀԱՄԽ-ի
փոխանցիկ դրոշով։

Սակայն սխալ կլիներ կարծել, թե կոլեկտիվի աշխատանքը անթերի է, և
բոլոր խնդիրները լուծված են։ Նախ պետք է ասել, որ բոլոր բրիգադները չէ,
որ հասել են բարձր ցուցանիշների։ Առանձին դեպքերում բրիգադների բարձր
արտադրողական աշխատանքի համար ստեղծված չեն համապատասխան պայ-
մաններ։ Մակարոնի արտադրամասում, օրինակ, որոշ բրիգադների ցուցա-
նիշները նվազել են։ Մի շարք արտադրատեսակներ դժվար են սպառվում, հե-
տևապես և պլանով նախատեսված չափով չեն արտադրվում, որն անդրադառ-
նում է տվյալ տեղամասում աշխատող բրիգադների ցուցանիշների վրա։ Այդ

կապակցությամբ կոմբինատում որոշակի քայլեր են կատարվում տեսականու
փոփոխման նպատակով։ Նման բրիգադների գործունեությունը, որպես կա-
նոն, պետք է հիմնվի տնտեսական հաշվարկի սկզբունքների վրա։ Ինչպես
նշվեց, բրիգադային եղանակով աշխատող բանվորների վարձատրությունը կա-
տարվում է ըստ աշխատանքի վերջնական արդյունքների, և աշխատավարձը
բրիգադի անդամների միջև բաշխվում է՝ հիմք ընդունելով աշխատանքային
մասնակցության գործակիցը, միաժամանակ հաշվարկվում է հումքի, նյու-
թերի, վառելիքի ծախսումների նորմաների պահպանությունը։ Սակայն կոմ-
բինատում բրիգադները, լրիվ տնտհաշվարկով չեն աշխատում։ Այստեղից էլ
բխում է աշխատանքի կազմակերպման և խթանման բրիգադային ձևի ներ-
դրման կատարելագործման անհրաժեշտությունը։ Ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտ-
կոմի 1985 թ. ապրիլյան պլենումում, «Մեծ նշանակություն ունի տնտեսական
հաշվարկի սկզբունքները բոլոր սկզբնական աշխատանքային բջիջներին, յու-
րաքանչյուր աշխատատեղին հասցնելը։ Դա թույլ կտա կառավարման համա-
կարգը վերևից կատարելագործելու միջոցառումները շաղկապել աշխատանքը
ներքևից կազմակերպելու և խթանելու կոլեկտիվ ձևերի զարգացման հետ,
բարձրացնել աշխատավորների ակտիվությունը»։ Դա վերաբերում է հատկա-
պես աշխատանքի նորմաներին։ Անհրաժեշտ է հասնել նրան, որ յուրաքան-
չյուր բրիգադի աշխատանքի ցուցանիշները հաշվարկվեն՝ ելնելով արտադրա-
կան, ճյուղային ու տիպային նորմաներից։

Առաջավոր ձեռնարկությունների փորձը ցույց է տալիս, որ կուսակցա-
կան, կոմերիտական և արհմիութենական խմբեր ունեցող սկզբնական աշ-
խատանքային կոլեկտիվներն աչքի են ընկնում իրենց բարձր կազմակերպվա-
ծությամբ ու համախմբվածությամբ։ Այնտեղ ստեղծվում են սոցիալ-հոգեբա-
նական առողջ մթնոլորտ, աշխատանքի փոխապահովվածության և ընկերա-
կան փոխօգնության բարձր մակարդակ, բացառված են աշխատանքային ու
տեխնոլոգիական կարգապահության լուրջ խախտումները։ Մեծ է կուսակցա-
կան և հասարակական կազմակերպությունների դերը բրիգադների և նրանց
խորհուրդների գործունեության բարելավման բնագավառում։ Այս առումով
հարկավոր է մտածել նոր ձևով աշխատող բրիգադներում կուսակցական, կո-
մերիտական և արհմիութենական խմբեր ստեղծելու անհրաժեշտության մա-
սին։ ՀԿԿ Կենտկոմի 1985 թ. մայիսյան պլենումում ընկ. Կ. Ս. Դեմիրճյանն
ասաց, որ «Կուսակցական կազմակերպությունները, բոլոր տնտեսական օղակ-
ները պետք է անդուլ ուշադրություն նվիրեն աշխատանքի կազմակերպման
առաջավոր ձևերի ու մեթոդների լայն ներդրման, աշխատանքի բրիգադային
եղանակի տնտեսական ու դաստիարակչական պոտենցիալի ակտիվ օգտա-
գործման հարցերին»։

Աշխատանքի կազմակերպման բրիգադային ձևի կիրառումը բրիգադավա-
րից պահանջում է ոչ միայն բարձր որակավորում, պրոֆեսիոնալ վարպետու-
թյուն, այլև ընդհանուր պատրաստվածություն։ Նա պատասխանատու է ամ-
բողջ բրիգադի աշխատանքի համար, պլանային առաջադրանքների կատար-
ման, որակի ապահովման, աշխատանքային կարգապահության և, վերջապես,
կոլեկտիվի անդամների միջև վաստակի ճիշտ բաշխման համար։ Սակայն
բրիգադի ղեկավարման համար մինչև այժմ հավելավճար է տրվել տարիֆա-
յին դրույքի 10—15 տոկոսի չափով, որը միշտ չէ, որ հարկ եղած շահագրգռ-
վածություն է ստեղծում ավելի բարձր վարպետություն և գիտելիքներ ունեցող
բանվորներին՝ բրիգադավար աշխատելու։ Եթե բրիգադի կազմը մեծ է, ապա
բրիգադավարը պետք է ունենա նաև տեղակալներ, օղակավարներ, որոնք կոչ-
ված են աշխատատեղերում կազմակերպելու բանվորների աշխատանքը։
Նրանց էլ՝ առհասարակ հավելավճար չի տրվել։ Այժմ արդեն նախատեսված է
տնտհաշվարկով աշխատող, ինչպես նաև 15-ից ավելի բանվոր ունեցող բրի-
գադների ղեկավարման համար արտադրական առաջադրանքների կատարման
և արտադրանքի բարձր որակի ապահովման դեպքում, բրիգադի վաստակի
ընդհանուր գումարից ելնելով, բրիգադավարին վճարվող հավելավճարի գոր-
ծող չափերը հասցնել մինչև 40, իսկ օղակավարներինը մինչև 20 ռուբլու։
Փորձը ցույց է տալիս, որ բրիգադային ձևի կիրառումը պայմանավորված



է արտադրության տեխնիկական, տնտեսական ու կազմակերպական վերակա-
ռուցման հետ, իսկ դա պահանջում է բանվորների մասնագիտական ու գա-
ղափարական որոշակի նախապատրաստվածություն։ Ուստի առաջին պլան է
մղվում բանվորների, հատկապես բրիգադավարների, ուսուցման կազմակեր-
պումը։ Հարկ է կատարելագործել բանվորների որակավորման բարձրացման
համակարգը, լրջորեն ուսումնասիրել կոլեկտիվի աշխատանքի կազմակերպ-
ման, սոցիալ-հոգեբանական բարենպաստ մթնոլորտի ստեղծման, աշխա-
տանքի վարձատրության, ինչպես նաև ձեռքի աշխատանքի մեքենայացման
հարցերը։ Դա հնարավորություն կտա բարձրացնել բանվորների որակավո-
րումը, աշխատանքի արտադրողականությունն ու որակը։

Ձեռնարկության կոլեկտիվը նշանակալի հաջողությունների է հասել ըն-
թացիկ տարվա առաջին կիսամյակում։ Ինչպես արտադրանքի թողարկման,
այնպես էլ դրա իրացման պլանները գերակատարվել են 11,6, իսկ աշխա-
տանքի արտադրողականությանը՝ 10,4 տոկոսով, տնտեսվել են 29 հազար
կվտ—ժամ էլեկտրաէներգիա, 70 տոննա պայմանական վառելիք։ Մեկ ռուբլու
արտադրանքի հաշվով կատարված ծախսումները նվազել են 0,8 տոկոսով։
Կոլեկտիվը պարտավորվել է ընթացիկ տարվա պլանը արտադրական բոլոր
ցուցանիշների գծով կատարել դեկտեմբերի 25-ին և լրացուցիչ թողարկել 3,5
միլիոն ռուբլու արտադրանք, ստանալ 200 հազար ռուբլու արտապլանային
շահույթ, կազմակերպել նոր ձևով աշխատող հինգ նոր բրիգադներ, հետևո-
ղականորեն ներդնել աշխատանքի կազմակերպման և նյութական խթանման
բրիգադային ձևը և դրա շնորհիվ աշխատանքի արտադրողականության բարձ-
րացման առաջադրանքը գերակատարել 3 տոկոսով։

Պլանավորման և տնտեսական գործունեության ասպարեզում արդյունա-
բերական ձեռնարկությունների իրավունքներն ընդլայնելու և աշխատանքի
վերջնական արդյունքների համար նրանց պատասխանատվությունն ուժեղաց-
նելու նպատակով կիրառվող խոշորամասշտաբ տնտեսափորձը հաջորդ տար-
վանից կտարածվի նաև սննդարդյունաբերության օբյեկտներում։ Դա պահան-
ջում է ավելի խոր և հետևողականորեն արմատավորել աշխատանքի կազմա-
կերպման ու նյութական խթանման բրիգադային ձևը, քանի որ այն ուղղված
է տնտեսական բոլոր օղակների և աշխատավորական կոլեկտիվների շահա-
գրգռության, արտադրության արդյունավետության ու արտադրանքի որակի
բարձրացմանը, գիտատեխնիկական առաջադիմության արագացմանը։ Համե-
մատաբար արագ հատույց կարելի է ստանալ, եթե գործողության մեջ դրվեն
կազմակերպական-տնտեսական ու սոցիալական ռեզերվները և, առաջին հեր-
թին, ակտիվացվի մարդկային գործոնը, հասնեն այն բանին, որ յուրաքան-
չյուրն իր տեղում աշխատի բարեխղճորեն և լիակատար հատույցով։

# ԳՅՈՒՂԻ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ

**ՍՄԿԿ** ԿԵՆՏԿՈՄԻ 1985 Թ. ԱՊՐԻԼՅԱՆ ՊԼԵՆՈՒՄՈՒՄ կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Մ. Ս. Գորբաչովն ասաց. «Երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու բարձրագույն իմաստը կուսակցությունը համարում է այն, որ անշեղորեն, հետզհետե բարձրացնի ժողովրդի բարեկեցությունը, բարելավի սովետական մարդկանց կյանքի բոլոր կողմերը, բարենպաստ պայմաններ ստեղծի անհատի ներդաշնակ զարգացման համար»: Այդ խնդիրները առավել հանգամանորեն են արծարծված ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրույթի և «ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների» նախագծերում: Դրանք բովանդակում են կուսակցության սոցիալական քաղաքականության հիմնական սկզբունքները, սովետական մարդկանց նյութական բարեկեցության բարձրացման, հոգևոր կյանքի հարստացման, աշխատանքի ու կենցաղի պայմանների բարելավման ուղիներն ու միջոցները: Հիմնական ուղղություններով խնդիր է դրվում. «Ապահովել բնակչության բոլոր խավերի ու սոցիալական խմբերի բարեկեցության հետագա վերելք, խոր վերափոխումներ՝ մարդկանց աշխատանքի ոլորտում և կենսապայմաններում»:

Հոկտեմբերյանի շրջանի Նոր Արմավիր գյուղում հաջողությամբ են լուծվում սոցիալական զարգացման արմատական խնդիրները, օրըստօրե բարձրանում է արտադրության մարդկանց բարեկեցությունը, սովետական ապրելակերպը խոր արմատներ է ձգում գյուղական կյանքի բոլոր ոլորտներում: Բնակարանային ապահովածության վերաբերյալ կուսակցության XXVI համագումարի առաջադրած խնդրի լուծումն իր արտացոլումն է գտել Նոր Արմավիրում. բոլոր 385 ընտանիքներն էլ ապրում են հարմարավետ, քարաշեն, բազմասենյականոց մենատներում: Նորաստեղծ 40 ընտանիքների հողամասեր են հատկացվել անհատական բնակարաններ կառուցելու համար: Կոլտնտեսականներն ու գյուղական ծառայողներն օգտվում են բնական գազից, կենտրոնացված ջրամատակարարումից, առևտրի կենտրոնի, կենցաղի տան, փոստակայանի, ավտոմատ հեռախոսի, խնայդրամարկղի, ռադիո-հեռուստատեսային ցանցի և այլ ծառայություններից: Գյուղն ունի իր միջնակարգ դպրոցը, ուսուցչի տունը, մսուր-մանկապարտեզը, գրադարանը, բուժկետը:

Նորարմավիրցիները երկու տարի առաջ լավ նվեր ստացան. գործարկվեց մշակույթի հոյակերտ նոր տունը, որտեղ կան կոլտնտեսականների ազատ ժամանակի անցկացման լայն հնարավորություններ, գործում են երգի-պարի, թատերական ինքնագործ խմբեր, փողային նվագախումբ, ամեն օր ցուցադրվում են կինոնկարներ, հաճախակի կազմակերպվում զեկուցումներ, զրույցներ ու դասախոսություններ, մշակույթի ինքնագործ և պրոֆեսիոնալ խմբերի ելույթներ: Հարգի են նաև ֆիզկուլտուրան ու սպորտը: Վոլեյբոլի, ֆուտբոլի, շախմատ-շաշկու, ըմբշամարտի, թենիսի և նյուս սեկցիաներում ընդգրկված են մի քանի հարյուր երիտասարդներ:

Նոր Արմավիրում տնտեսական ու սոցիալական զարգացման խնդիրները և գաղափարադաստիարակչական աշխատանքը սերտորեն միահյուսված են: Խելամտորեն են լուծվում սոցիալ-տնտեսական զարգացման գաղափարախոսական և գաղափարախոսական աշխատանքի սոցիալ-տնտեսական ապահովվածության հարցերը: Արտադրության մարդիկ տիրոջ սրտացավությամբ են գործի կպչում, շահագրգռություն հանդես բերում տնտեսության առատ վերջնարդյունքի, նրա առաջընթացի նկատմամբ: Այդ ամենի շնորհիվ տնտեսությունը քայլում է վերելքի անշեղ ուղիով. ամեն տարի կատարվում ու գերակատարվում են գյուղատնտեսական մթերքների արտադրության ու պետական վաճառքի առաջադրանքները, ամեն մի կովից 3.000



կգ-ից ավելի կաթ է ստացվում: Մեկ տասնամյակ է, ինչ արտադրության բոլոր տեղամասերն անցել են տնտհաշվարկի և տարին փակում են օգուտով: Բարձր եկամտաբերությունը հնարավորություն է ընձեռում ունենալ 500 հազար ռուբլու անբաժանելի դրամագլուխ, որի հաշվին կառուցվում են ոչ միայն կոլտնտեսության արտադրական, այլև կուլտուր-կենցաղային օբյեկտներ: Անընդհատ աճում են կոլտնտեսականների եկամուտները: Նրանց տարեկան միջին վաստակը կազմում է մոտ 2.130 ռուբլի: Ամեն տարի դաշտային աշխատանքներն ավարտելուց հետո սոցմրցության 50—60 առաջավորներ տնտեսության հաշվին մեկնում են տուրիստական շրջագայության, շատերն անվճար ուղեգրերով բուժվում ու հանգստանում են առողջարաններում ու հանգստյան տներում: Վերջին հինգ տարում՝ 145 ամուսնություն, 360 ծնունդ— ահա Նոր Արմավիրի այսօրվա պատկերը:

Այլ խոսքով, Նոր Արմավիրի ներկա սերունդը, որի նախնիները անապահով ու զրկանք կյանք են վարել, լավ աշխատում ու լավ էլ ապրում են, արժանի ավանդ ներդնում տնտեսության, գյուղի հետագա առաջընթացի գործում: Արտադրության մարդկանց խանդավառությունը, սոցիալական ու տնտեսական զարգացման, գաղափարական դաստիարակության ասպարեզի նվաճումները կոլտնտեսության կուսկազմակերպության, վարչության և գյուղական սովետի գործկոմի համագործակցված ու ջանադիր աշխատանքի արգասիք են: Նրանց ջանքերով գյուղում, տնտեսության բոլոր տեղամասերում տիրում է բարոյահոգեբանական առողջ մթնոլորտ, սոցիալիստական համակեցության կանոնների կատարումը բոլորի համար դարձել է պարտադիր պայման: Մարդիկ անձնվեր, ազնիվ աշխատանքով կերտում են իրենց գեղեցիկ այսօրն ու պայծառ ապագան...

Հոկտեմբերյանի շրջանում Նոր Արմավիր գյուղի օրինակը եզակի չէ: Բնակչության սոցիալական զարգացման խնդիրները պատշաճ կերպով են լուծվում նաև Խանջյանի, Ջերժինսկու անվան սովխոզների, Մեծամորի ավաններում, Արմավիր, Հոկտեմբեր գյուղերում և շատ այլ բնակավայրերում: Պետությունն ամեն տարի հատկացնում է ավելի քան հինգ միլիոն ռուբլի: Այդ միջոցներով ծնունդ են առնում նոր բնակելի տներ, կրթության, առողջապահության, մշակույթի, առևտրի ու կենցաղային սպասարկման օբյեկտներ: Լայն ծավալի աշխատանքներ են կատարվում նաև կոլտնտեսությունների միջոցներով: Տարեցտարի փոխվում է գյուղերի ու ավանների կուլտուրական դեմքը, նոր, դրական տեղաշարժեր են կատարվում արտադրության մարդկանց կենցաղում: Այսօրվա գյուղական աշխատավորի պահանջմունքները մեծացել են. նա կամենում է խելամտորեն տնօրինել աշխատանքից ազատ ժամանակը, բովանդակալից անցկացնել հանգիստը: Անտարակույս, այդ հարցերի պատշաճ լուծումը լավ միջոց է մասնավորապես երիտասարդությանը հայրենի բնօրրանին, հարազատ հողին ու ջրին կապելու համար: Այդ բնագավառում շրջանում ծավալված գործունեության ելակետը կուսակցության այն պահանջն է, որ մարդու աշխատանքին, նյութական բարեկեցությանն ու հանգստին պետք է անսահման ուշադիր լինել: Այդ խնդիրը շրջանում հաջողությամբ է լուծվում: Հեռու չգնանք. 1981—1985 թվականներին սովխոզային ավաններում ու Մեծամորում շահագործման են հանձնվել 11.441 քմ բնակելի մակերես, 2.100 աշակերտական տեղով դպրոցների, 460 տեղով մանկապարտեզների, 1.400 տեղով ակումբների շենքեր, Մրգաշատ, Արմավիր, Մարգարա գյուղերում, Լուկաշինի անվան սովխոզի ավանում՝ առևտրի կենտրոններ: Լայնորեն ծավալվում է նաև անհատական բնակարանային շինարարությունը: Այդ նույն ժամանակամիջոցում գյուղական 710 ընտանիքների (հիմնականում՝ նորաստեղծ) հատկացվել են տնամերձ հողամասեր: Տարեցտարի մեծանում են կենցաղային, առևտրի, հասարակական սննդի ծառայությունների ծավալները: Գյուղական 37 բնակավայրերից 22-ում գործում են կենցաղի տներ, 15-ում՝ տարբեր ծառայությունների արհեստանոցներ:

Սոցիալական զարգացման արդի չափանիշներն ուրիշ են: Այսօր շրջանի գյուղական յուրաքանչյուր տասը ընտանիքից 9-ը ունեն հեռուստացույց, յուրաքանչյուր երրորդ ընտանիքը՝ անձնական օգտագործման մարդատար ավտոմեքենա, յուրաքանչյուր չորրորդն օգտվում է հեռախոսային ցանցից: Լվացքի ու կարի մեքենաները, սառնարանը, տնային ժամանակակից կահ-կարասին ամուր տեղ են գտել գյուղացու կենցաղում: Բնակչության բարեկեցիկ կյանքի չափանիշներից է նաև մարդկանց վաստակի և խնայողական դրամարկղներում ավանդների ավելացումը:

Անցած տարի գյուղատնտեսության աշխատողների միայն լրացուցիչ վարձատրությունը կազմել է ավելի քան 5,3 մլն ռուբլի: Եվ, բնականաբար, մարդիկ աշխատում են սրտանց ու նվիրումով, բազմապատկում իրենց տնտեսությունների հարստությունը:

* * *

Սոցիալական լուրջ խնդիր է մատաղ սերնդի կրթության ու դաստիարակության գործը: Նախորդ սերունդների համար դա անիրագործելի երազանք է եղել: Միայն մի բնորոշ փաստ վկայակոչեմ ասածս հաստատելու համար: Հոկտեմբերյանի շրջանի այժմյան տարածքում մինչև սովետական կարգեր հաստատվելը գործել է ընդամենը հինգ դպրոց (Մրգաշատում, Ալիազափում, Արմավիրում, Նալբանդյանում և Հոկտեմբերում) ու բոլորը՝ տարրական: Դպրոցական շենքեր, պարզ է, չեն եղել, երեխաներն էլ դասերին հաճախել են դաշտային աշխատանքներից ազատ ժամանակ: Իսկ հիմա, խնդրեմ, շրջանը պատված է դպրոցական ու նախադպրոցական հիմնարկությունների խիտ ցանցով. բոլոր բնակավայրերն ունեն իրենց կրթօջախներն ու մսուր-մանկապարտեզները: Գործում են 32 միջնակարգ, 6 ութամյա, 19 կոնսուլտացիոն կետով երեկոյան հեռակա միջնակարգ, մարզական դպրոցներ, պատանի տեխնիկների կայան ու պիոներտուն: Սովորողների թիվը հասնում է 13.889 հոգու:

Անող սերնդի կրթության ու դաստիարակության գործը հատկապես բարելավվել է դպրոցի վերաբերյալ ռեֆորմից հետո: Ամենուրեք գործում են անհրաժեշտ սարքավորումներով ու դիդակտիկ պարագաներով կահավորված ուսումնական կաբինետներ, արհեստանոցներ, բոլոր դպրոցներն ունեն ուսումնափորձարարական հողամասեր: Նրանց համար ամեն տարի ձեռք են բերվում մեծ քանակությամբ գույք ու սարքավորումներ: Շրջանի 30 դպրոցներում տեղակայվել են արդյունավետ ուսուցմանը նպաստող տեխնիկական զանազան միջոցներ: Վերջին երկու տարում է ստեղծվել մաթեմատիկայի, քիմիայի և կենսաբանության կաբինետային համակարգերի 70 տոկոսը:

Զգալի են հաջողությունները սովորողների աշխատանքային դաստիարակության և մասնագիտական կողմնորոշման ասպարեզում: Նկատելիորեն հարստացվել է ուսումնական արհեստանոցների նյութական բազան. 80 արհեստանոցներում տեղադրվել են հաստոցներ, դազգահներ, մեքենաներ ու էլեկտրասարքավորումներ: Դըպրոցներին հատկացվել է 30 հեկտար հողատարածություն, որտեղ ցածր և միջին դասարանների սովորողները գյուղատնտեսական-փորձարարական աշխատանքներ են կատարում: Իսկ բարձրդասարանցիների մասնագիտական կողմնորոշման նպատակով Գետաշեն գյուղում 1982 թվականին բացվել է բազային ուսումնաարտադրական կոմբինատ, որտեղ ամեն տարի գյուղական դպրոցների ավելի քան 210 աշակերտներ որակավորում են ստանում մի քանի մասնագիտությունից: Տրակտորի, ավտոգործի, գյուղատնտեսական մեքենաների և կարուձևի լավ կահավորված կաբինետներում արդյունավետորեն են կազմակերպվում տեսական ուսուցումն ու գործնական պարապմունքները: Կոմբինատն ունի տրակտորներ, բեռնատար ավտոմեքենաներ, գյուղատնտեսական այլ մեքենաներ ու գործիքներ:

Դպրոցական գործի ձեռքբերումներից են երկարօրյա խմբերում ընդգրկված երեխաների հետդասյա ժամանցի կազմակերպումը, հանգստի ու սննդի համար համապատասխան պայմանների ստեղծումը: Անցած ուսումնական տարում բացվել են նոր երկարօրյա խմբեր, ճաշարաններ: Այժմ շրջանի գյուղական դպրոցների ուսուցիչների 85 տոկոսը և բոլոր մսուր-մանկապարտեզների վարիչներն ունեն բարձրագույն կրթություն: Ամեն տարի մանկավարժական կոլեկտիվները համալրվում են երիտասարդ կադրերով: Հատկանշական է, որ ուսուցիչների զգալի մասը տեղացի է, նույն դպրոցի նախկին շրջանավարտ:

Այսօր շրջանի դպրոցների կուսկազմակերպությունների մանկավարժական կոլեկտիվների համար գործողության ուղեցույց է ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան (1985 թ.) պլենումի այն պահանջը, որ պետք է բովանդակալից կերպով մոտենալ դպրոցի ռեֆորմի առաջադրած խնդիրներին և արմատապես բարելավել աճող սերնդի ուսուցման և դաստիարակության որակը, հանրօգուտ աշխատանքի համար նրանց նախապատրաստումը:

Ուսումնադաստիարակչական աշխատանքի հաջողությունների և սոցիալիստա-



կան մրցությունում հաղթող ճանաչվելու համար շրջանային ժողկրթության բաժինը 1982—83 ուստարում պարգևատրվել է ՍՍՀՄ լուսավորության մինիստրության ու ճյուղային արհմիության Կենտկոմի փոխանցիկ դրոշով և դրամական մրցանակով:

* * *

Արմատական տեղաշարժեր կան մշակութային կյանքում, որից զուրկ է եղել անապատը: Իսկ այժմ շրջանի գյուղերում ու ավաններում գործում են 24 կուլտուրայի տուն, ութ ակումբ, 50 գրադարան: Այլ խոսքով, յուրաքանչյուր բնակավայր ունի կուլտուր-լուսավորական ոչ պակաս երկու հիմնարկություն: Գյուղական բնակչության սպասարկում են նաև շրջանային կուլտուրայի տունը՝ իր մի քանի ինքնագործ խմբերով ու ժողովրդական թատրոնով, ավտոակումբը, գրադարանը, Զարթոնքի դիսկոակումբը: Ընթացիկ հնգամյակում շահագործման հանձնվեցին Այգեշատի, Նոր Արմավիրի, Զարթոնքի կուլտուրայի տները, Մեծամոր ավանի երաժըշտական դպրոցը: Ի դեպ, երաժշտական դպրոցներ ունեն նաև Արմավիր գյուղն ու Ձերժինսկու անվան սովխոզի ավանը: Այս տարվա սկզբներին գործել սկսեցին տիկնիկային թատրոնն ու Զարթոնք գյուղի կուլտուրայի տան քրդական երգի-պարի անսամբլը: Այժմ գյուղական կուլտուրայի տներում ու ակումբներում գործում են պարային 25, թատերական՝ 13, ժողովրդական և վոկալ գործիքների՝ 5-ական ինքնագործ խմբեր, 5 փողային նվագախումբ, 4 երգչախումբ և այլն: Գեղարվեստական ինքնագործունեության 80 խմբակներում ընդգրկված են կոլտնտեսային ու սովխոզային արտադրության 1.500 առաջավոր երիտասարդներ: Ավանդույթ է դարձել կուլտուրայի օջախներում երաժշտական հետաքրքրական հանդիպումների, մեծարման երեկոների, Վ. Ի. Լենինի ծննդյան օրվան նվիրված «Ապրիլյան ղողանջներ» համերգ-ողջույնի, հաշվետու փոխադարձ համերգ-ստուգատեսների անցկացումը: Լայնորեն արմատավորվել են սոցիալիստական նոր ծիսակատարությունները (Վարդավառ, Ծաղկի տոն, Երգի տոն, Երգի ու բերքի տոն, Հովվի օր), որոնց ընթացքում իրենց շնորհքն ու վարպետությունն են ցուցադրում շրջանային կուլտուրայի տան և գյուղական ինքնագործ խմբերը:

Շրջանի գեղարվեստական ինքնագործունեության մի շարք խմբեր իրենց վարպետությամբ լայն համարում ունեն: Այսպես, շրջանային կուլտուրայի տան թատերական, պարի խմբերը, կոլտնտեսաշխատողների քառաձայն երգչախումբը, Ջանֆիդայի կուլտուրայի տան պարի անսամբլը արժանացել են ժողովրդականի պատվավոր կոչման: Գյուղական ինքնագործ խմբերն ակտիվորեն մասնակցեցին Հայրենական մեծ պատերազմի հաղթանակի 40-ամյակին նվիրված գեղարվեստական ինքնագործունեության հանրապետական ստուգատեսին: Առաջին կարգի դիպլոմով ու պատվոգրով պարգևատրվեց շրջանային կուլտուրայի տան ժողովրդական թատրոնը: Պարգևների արժանացան նաև Արմավիրի, Սովետականի, Ջանֆիդայի թատերական, Շենավանի, Ջանֆիդայի, Այգեշատի, Հոկտեմբերի, Նոր Արմավիրի, Նալբանդյանի պարային խմբերը: Հանրապետական ստուգատեսի առաջին կարգի մըրցանակ և դրամական պարգև ստացավ նաև ավտոակումբը: Օգոստոս ամսին շրջանային կուլտուրայի տան պարի անսամբլը մասնակցեց Անգլիայում կազմակերպված ֆոլկլորային փեստիվալին:

Ազգաբնակչության գաղափարաքաղաքական, հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակության լավագույն օջախ է Սարդարապատի հուշահամալիրում գտնվող ազգագրության պետական թանգարանը: Թանգարանի դիրեկցիան և շրջսովետի կուլտուրայի բաժինը համատեղ մշակել և իրականացնում են բազմաբնույթ կուլտուրական միջոցառումներ:

Ասածն, իհարկե, շրջանի գյուղական բնակավայրերում տարվող կուլտուր-մշակութային աշխատանքի ոչ լրիվ պատկերն է, բոլորը չես կարող թվարկել: Միայն հարկ է մեկ-երկու խոսք ասել գյուղական երիտասարդության ազատ ժամանակի խելամիտ օգտագործմանն առնչվող ևս մեկ հարցի մասին: Դա ֆիզկուլտուրան և սպորտն է: Ֆիզկուլտուրայի 90 կազմակերպություններում այսօր ընդգրկված է ավելի քան 23 հազար մարդ: Մոտ 50 մարզիկներ ՍՍՀՄ սպորտային ընկերությունների և հանրապետության, երկուսը՝ ՍՍՀՄ հավաքական թիմերի անդամներ են: Ավանդաբար անցկացվում են շրջանային սպարտակիադաներ, առաջնության մրցումներ: Շոշափելի գործ է արվել մարզիկների որակավորման բարձրացման ասպարեզում:

# ԴԻԱԼԵԿՏԻԿԱԿԱՆ ՄԱՏԵՐԻԱԼԻԶՄԸ՝ ԳԻՏԱԿԱՆ ԳԻՏԵԼԻՔԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՄԵԹՈԴԱԲԱՆԱԿԱՆ ՀԻՄՔ

Ա. ՀԱԿՈԲՅԱՆ

ԳԻՏԱԿԱՆ ԳԻՏԵԼԻՔԻ տեսական վերակառուցման պրոբլեմը դարձել է ժամանակակից փիլիսոփայական-մեթոդաբանական հետազոտությունների կարևորագույն ուղղություններից մեկը: Դա պայմանավորված է գիտատեխնիկական հեղափոխության շնորհիվ գիտական գիտելիքի ողջ համակարգում կատարվող որակական փոփոխություններով, որոնց փիլիսոփայական իմաստավորումը մեր օրերի հրատապ խնդիրներից է: Այդպիսի վերլուծությունը նոր ազդակ կծառայի գիտության զարգացման միտումների կանխատեսման, արտադրության տեխնոլոգիական վերակառուցման ու արդիականացման համար: Անդրադառնալով այդ պրոբլեմին, ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումը շեշտեց. «Անհրաժեշտ է վճռական շրջադարձ կատարել դեպի այն ռեալ, պրակտիկ խնդիրները, որ կյանքը դնում է մեր հասարակության առջև: Հասարակական գիտությունները նույն չափով, ինչ և բնական գիտությունները, պետք է դառնան կուսակցության և ամբողջ ժողովրդի արդյունավետ օգնականները այդ խնդիրների լուծման գործում»:

Կուսակցական այս դիրքորոշումը վճռորոշ նշանակություն ունի տեսություն-պրակտիկա համակարգի համակողմանի վերլուծության ու գործառման արդյունավետության բարձրացման համար:

Խոսելով գիտական գիտելիքի տեսական վերակառուցման դիալեկտիկամատերիալիստական սկզբունքների մասին, անհրաժեշտ է առանձնահատուկ նշել Վ. Ի. Լենինի պատմական ծառայությունները: Դարասկզբին, վերլուծելով ֆիզիկայում ծագած ճգնաժամային իրադրությունը, Լենինը նկատել է. «Ժամանակակից ֆիզիկայի ճգնաժամի էությունն այն է, որ հին օրենքներն ու հիմնական սկզբունքները հեղաբեկվում են, գիտակցությունից դուրս գտնվող օբյեկտիվ ռեալությունը մի կողմ է նետվում, այսինքն՝ մատերիալիզմը փոխարինվում է իդեալիզմով և ագնոստիցիզմով... նոր ֆիզիկան մոլորվել-ընկել է իդեալիզմի մեջ գլխավորապես հենց այն պատճառով, որ ֆիզիկոսները դիալեկտիկան չգիտեին» (ԵԼԺ, հ. 18, էջ 335—336, 341): Հիմնավորելով բնագիտության և դիալեկտիկական մատերիալիզմի միջև դաշինքի հաստատման անհրաժեշտությունը, Վ. Ի. Լենինը շեշտում էր այն միտքը, որ բնագիտության հեղաշրջումից առաջացած բուրժուական աշխարհայեցողության վերականգնման դեմ մղվող «պայքարին դիմանալու և այն լիակատար հաջողությամբ մինչև վերջը հասցնելու համար բնագետը պետք է լինի ժամանակակից մատերիալիստ, գիտակից կողմնակից այն մատերիալիզմի, որ ներկայացրել է Մարքսը, այսինքն՝ պետք է դիալեկտիկ մատերիալիստ լինի» (ԵԼԺ, հ. 45, էջ 38): Լենինյան այս դրույթն իր մեթոդաբանական նշանակությունն ու արժեքը



պահպանել է նաև մեր օրերում, երբ արդի գիտության կառուցվածքում տեղի են ունենում խոր, արմատական փոփոխություններ:

Հանրահայտ է, որ մատերիալիստական դիալեկտիկայի՝ որպես զարգացման ընդհանուր տեսության, օրենքների ու սկզբունքների կիրառումը գիտական գիտելիքի աճի մեխանիզմների բացահայտման նպատակով, պահանջում է դրանց ըստ ամենայնի կոնկրետացում և ճշգրտում: Պատահական չէ, որ գիտական գիտելիքի տեսական վերակառուցման խնդիրներին սերտորեն առնչվող բոլոր տրամաբանական-փիլիսոփայական հետազոտություններին, որպես կանոն, նախորդում է գիտական որոնումների ընդհանուր ստրատեգիան որոշող աշխարհայացքային և գաղափարախոսական դիրքորոշումների պարզաբանումը: Նախնական այդպիսի հետազոտական աշխատանքի անհրաժեշտությունը հատկապես հրատապ է մեր օրերում՝ կապված գիտելիքի տեսական կառուցվածքների վերլուծության բնագավառում կուտակված գիտական ահռելի նյութի արժեքավորման հետ:

Գիտության հասկացությունների ապարատի զարգացման արդի մեթոդաբանական ուսումնասիրությունների կենտրոնում են գիտելիքի աճի հիմնորոշ դետերմինանտների, այդ աճի գործում սոցիոմշակութային և տրամաբանական գործոնների տեղի ու դերի պարզաբանման հարցերը:

Այդ առումով հետաքրքրական է նշել, որ արևմտյան փիլիսոփայական-մեթոդաբանական գրականության մեջ հստակորեն առանձնանում են հիմնական երկու գիտահետազոտական դիրքորոշումներ. գիտական գիտելիքի աճի «ներքին» (ներտրամաբանական, ճանաչողական) և «արտաքին», այսինքն՝ սոցիոմշակութային, հոգեբանական նախադրյալներն ու ասպեկտներն ուսումնասիրող մեթոդաբանական ուղղություններ, որոնցից յուրաքանչյուրին, առանձին-առանձին վերցրած, ներհատուկ են որոշակիորեն արտահայտված միակողմանիություն և սահմանափակություն: Ի հակակշիռ այս ուղղությունների, գիտության մարքսիստական մեթոդաբանության դիրքերից իրականացվող հետազոտական ծրագրերին ներհատուկ է գիտական գիտելիքի գործառման ու զարգացման ներքին ու արտաքին գործոնների, նրանց փոխգործողության ու փոխպայմանավորվածության դիալեկտիկական միասնության խոր ըմբռնումն ու իմաստավորումը: Ակնհայտ է, որ մատերիալիստական դիալեկտիկան՝ որպես գիտելիքի ձևավորման գործառման ու զարգացման հիմնորոշ օրինաչափությունների բացահայտման համարժեք մեթոդաբանություն, տալիս է գիտելիքի աճի ինտենսիվ և էքստենսիվ պրոցեսների, բացասման ու ժառանգորդման մեխանիզմների միակ գիտական վերլուծությունն ու իմացաբանական գնահատականը:

Գիտական գիտելիքի աճի մեխանիզմների, գիտության զարգացման օբյեկտիվ օրինաչափությունների բացահայտմանը կողմնորոշված տարբեր տեսական մոդելների կառուցման պատմությունը, միաժամանակ, երկու հակադիր՝ գիտական մատերիալիստական և իդեալիստական, աշխարհայացքների միջև ծավալված անզիջում պայքարի պատմությունն է: Գիտական գիտելիքի հետևողական զարգացումը, մարդկային ճանաչողության սահմանների որակական ընդլայնումը նպաստեցին գիտելիքի զարգացման ներքին ու արտաքին գործոնների փոխմիասնության խոր ըմբռնմանը: Այդ ֆոնի վրա գիտելիքների աճի և դրանց հաջորդական, անընդհատ ընդհանրացման (կուտակումային) գաղափարից ելնող հնուց եկող գիտության իդեալիստական ու մետաֆիզիկական կոնցեպցիաները ճանաչվեցին անբավարար և ենթարկվեցին հիմնովին ու համակողմանի քննադատության: Ընդսմին, այդ քննադատությունը տարվում էր իրար հակադիր՝ դիալեկտիկամատերիալիստական և իդեալիստական դիրքերից:

Դիալեկտիկամատերիալիստական վերլուծությունն ի հայտ բերեց այն ակնհայտ փաստը, որ փորձնական տվյալների պարզ կուտակումը ինքնաբերաբար չի հանգեցնում այնպիսի ընդհանրացումների, որոնք օժտված են տեսական գիտելիքի ստատուսով: Փորձնական հիմքը միարժեք ու միանշանակ կերպով չի կարող կանխորոշել իրեն համապատասխանող տեսական կառույցի բովանդակությունը, և որ, ընդհանուր առմամբ, տվյալ հիմքի նկատմամբ

կարող է զարգացվել տեսական տարբեր սխեմաների անսահմանափակ բազմություն։

Գիտելիքի զարգացման պրոցեսները վերլուծող արդի մեթոդաբանական հետազոտությունների գերակշռող մասը բացահայտ կամ ոչ բացահայտ կերպով ղեկավարվում է գիտական գիտելիքի հիպոթետիկ-դեդուկտիվ մոդելի այս կամ այն տարբերակով։ Այստեղ վճռորոշ նշանակություն է ստանում հիպոթեզից փորձնականորեն ստուգվող հետևությունների անցումը, որն իրականացվում է դեդուկտիվ եղանակով։ Այդպիսի անցումը գիտության մարքսիստական մեթոդաբանության մեջ չի համարվում խիստ ու միանշանակ, քանի որ, ինչպես արդեն վերը նշվեց, ընդհանուր առմամբ, ցանկացած տեսական կառույցի նկատմամբ կարելի է ունենալ էմպիրիկ մեկնությունների անսահմանափակ տարբերակներ։ Այդպիսի էմպիրիկ մեկնությունների ձևակերպումը տեսության ծավալման պրոցեսի անկապտելի մասն է։ Միաժամանակ, ինքնին հասկանալի է, որ արժեքային և այլ նկատառումներով չամրապնդված միայն տրամաբանական դեդուկցիան բավարար չէ որոշակի մեկնության համար։ Այդ իսկ պատճառով հիպոթեզից էմպիրիկորեն ստուգվող հետևություններին անցման պրոցեսը ներառում է, պատկերավոր ասած «ազատության այնպիսի աստիճաններ», որոնք արձանագրվում են ոչ թե բուն իսկ տրամաբանական, այլ էապես տարբեր ուրիշ միջոցներով։ Այս հանգամանքն է՛լ ավելի է կարևորվում, երբ խոսքը վերաբերում է աշխարհի պատկերի մեջ որոշակի փոփոխություններ ներմուծող նոր հիմնադրույթային հասկացութային կառուցվածքների մշակման մասին։ Նմանատիպ կառուցվածքները ենթարկվում են գիտականության կարևորագույն չափանիշներից մեկին՝ էմպիրիկ ստուգման չափանիշին։ Այս մեթոդաբանական դրույթն իրագործվում է գիտական հետազոտության ընթացքում՝ որպես ընդհանուր պահանջ ոչ միայն որոշելով այդ հետազոտության ընդհանուր ուղղվածությունը, այլ տալով կոնկրետ պատկերացում այն գիտափորձերի բնույթի մասին, որոնց շնորհիվ կամ հիմնավորվում, կամ հերքվում է տվյալ տեսական դրույթը։

Գիտելիքի հասկացութային կառուցվածքների մշակման և զարգացման պրոցեսների դիալեկտիկամատերիալիստական ուսումնասիրությունները ցույց տվեցին արտատրամաբանական այնպիսի կարևորագույն կարգավորիչների դերն ու նշանակությունը, ինչպիսին են գիտելիքի արժեքային պարադիգմային (հարացուցային) դետերմինանտները։ Հենց այդպիսի, եթե կարելի է ասել, «ապրիորի հիմնադրույթների» օգնությամբ է իրականացվում ճանաչողական գործունեության սոցիոմշակութային դետերմինավորումը, որոշվում գիտական հետազոտության ընդհանուր ստրատեգիան։

Վերջին տարիներին արևմտյան գրականության մեջ գիտական գիտելիքի գործառման ու զարգացման տրամաբանական-մեթոդաբանական վերլուծության ոլորտի ընդլայնումը հանգեցրեց նրան, որ սոցիոմշակութային գործոնները ներգրավվեցին հետազոտական քննարկումների այդ շրջանակներում։ Միաժամանակ հարկ է նշել, որ այդ կարգի հետազոտությունները չեն կարող ապահովել գիտական գիտելիքի գործառման ու զարգացման օրինաչափությունների բացահայտման ամբողջական ու համարժեք պատկերը, քանի որ ելնում են ոչ գիտական, իդեալիստական դիրքորոշումներից։ Իդեալիստական աշխարհայացքի վրա հիմնված նմանատիպ հետազոտական ծրագիրն անկարող է ճշմարտացիորեն պատկերել ու բացատրել գիտելիքների տեսական կառուցվածքների կազմավորման ու զարգացման բարդ ու հակասական պրոցեսը։ Այս առումով հասկանալի է, որ ինքնին վերցրած ո՛չ գիտական հայտնագործության տրամաբանության, ո՛չ գիտության պատմության վերակառուցումն՝ առանց փոփոխականության ու կայունության, հնի ու նորի, քանակական աճի ու որակական փոփոխությունների, ժառանգորդման մեխանիզմների դիալեկտիկամատերիալիստական վերլուծության՝ անհնար է գիտականորեն ճիշտ բացատրել։ Այս մեթոդաբանական ճշմարիտ դիրքորոշումն է արտահայտված Վ. Ի. Լենինի հետևյալ խոսքերում. «Հարցն այն չէ, թե կա՞ արդյոք շարժում, այլ այն, թե շարժումն ինչպե՛ս պետք է արտահայտել հասկացությունների տրամաբանության մեջ» (ԵԼԺ, հ. 29, էջ 281)։



Մեթոդաբանական այս արժեքավոր միտքն էապես վերաբերում է նաև գիտելիքի՝ հասկացությունների միջոցով արտահայտման պրոբլեմին, որը հնարավորություն է ընձեռում գիտելիքի միասնականացված տեսական կառուցվածքների կազմավորման մեխանիզմները, գիտական մի առարկայից մյուսը տեսական հասկացությունների ներթափանցման, արմատավորման եղանակներն ու ուղիները, գիտելիքի հասկացութային հիմքերի ձևավորման վրա ներազդող հոգեբանական ու սոցիոմշակութային գործոնների փոխազդեցության պրոցեսը ներկայացնել որպես բարդ ու հակասական դիալեկտիկական ամբողջություն։ Այսպիսի մոտեցումը հնարավոր է միայն մարքսիստական դիալեկտիկայի՝ որպես զարգացման ընդհանուր տեսության, շրջանակներում։ Այն ժամանակ, երբ դիալեկտիկական մատերիալիզմը գիտական գիտելիքի գործառման ու զարգացման օրինաչափություններն ուսումնասիրում էր միասնական, համակարգային մոտեցման տեսանկյունից, գիտության իդեալիստական մեթոդաբանությունը, անկարող լինելով հիմնվել մարքս-լենինյան դիալեկտիկայի վրա, անխուսափելիորեն տրոհվեց բազմաթիվ, հաճախ հակադիր ու մրցակցող դպրոցների, որոնցից յուրաքանչյուրը մետաֆիզիկորեն ուռճացնում էր գիտելիքի զարգացման ռեալ պրոցեսի այս կամ այն կողմը՝ միմյանց հակադրելով գիտելիքի դինամիկայի պատմականորեն տարբեր փուլերը կամ ժխտելով այս կամ այն օբյեկտիվ փուլը։

Հայտնի է, որ նեոպոզիտիվիզմի մետաֆիզիկական ուսմունքները հակասության մեջ մտան գիտական գիտելիքի զարգացման ողջ ընթացքի հետ, որը կոնկրետ արտահայտվեց տրամաբանական ապարատի և հասկացութային կառուցվածքի արմատական փոփոխությունների մեջ։ Նեոպոզիտիվիզմը հետևվողական ու փաստարկված քննադատության ենթարկվեց ոչ միայն մարքսիստ հետազոտողների, այլև գիտության բազմաթիվ բուրժուական մեթոդաբանների կողմից՝ նշանավորելով մի նոր փուլ գիտելիքի զարգացման պրոբլեմի մշակման ասպարեզում։ Այդ փուլի համար խիստ խորհրդանշական է գիտության տրամաբանության և մեթոդաբանության նեոպոզիտիվիստական կոնցեպցիայի ճգնաժամի խոր գիտակցումը՝ ինչպես նեոպոզիտիվիզմի տրամաբանական (տրամաբանական էմպիրիզմ), այնպես էլ լեզվաբանական (լեզվաբանական վերլուծության փիլիսոփայություն) տարբերակներում։

Գիտության տրամաբանության և մեթոդաբանության պրոբլեմների ետպոզիտիվիստական ուսումնասիրությունների բնույթն ու նպատակները մեծապես պայմանավորեցին Կ. Պոպերի և նրա հետևորդների գործունեության սահմանները, որոնցում մեծ տեղ էր հատկացվում պատմականության սկզբունքի իդեալիստական մեկնաբանություններին։ Այս իմաստով կարևորվում են Թ. Կունի, Պ. Ֆեյերաբենդի, Ի. Լակատոշի, Ջ. Ագասիի, Ս. Թուլմինի և այլոց հետազոտությունները (տե՛ս K. R. Popper, The Logic of scientific discovery, N. Y., 1959 և այլն)։

Հանդես գալով ընդդեմ գիտության նեոպոզիտիվիստական ուսմունքի հիմնական սկզբունքների, նշված հետազոտողներից յուրաքանչյուրը ձգտում էր հիմնավորել գիտելիքի կուտակումային մոդելին ներհատուկ թերություններից զերծ, գիտության հասկացութային կառուցվածքների զարգացման դինամիկան առավել համարժեք կերպով արտացոլող այլ ընտրական մոտեցման հնարավորությունը։

Այս առումով ծրագրային նշանակություն ստացավ Կ. Պոպերի **Ենթադրություններ և հերքումներ** (K. R. Popper, Conjectures and Refutations. The growth of scienfific Knowledge, London, Routledge and Paul, 1969) և Թ. Կունի **Գիտական հեղափոխությունների կառուցվածքը** (Т. Кун. Структура научных революций, М., «Прогресс», 1977) գրքերը։

Կ. Պոպերը, ըստ ամենայնի հաշվի առնելով երևույթների օբյեկտիվ դիալեկտիկան, հետազոտողների ուշադրությունը բևեռում է այն գիտափորձերի վրա, որոնք հակասում են ընդունված, կայունացված լեզվական հիմնահենքին։ Միաժամանակ հարկ է նկատել, որ Կ. Պոպերը հետևողական չէ իր դիրքորոշման մեջ. մետաֆիզիկորեն մեկնաբանելով բացասման դերը ճանաչողության պրոցեսում, նա դրանով իսկ անտեսում է հակադրությունների

կայունի ու փոփոխականի, բացարձակի ու հարաբերականի, սուբյեկտիվի և օբյեկտիվի փոխկապակցությունները։ Այդ փոխկապակցությունների գիտականորեն միակ սպառիչ ու ծավալուն ուսումնասիրությունը հնարավոր է միայն մարքսիզմ-լենինիզմի շրջանակներում։ Մարքսիստական իմացաբանությունը գիտելիքի տեսական կառույցների ճշմարտացիության համապարփակ չափանիշը համարում է մարդկության հասարակական-արտադրական պրակտիկան։ Ինչ վերաբերում է գիտելիքի արտափորձնական չափանիշներին, ապա դրանք դիտվում են որպես օժանդակ միջոցներ։ Մարքսիզմին խորապես խորթ է ճանաչողության բարդ ու հակասական պրոցեսի գռեհիկ պարզունականացման, գիտելիքի այս կամ այն պատմական համակարգի բացարձականացման միտումը։

Այս մեթոդաբանական դիրքորոշումներից ելնելով՝ մարքսիստական մեթոդաբանությանը հաջողվեց բացահայտել ու մանրամասնորեն փաստարկել բացարձակ ճշմարիտ տեսությունների գոյության անհնարինության դրույթը, գիտության առարկայական տիրույթի սահմանների, միայն այդ սահմանների շրջանակներում գործառող օրենքների, ուսումնասիրվող օբյեկտների այս կամ այն տիրույթի հետազոտման գործում առկա արգելքների կամ սահմանափակումների ողջ կարևորությունը։ Մարքսիստ փիլիսոփաների գիտահետազոտական հետաքրքրությունների կենտրոնում է գտնվում նաև սուբյեկտի բուն իսկ ճանաչողական գործունեությունը՝ իր բազմաշերտ դրսևորումներով հանդերձ։ Փիլիսոփայական և գիտական ռեֆլեքսիան հանգեցնում է ճանաչողական գործունեության այս կամ այն մեթոդի կիրառելիության սահմանների, պրոցեդուրաների ճշգրտմանը, նպաստում է փիլիսոփայության լեզվից սուբյեկտիվիստական-մարդակերպ (անտրոպոմորֆ) տարրերի հեռացմանը, որոնք աղավաղում են ճանաչողության իրական պրոցեսի վերլուծության արդյունքները։

Այսպիսով, Վ. Ի. Լենինի դիտողությունն այն մասին, որ դիալեկտիկան «...անկասկած, իր մեջ պարունակում է բացասման տարր և այն էլ որպես իր կարևորագույն տարրը» (ԵԼԺ, հ. 29, էջ 253), որ «...(օբյեկտիվ) դիալեկտիկայի մեջ հարաբերական (ռելյատիվ) է նաև ռելյատիվի և բացարձակի տարբերությունը» (նույն տեղը, էջ 389), ըստ էության, նշանակում է, որ դիալեկտիկան ամենևին էլ չի հանգում և չի կարող հանգել ռելյատիվիզմին։ Այս դրույթը մեթոդաբանական կարևոր նշանակություն ունի գիտելիքի տարբեր համակարգերի պատմական հերթափոխման ու զարգացման օրինաչափությունների վերլուծության գործում։

---



# ՈԳԵՇՆՉՄԱՆ ԱՆՍՊԱՌ ԱՂԲՅՈՒՐ

Մեր երկրի կյանքում բացառիկ բարդ ու բեկումնային այս շրջանում կոմունիստական կուսակցությունը մշակում է իր ստրատեգիական կուրսը, որի նպատակը երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու ուղիով սովետական հասարակության հետագա վիթխարի առաջընթացի ապահովումն է։

Համաժողովրդական քննարկման դրված ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրությի, ՍՄԿԿ կանոնադրության փոփոխությունների և ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների նախագծերն անսահման ոգևորությամբ են համակել նաև մեր՝ Թալինի շրջանի կոմունիստներին, ամբողջ աշխատավորությանը։ Եվ դա միանգամայն բնական է։ Ընթերցելով պատմական այդ փաստաթղթերը՝ կրկին ու կրկին համոզվում ես, որ դրանք տոգորված են ժողովրդի շահերի, մեր ապագայի, աշխարհի խաղաղության, մարդկության ճակատագրի նկատմամբ կոմունիստական կուսակցության խոր հոգատարությամբ։

Ամենուրեք՝ սկզբնական կուսակցական կազմակերպություններում, աշխատավորական կոլեկտիվներում անկեղծ, անկաշկանդ մթնոլորտում մարդիկ քննարկում են այդ փաստաթղթերը, հայտնում իրենց նկատառումները, հանդես գալիս ուշագրավ առաջարկություններով։ Արագածի այգեգործական սովխոզի սկզբնական կուսկազմակերպությունում այդ փաստաթղթերը քննարկելիս սովխոզի դիրեկտոր, սոցիալիստական աշխատանքի հերոս Սարգիս Խանոյանը, նկատի ունենալով ժողովներն ու խորհրդակցությունները հնարավորին չափ սահմանափակելու, ջանքերն ավելի շատ կենդանի գործի վրա կենտրոնացնելու կուսակցության պահանջը, առաջարկեց շրջկոմի պլենումները հրավիրել ոչ թե երեք, այլ չորս ամիսը մեկ։

ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության «Կուսակցության սոցիալական քաղաքականությունը» բաժնում ասվում է. «Կուսակցությունը առանձնահատուկ նշանակություն է տալիս աշխատանքի ստեղծագործական բովանդակության և կոլեկտիվիստական բնույթի ուժեղացմանը...»։ Զարինջա գյուղի Ֆրունզեի անվան կոլտնտեսության նախագահ Լևոն Մուրադյանն առաջարկում է այդ նախադասությունը լրացնել «առաջին հերթին աշխատանքի կազմակերպման բրիգադային ձևին» բառերով, որովհետև կուսակցությունը աշխատանքի կազմակերպման կարևոր ձևերից մեկը համարում է բրիգադային եղանակը։

Ինձ, որպես կուսակցական երկարամյա աշխատողի և շրջկոմի առաջին քարտուղարի, պատմական մեծ կարևորության այդ փաստաթղթերը ստեղծագործաբար աշխատելու անսպառ լիցք և ոգևորություն են հաղորդում։ Խորությամբ ուսումնասիրելով ծրագրի նոր խմբագրությունն ու կանոնադրության փոփոխությունները՝ կամենում եմ իմ մի քանի նկատառումներն արտահայտել։ Օրինակ, ես առաջարկում եմ ՍՄԿԿ կանոնադրության նախագծի «Կուսակցության անդամները, նրանց պարտականությունները և իրավունքները» բաժնի 4-րդ կետի «ա» ենթակետը ձևակերպել այսպես. «կուսակցության անդամ ընդունվողները ներկայացնում են երաշխավորագրեր ՍՄԿԿ-ի երեք անդամներից, որոնք ունեն առնվազն հինգ տարվա կուսակցական ստաժ և երաշխավորողներին ճանաչում են միևնույն ձեռնարկությունում, հիմնարկությունում, կազմակերպությունում առնվազն մեկ տարվա համատեղ աշխատանքից»։

Ծրագրի նոր խմբագրության նախագծի «Սոցիալիստական արտադրական հարաբերությունների, կառավարման համակարգի և տնտեսավարման մեթոդների կատարելագործումը» բաժնում ասվում է. «կուսակցության մշտական ուշադրության առարկան սոցիալիստական մրցության զարգացումն է. դա աշխատավորների ստեղծագործության ծավալման կարևորագույն ոլորտ է, անհատի ինքնահաստատման և հասարակական ճանաչման հիմնական եղանակներից մեկը»։ Գտնում եմ, որ նպատակահարմար է այն լրացնել այսպես. «որի համար պատասխանատվություն են կրում կուսակցական, տնտեսական և արհմիութենական ղեկավարները»: Կարծում եմ դա կբարձրացնի հիշյալ կազմակերպությունների պատասխանատվությունը սոցիալիստական մրցությունն իրոք արդյունավետ ձևով կազմակերպելու գործում։

Գոհունակությամբ պետք է նշել, որ մեր շրջանի կոմունիստները, ողջ աշխատավորությունը դեպի հարազատ կուսակցության XXVII համագումարն են ընթանում արժանավայել ձեռքբերումներով։ Պարենային ծրագրի իրականացման համաժողովրդական պայքարում արժանի ավանդ են ներդնում շրջանի անասնապահները։ Նրանք հաջողությամբ նվաճեցին մսի, կաթի, բրդի արտադրության և պետությանը հանձնելու հնգամյա բնագծերը։ Հինգ տարում, նախատեսված 9.597-ի փոխարեն, արտադրվեց 9.951 տոննա միս, 31. 316-ի փոխարեն՝ 32.000 տոննա կաթ։

Ծանրակշիռ է շրջանի խաղողագործների ներդրումը։ Պլանավորված 32.505-ի փոխարեն նրանք հնգամյակում արտադրեցին 41.112 տոննա խաղող։ Ընդ որում եզրափակիչ տարվա արտապլանային արտադրանքը կազմում է 3.580 տոննա։

Անհրաժեշտ հետևություններ անելով ագրոարդյունաբերական արտադրության ինտենսիվացման վերաբերյալ կուսակցության պահանջներից՝ շրջկոմն ու ագրոարդյունաբերական միավորման շրջանային խորհուրդը միջոցառումներ են մշակել նոր յուրացված հողերում մեքենայական ոռոգման ցանց անցկացնելու, այդ տարածություններից տարեկան առնվազն երկու բերք ապահովելու համար։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և Մինիստրների խորհրդի ձեռնարկած միջոցների շնորհիվ ոչ հեռու ապագայում արդեն Թալինի շրջանը 16.000 հեկտար ոռոգելի հողատարածություն կունենա և այն ժամանակ ծանրակշիռ ավանդ կներդնի հանրապետության գյուղատնտեսական մթերքների արտադրության հաշվեկշռում։

Թալինի շրջանի կուսակցական կազմակերպություններն ու աշխատավորական կոլեկտիվները արժանավայել գործերով կդիմավորեն ՍՄԿԿ XXVII համագումարը, կօգտագործեն բոլոր հնարավորություններն ու ռեզերվները տասներկուերորդ հնգամյակի տնտեսական և սոցիալական խնդիրները ևս հաջողությամբ լուծելու համար։

Ս. ՄԱՆՈՒԿՅԱՆ
ՀԿԿ Թալինի շրջկոմի առաջին քարտուղար

# ՀԱՆՈՒՆ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ՏՆՏԵՍԱԳԻՏԱԿԱՆ ՄՏԱԾԵԼԱԿԵՐՊԻ ԵՎ ԳՈՐԾԵԼԱԿԵՐՊԻ

Համաժողովրդական քննարկման ներկայացված նախահամագումարյան փաստաթղթերում իրենց ցայտուն արտահայտությունն են գտել կուսակցության քաղաքական գծի արմատական հարցերը, նրա մտքի, խոսքի և գործի միասնությունը։ Դրա հետ մեկտեղ քննադատաբար վերաիմաստավորվել են այն ձևակերպումները, որոնք ժամանակի քննությանը չեն դիմացել։

Կառուցվածքային խոր բարեփոխությունները և սոցիալ-տնտեսական զարգացման նոր պայմանները, ծառացող խնդիրների մասշտաբայնությունն ու բարդությունը հրամայաբար պահանջում են մշակել ժամանակակից տնտեսագիտական մտածողություն։ Այն անհրաժեշտ է ոչ միայն տնտեսագետների և



ժողովրդական տնտեսության կառավարմամբ զբաղվող անձանց նեղ շրջանին։ Որքան ակտիվորեն է ծավալվում կառավարման հետագա դեմոկրատացման պրոցեսը, այնքան հրատապ է դառնում ժամանակակից տնտեսագիտական մտածողության՝ որպես հասարակական գիտակցության տարրի, ձևավորման խնդիրը։ Ժամանակակից տնտեսագիտական մտածողություն կարող է համարվել միայն այնպիսին, որը գիտական է, հաշվի է առնում արդի իրողությունները, տնտեսավարման փոփոխված պայմանները։

Սոցիալիստական հասարակության զարգացման ու հասունացման հետ զգալիորեն աճում են պահանջները տնտեսագիտական մտածողության (ինչպես և ամբողջովին վերցված հասարակական գիտակցության) գիտականության նկատմամբ։ Դա պայմանավորված է, վերջին հաշվով, հասարակական առաջընթացի խնդիրների բարդացմամբ։ Լենինը պահանջում էր անպայման առաջ ընթանալ, հասնել առավելագույնին, «ավելի հեշտ խնդիրներից անցնենք ավելի դժվարներին։ Առանց դրան ոչ մի առաջադիմություն ընդհանրապես հնարավոր չէ, անհնարին է նաև առաջադիմությունը սոցիալիստական շինարարության մեջ» (ԵԼԺ, հ. 37, էջ 238)։ Լուծվող խնդիրների բարդացման արդյունքը հասարակական գիտակցության բոլոր կողմերի և, առաջին հերթին, տնտեսագիտական մտածողության գիտականության նկատմամբ ներկայացվող պահանջների բարձրացումն է։ Տնտեսագիտական մտածողության մեջ արդի իրողությունների արտացոլման անհրաժեշտությունը պայմանավորված է ամենից առաջ էկոնոմիկայում կատարվող խոր փոփոխություններով, վերարտադրության ինտենսիվ ձևերին անցնելով։ Մեր պլանները, տնտեսական պրակտիկան պետք է հիմնավորված լինեն ոչ միայն տնտեսապես, այլև քաղաքատնտեսության պահանջներով։ Դրանք պետք է հենվեն սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման օբյեկտիվ օրենքների իմացության և կիրառման վրա։

Սոցիալիզմի արդի փուլում հասարակական օբյեկտիվ պահանջմունք են դարձել ինտենսիվ տնտեսավարմանն անցնելը, արտադրության արդյունավետության շեշտակի բարձրացումը։ Կարևոր է այդ պահանջմունքի հենց քաղաքատնտեսական էությունը։ Եթե այն մնա չըմբռնված, ապա, ինչպես ցույց է տալիս փորձը, նույնիսկ տեսականորեն խոր և ճիշտ գաղափարը մեծապես կկորցնի իր մոբիլիզացնող, ուղղություն տվող նշանակությունը պրակտիկայի համար։

Բանն այն է, որ իներցիայի ուժը հարատևում է, և, հետևաբար, տնտեսագիտական մտածողության մեջ դժվարությամբ են ներդրվում ժամանակակից պահանջները, կուսակցության մշակած դիրքորոշումները։ Մինչդեռ արդի տնտեսագիտական մտածողության մեջ պետք է գերակշռի վերլուծական, չերտավորված մոտեցումը։ Լենինը սովորեցնում էր՝ ավելի շատ էկոնոմիկա, բայց էկոնոմիկա ոչ թե «ընդհանուր» դատողությունների, այլ նոր կյանքի իսկական շինարարության փաստերի հավաքման, մանրակրկիտ ստուգման և ուսումնասիրման իմաստով։ «Գործունյա տնտեսագետը,— ասում էր նա,— դատարկ թեզիսների փոխարեն, հիմնովին կուսումնասիրի փաստերը, թվերը, տվյալները, կվերլուծի մեր սեփական պրակտիկ փորձը և կասի՝ սխալը այսինչ տեղում է, այն պետք է ուղղել այսինչ կերպ։ Գործունյա ադմինիստրատորը, նման ուսումնասիրության հիման վրա, կառաջարկի կամ ինքը կկատարի անձանց տեղափոխություն, հաշվետվության փոփոխություն, ապարատի վերակառուցում և այլն» (ԵԼԺ, հ. 42, էջ 426)։

Մեր օրերում արտադրությունը ղեկավարելու համար պետք է լինել ոչ միայն հիանալի ադմինիստրատոր, այլև առաջնակարգ տնտեսագետ, քանի որ կառավարման տնտեսական մեթոդները և գիտական պլանավորումը իրոք առաջին պլան են մղվել։ Այդ ամենը ուժեղացնում է ժամանակակից տնտեսագիտական մտածողության ձևավորման անհրաժեշտությունը։ Եվ պրոբլեմի էությունը ոչ միայն մասսայական գիտակցության կողմից արդեն ձեռք բերած գիտական ճշմարտությունների յուրացման մեջ է։ Արդի մոտեցումներից շատ բան դեռևս պետք է մշակվի, երկրի սոցիալ-տնտեսական կյանքում տեղի ունեցող նոր երևույթներն ու պրոցեսները պետք է խորությամբ հետազոտվեն։

Այդ խնդիրների լուծման գործում հատուկ պատասխանատվություն է ընկնում տնտեսագիտության և նրա միջուկի՝ քաղաքատնտեսության վրա, որն իր իսկ զարգացմամբ կոչված է բարձրանալու այն պահանջների մակարդակին, որոնք թելադրվում են սոցիալիստական հասարակության արդի պայմաններով:

Ահա թե ինչու, հավանություն տալով նախահամագումարյան փաստաթղթերին, կցանկանայի, որ նրանցում պատշաճ արտացոլում գտնեին ժամանակակից տնտեսագիտական մտածելակերպի և գործելակերպի մշակման խնդիրն ու պահանջը: Ուստի առաջարկում եմ ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության նախագծի երկրորդ մասի երկրորդ բաժնի վերջին ենթաբաժնի այն պարբերությունից հետո, որտեղ խոսվում է աշխատավորների ստեղծագործական նախաձեռնությունը զարգացնելու մասին, ավելացնել մի նոր պարբերություն սովետական մարդկանց ժամանակակից տնտեսագիտական մտածելակերպի և գործելակերպի ակտիվ ձևավորման մասին՝ շարադրելով այն մոտավորապես հետևյալ կերպ.

«ՍՄԿԿ-ն խնդիր է դնում տնտեսագիտական համընդհանուր ուսուցման և տնտեսական կուլտուրայի դաստիարակության միջոցով սովետական մարդկանց մոտ ակտիվորեն ձևավորել դիալեկտիկական տնտեսագիտական գիտակցություն ու մտածողություն, ժամանակակից գործելակերպ, որոնք նպատակամղված լինեն սոցիալիստական նախաձեռնության, ձեռներեցության ու գործարարության դրսևորմանը, պատասխանատվության բարձրացմանը, ժողովրդական բարիքի նկատմամբ խնայողական վերաբերմունքին, լավ կարգավորված կազմակերպչական աշխատանքի հետ տնտեսագիտորեն գրագետ մտածելու կարողության զուգակցմանը, ոչ միայն իր, այլև ուրիշ կոլեկտիվների, ամբողջովին վերցրած հասարակության շահերի նկատմամբ հարգալից, հոգատար վերաբերմունքին, պետական պլանների ու պարտավորությունների անվերապահ կատարմանը, արտադրական, քաղաքական, սոցիալական ու գաղափարախոսական խնդիրների սերտ կապակցմանը: Նոր տնտեսագիտական մտածելակերպն ու գործելակերպը իրենք իրենց չեն գալիս, դրանք մշակվում են լավված աշխատանքով, կապված են գիտելիքների մշտական նորացման, մարդկանց հոգեբանության մեջ կատարվող փոփոխությունների հետ: Գիտելիքների ուժը պրակտիկ փորձի հետ, գաղափարական համոզվածությունը տնտեսագիտական լուսավորության, աշխատավորության ձեռներեցության ու եռանդի հետ միացնելը և՛ տնտեսավարության, և՛ դաստիարակության կարևորագույն խնդիրն է»:

Հակիրճ ձևով այս դրույթները անհրաժեշտ է արտացոլել նաև ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընդգրկող ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների նախագծում:

Ելնելով ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի դրույթներից՝ մենք նպատակահարմար ենք գտնում 14-րդ բաժնի վերջում ավելացնել հետևյալ պարբերությունը. «Ակտիվորեն ձևավորել նոր տիպի, ժամանակակից տնտեսագիտական մտածելակերպ ու գործելակերպ, որոնք նպատակամղված լինեն սոցիալիստական նախաձեռնության, ձեռներեցության ու գործարարության խթանմանը, պատասխանատվության բարձրացմանը, ժողովրդական բարիքի, նյութական, աշխատանքային ու ֆինանսական ռեսուրսների օգտագործման նկատմամբ իսկական հոգատար վերաբերմունքի և տնտեսական կուլտուրայի դաստիարակությանը, դեպի նվազագույն ծախսումներով ժողովրդատնտեսական լավագույն վերջնական արդյունքներ տանող ուղիների ստեղծագործական որոնմանը»:

Հինգերորդ բաժնի առաջին ենթաբաժնի երկրորդ պարբերության մեջ, որտեղ խոսվում է սովետական մարդկանց քաղաքական կուլտուրայի բարձրացման մասին, «բարձրացնեն քաղաքական» բառերից հետո, ճիշտ կլինի ավելացնել «տնտեսական, իրավական, բարոյական, գեղագիտական և էկոլոգիական» բառերը:

Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

Տնտեսական գիտությունների թեկնածու



# ԿՈՄՈՒՆԻՍՏԻ ԱԿՏԻՎՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ

Կուսակցության XXVII համագումարում քննարկվելիք փաստաթղթերը՝ ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրությի, կանոնադրության (առաջարկվող փոփոխություններով) և «ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների» նախագծերը լայն արձագանք են գտել «Հայէլեկտրաշարժիչ» միավորման ձեռնարկությունների կոլեկտիվների և կոմունիստների շրջանում: Ամենուրեք հավանություն են տալիս այդ փաստաթղթերին, ստանձնում լրացուցիչ պարտավորություններ ՍՄԿԿ XXVII համագումարն արժանավայել դիմավորելու համար: Գլխամասային ձեռնարկության՝ էլեկտրատեխնիկական գործարանի կոլեկտիվը, օրինակ, որոշել է համագումարի բացման օրը աշխատել խնայված հումքի և էլեկտրաէներգիայի հաշվին: Իսկ հավաքման № 5 արտադրամասի իմ ղեկավարած բրիգադը խոստացել է կուսակցության մեծ համաժողովի նախօրյակին՝ փետրվարի 24-ին, կատարել 1986 թ. առաջին եռամսյակի առաջադրանքը:

Քննարկման դրված փաստաթղթերը մեծ հետաքրքրություն են առաջացրել մեր՝ կոմունիստներիս շրջանում: Վերջերս մեր արտադրամասի կուսկազմակերպության ժողովում քննարկեցինք ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրությի և կանոնադրության (առաջարկվող փոփոխություններով) նախագծերը: Կոմունիստները մեկ անգամ ևս հավանություն տվեցին այդ փաստաթղթերին և իրենց պատրաստակամությունը հայտնեցին կուսակցության նոր պահանջները պատվով և անվերապահորեն կատարելու համար: Հատկապես առաջ քաշվեցին կոմունիստների ակտիվության բարձրաման և նախաձեռնության զարգացման, արտադրական ցուցանիշների համար կուսկազմակերպության դերի բարձրացման հարցերը: Կոմունիստի կանոնադրական պարտականությունների մեջ մենք խիստ կարևոր ենք համարում այն, որ շեշտվում է նրա դերը ժողովրդական տնտեսության մեջ, ժամանակակից գիտության ու տեխնիկայի նվաճումների ներդրման, արտադրության արդյունավետության բարձրացման ասպարեզում: Մենք դա ըմբռնում ենք այն իմաստով, որ յուրաքանչյուր կոմունիստ հատկապես իր տեղամասում պետք է պայքարի գիտատեխնիկական առաջընթացի արագացման, և, հետևաբար, նաև արտադրանքի որակի բարելավման համար: Ուստի առաջարկում եմ կանոնադրության երկրորդ կետի «բ» ենթակետի «աշխատանքի արտադրողականության անշեղ աճի» բառերից հետո ավելացնել «արտադրանքի որակի բարելավման» բառակապակցությունը:

Ասածս հիմնավորեմ մեր ձեռնարկության կոնկրետ օրինակով: Մեր արտադրանքը (4—Ա սերիայի ասինխրոն էլեկտրաշարժիչներ) ժողովրդատնտեսական շատ կարևոր նշանակություն ունի և լայնորեն օգտագործվում է ամենատարբեր բնագավառներում՝ գյուղատնտեսությունից մինչև ծանր արդյունաբերություն: Առանձին տեսակներ առաքվում են նաև արտասահմանյան տասնյակ երկրներ: Եվ այդ արտադրանքն իր պատրաստման տարբեր փուլերում անցնում է տարբեր մարդկանց ձեռքով: Իսկ այդ մարդկանց մի մասը կոմունիստներ են: Բավական է ինչ-որ օղակում մեկն ու մեկը թերանա, արտադրանքը չի ունենա անհրաժեշտ որակը և չի համապատասխանի նախատեսվող ստանդարտին: Այլ խոսքով, մրցունակ չի լինի միջազգային շուկայում: Իսկ ով, եթե ոչ կոմունիստը պետք է ոչ միայն իր ներդրումն անի բարձրորակ արտադրանք թողարկելու գործում, այլև հետևի, որ մյուս աշխատողները ևս հոգ տանեն այդ մասին: Դրա համար հարկավոր է, որ կոմունիստ բանվորները շահագրգռություն հանդես բերեն նոր տեխնիկայի ներդրման և դրանց արդյունավետ ու բարձր արտադրողական աշխատանքի ապահովման գործում: Այդ նույն կետը վերջանում է «հանդես գալ որպես ամենայն նորի, առաջադիմականի ակտիվ ջատագով» բառակապակցությամբ: Առաջարկում եմ այն

ավարտել «և արմատավորող» բառերով: Չէ՞ որ ջատագով լինելը դեռևս քիչ է, կոմունիստը պետք է նաև իրականացնող լինի:

Վերջին տարիներին երևան են եկել արտադրական և գիտաարտադրական միավորումներ, արմատավորվել են արտադրության կազմակերպման նոր ձևեր ու եղանակներ: Բնականաբար, դրանց համապատասխան պետք է փոփոխություններ կատարվեն նաև կուսակցական աշխատանքում, ճշտվեն կուսկազմակերպությունների իրավասության շրջանակները: Այսպես, եթե միավորման գլխավոր դիրեկտորը պատասխանատու է ենթակա ձեռնարկությունների գործունեության համար, ինչո՞ւ միավորման կուսկոմիտեն չօգտվի նույն իրավունքից այդ ձեռնարկությունների կուսկազմակերպությունների նկատմամբ: Հետևաբար, ցանկալի կլիներ, եթե կանոնադրության մեջ խոսվեր կառավարման նոր պայմաններում գործող կուսկազմակերպությունների, նրանց կոմիտեների կամ բյուրոների դերի ու խնդիրների մասին, որոշվեր միավորման կուսկոմիտեի և ենթակա ձեռնարկությունների կուսկազմակերպությունների փոխհարաբերությունների շրջանակը:

Կանոնադրության նախագծի 9-րդ կետում նշված է, որ զանցանք կատարած կոմունիստը դրա համար պատասխան է տալիս նախ և առաջ սկզբնական կուսակցական կազմակերպության առջև: Դա, ըստ էության, վերաբերում է նաև ղեկավար աշխատողներին, քանի որ բոլորի համար գոյություն ունի մեկ կարգապահություն և, հետևաբար, ճիշտ կլինի, ղեկավար աշխատանքի առաջադրելիս հաշվի առնվի նաև սկզբնական կուսկազմակերպության կարծիքը: Ուստի, առաջարկում եմ կանոնադրության 58-րդ կետում «ակտիվորեն մասնակցում է կուսակցության կադրային քաղաքականության իրականացմանը» բառերից հետո գրվի՝ «տալիս է իր կարծիքը ղեկավար աշխատանքում թեկնածու առաջադրելիս», հատկապես, որ արտադրական կոլեկտիվների վերաբերյալ օրենքում նրանց այդպիսի իրավունք է վերապահվում: Կուսկազմակերպությունը կոլեկտիվի քաղաքական միջուկն է, ինչո՞ւ չօգտվի նույն իրավունքից:

Վ. ԽԱՉԱՏՐՅԱՆ
Երևանի էլեկտրատեխնիկական գործարանի հավաքման № 5 արտադրամասի կուսբյուրոյի քարտուղար, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ

# ԿՈՄՈՒՆԻՍՏԻ ԿՅԱՆՔԻ ՕՐԵՆՔԸ

Ներկայումս մեր տրեստի բոլոր վարչությունների սկզբնական կուսկազմակերպություններում, աշխատավորական ժողովներում գործարար մթնոլորտում քննարկվում են կուսակցության նախահամագումարյան նյութերը: Ջերմորեն պաշտպանելով ՍՄԿԿ ներքին և արտաքին քաղաքականությունը, միահամուռ հավանություն տալով երկրի արագացված առաջընթացն ապահովելու նպատակով իրականացվող պրակտիկ միջոցառումներին՝ մեր բազմամարդ կոլեկտիվը պատրաստակամություն է հայտնում ջանք ու եռանդ չխնայել կուսակցության նախանշած խնդիրները հետևողականորեն լուծելու համար:

Հատկանշական է, որ ամենուրեք քննարկումները սերտորեն կապվում են կոլեկտիվների առջև ծառացած կոնկրետ անելիքների հետ, կուսակցության նոր պահանջների լույսի ներքո բացահայտվում են աշխատանքի թերություններն ու բացերը, նշվում բարձրարտադրողական աշխատանքի ապահովման ուղիները: Մեր կոմունիստները ևս լուրջ հետևություններ են անում դրանցից:

Ծրագրի նոր խմբագրությունում ասված է, որ «էկոնոմիկայի ինտենսիվացման և գիտատեխնիկական առաջընթացի արագացման նպատակով առաջիկայում պետք է էականորեն բարձրացնել շինարարության տեխնիկատնտեսական մակարդակը, շինարարական արտադրությունը դարձնել մի միասնական ինդուստրիալ պրոցես, բարձրացնել նախագծային ու շինարարական աշխատանքների որակը և իջեցնել դրանց արժեքը, կրճատել օբյեկտների կառուցման և արտադրական կարողությունների յուրացման ժամկետները»: Այս պահանջը նաև մեր կոլեկտիվի սրտից է բխում: Գաղտնիք չէ, որ մեր աշխատանքների մի զգալի մասը դանդաղում կամ ձգձգվում է հենց միայն այն պատճառով, որ պատվիրատուները համաչափ չեն մատակարարում պահանջվող սարքավորումներն ու կոմպլեկտավորող մասերը, գլխավոր կապալառուները խախտում են շինարարական պատրաստականության ապահովման գրաֆիկները: Հենց այդպիսի բացթողումների հետևանքով է, որ մեր կոլեկտիվը անցած 11 ամսում զգալիորեն թերակատարել է արդյունաբերական շինարարության իր պայմանագրային պարտավորությունները, և դա այն դեպքում, երբ նույն ժամանակաշրջանում տրեստը մոնտաժային աշխատանքների պլանները չորս տոկոսով գերակատարել է գյուղական շինարարության մինիստրության, «Հայգյունմետշին» տրեստի և այլ կազմակերպությունների օբյեկտներում կատարած աշխատանքների հաշվին:

Ժամանակն է, որ համապատասխան կազմակերպություններն ընդհուպ զբաղվեն շինարարության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումների, նորագույն տեխնոլոգիայի արմատավորման, ոչ մետաղական նյութերի լայն օգտագործման, այսպես կոչված «մանր մեխանիզացիայի» վիճակի արմատական բարելավման հարցերով:

Հասկանալի է, որ ՍՄԿԿ կանոնադրության մեջ կատարվող փոփոխությունների բնույթը հարուցել են ժամանակը, լուծվող քաղաքական խնդիրների մասշտաբայնությունը, դրանց համեմատ ՍՄԿԿ-ի կազմակերպական հետագա ամրապնդման, կուսակցական ղեկավարման ներգործունության ուժեղացման, սկզբնական կուսկազմակերպությունների, բոլոր կոմունիստների դերի ու պատասխանատվության ըստ ամենայնի բարձրացման անհրաժեշտությունը:

Որպես կոմունիստ, կուզենայի նաև հայտնել մի քանի նկատառում: Կանոնադրության (առաջարկվող փոփոխություններով) նախագծում ասված է, որ «Սկզբնական կուսակցական կազմակերպությունների քարտուղարների համար պարտադիր է առնվազն մեկ տարվա կուսակցական ստաժ»: Կարծում եմ մեկ տարվա կուսակցական ստաժը քիչ է սկզբնական կուսկազմակերպության քարտուղարի համար: Կուսքարտուղարը կոմունիստների ղեկավարն է, նա պետք է ունենա ոչ միայն կյանքի, այլև կուսակցական պարտականությունների ու հանձնարարությունների կատարման որոշակի փորձ, քաջատեղյակ լինի կուսակցական ղեկավարման սկզբունքներին, ունենա տեսական ու գործնական այնպիսի գիտելիքներ, որոնք հաստատեն նրա խոսքի հեղինակությունը: Նրա խորհուրդների ու առաջարկների ճշմարտացիությունը այն հաշվով, որ կոմունիստները վստահ ու անվարան գնան նրա ետևից: Ահա այս հանգամանքները նկատի ունենալով՝ նպատակահարմար է սկզբնական կուսկազմակերպության քարտուղարի համար պարտադիր համարել առնվազն երեք տարվա կուսակցական ստաժը:

Այնուհետև: Հայտնի է, որ երիտասարդը մինչև 28 տարեկանը կարող է մնալ կոմերիտմիության մեջ, որից հետո մեխանիկորեն դուրս է մնում նրա շարքերից: Հետևաբար, նպատակահարմար է, որ երիտասարդները Համ-ԼԿԵՄ-ի միջոցով կուսակցության մեջ ընդունվեն ոչ թե մինչև 25, ինչպես նախատեսվում է կանոնադրության նախագծում, այլ՝ 28 տարեկանը:

Ֆ. ԽԱՉԱՏՐՅԱՆ
«Հայարդմոնտաժ» տրեստի կուսկոմիտեի քարտուղար

## Հաշվետվությունները և ընտրությունները
## սկզբնական կուսկազմակերպություններում

# ՄԱՐԴՈՒ ԲԱՐՕՐՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅԱՆ անշեղ բարձրացումը միշտ եղել ու մնում է մեր կուսակցության կարևորագույն ծրագրային պահանջը, նրա սոցիալ-տնտեսական քաղաքականության առանցքը: Հետևողականորեն իրականացնելով իր տնտեսական ստրատեգիան՝ ՍՄԿԿ-ն ամեն ինչ անում է, որպեսզի ապահովի մարդկանց նյութական ու հոգևոր հարուստ կյանքը, պայմաններ է ստեղծում անհատի համակողմանի զարգացման համար:

Մեր երկրի զարգացման արդի փուլում սովետական ժողովրդի առջև ծառացել են որակապես նոր, արմատական խնդիրներ՝ գիտատեխնիկական առաջընթացի բազայի վրա արագացնել հասարակության սոցիալ-տնտեսական առաջընթացը, ժողովրդական տնտեսությունը փոխադրել ինտենսիվ ռելսերի վրա: Եվ այդ ամենը՝ հանուն մարդու, ի բարօրություն մարդու: Միանգամայն օրինաչափ է, երբ ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան և հոկտեմբերյան պլենումներում առանձնակի ուշադրություն հատկացվեց սոցիալական ոլորտին, որն ընդգրկում է մարդու ողջ կենսատարածքը՝ նրա աշխատանքի ու կենցաղի, առողջության ու հանգստի պայմաններից մինչև սոցիալ-դասակարգային և ազգային հարաբերությունները:

Այդ առումով էլ ներկայումս մեծ նշանակություն է ստանում աշխատավորների սպասարկման ոլորտը, հատկապես նրանց մատուցվող կենցաղային ծառայությունների արմատական բարելավումն ու հետագա զարգացումը: Այժմ կուսակցությունը խնդիր է դնում, որպեսզի ըստ ամենայնի բարելավվեն մարդկանց կենցաղային պայմանները, բավարարվեն աճող պահանջմունքները, տնային տնտեսության մեջ կրճատվեն և թեթևացվեն մարդու աշխատանքային ծախսումները, ավելի ռացիոնալ օգտագործվի նրա ազատ ժամանակը:

Վերջին տասնամյակում և հատկապես տասնմեկերորդ հնգամյակի տարիներին մեր հանրապետությունում արագ տեմպերով զարգացել է ժողովրդական տնտեսության կարևոր ճյուղերից մեկի՝ բնակչության կենցաղային սպասարկման ոլորտը: Ելնելով աշխատավորների հարաճուն պահանջմունքներից՝ մեզ մոտ ստեղծվել է վճարովի ծառայությունների բավականին ճյուղավորված ու արդյունավետորեն գործող մի համակարգ: Քաղաքներում ու գյուղական վայրերում կառուցվել են կենցաղի նոր տներ ու կոմբինատներ, արտադրական ձեռնարկություններ, անհատական պատվերների ընդունման ու նորոգման կոմպլեքսային կետեր, զանազան տաղավարներ: Մեծապես ընդլայնվել է բնակչությանը մատուցվող ծառայությունների տեսականին, որոշ գործ է կատարվել սպասարկումների որակի ու կուլտուրայի բարձրացման ասպարեզում: Դրական պետք է համարել կենցաղային սպասարկման ձեռնարկությունների կենտրոնացումն ու մասնագիտացումը:

Այդ խնդիրներն արծարծվեցին հանրապետության բնակչության կենցաղային սպասարկման միավորության ապարատի կուսակցական կազմակերպության հաշվետու-ընտրական ժողովում: Ճյուղի շտաբի կոմունիստները հանրագումարի բերեցին ու վերլուծեցին իրենց գործունեությունը ոչ միայն հաշվետու ժամանակաշրջանում, այլև որոշ առումով նաև անդրադարձան տասնմեկերորդ հնգամյակի տարիներին ապարատի կուսկազմակերպության կատարած աշխատանքին:

Հաշվետու-ընտրական ժողովից հինգ օր առաջ, հոկտեմբերի 17-ին, հանրապետ-



ության բնակչության սպասարկման համակարգի աշխատավորները զեկուցեցին, որ ժամկետից երկուսուկես ամիս շուտ կատարել են բնակչության կենցաղային ծառայությունների իրացման ծավալի հնգամյա առաջադրանքը և պարտավորվել են մինչև տարեվերջ լրացուցիչ կերպով բնակչությանը մատուցել ևս 17 միլիոն ռուբլու ծառայություն: Մեծ չափով գերակատարվել է բնակչության սպասարկման ծավալի աճի պլանը, ընդ որում այն ձեռք է բերվել աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին: Միաժամանակ ինքնարժեքի իջեցման և ձեռնարկությունների աշխատանքի շահութաբերության բարձրացման միջոցով արտապլանային օգուտը կազմել է 12,5 միլիոն ռուբլի:

Ինչ խոսք, արդյունքները ծանրակշիռ են և հուսադրող, բայց կոմունիստները, ինչպես և պետք էր սպասել, հեռու էին կատարվածը գերագնահատելու մտայնությունից: Կուսակցական ժողովն անցավ գործարար մթնոլորտում, օգտակար ու սկզբունքային խոսակցություն եղավ ոչ միայն հաշվետու ժամանակաշրջանի ձեռքբերումների, այլև առկա թերությունների ու վրիպումների, ճյուղի կոլեկտիվների առջև ծառացած մերձավոր ու հեռանկարային կարևոր հարցերի շուրջ: Զեկուցողը և ելույթ ունեցողները շեշտը դրեցին բնակչության սպասարկման ոլորտում եղած թերացումների, չլուծված պրոբլեմների վրա: Անշուշտ, դրան մեծապես նպաստեց կուսբյուրոյի (քարտուղար՝ Ա. Հակոբյան) հաշվետու զեկուցման գործարար տոնը: Նրանում քննադատաբար, առանց սքողելու վերլուծված էին կուսկազմակերպության ու ադմինիստրացիայի գործունեությունը, ապարատի կոմունիստների, այդ թվում նաև առանձին ղեկավար կադրերի աշխատանքի ոճը:

Ժողովում նշվեց, որ հաշվետու ժամանակահատվածում անհամեմատ բարձրացել է ներկուսակցական ու գաղափարախոսական-դաստիարակչական աշխատանքի մակարդակը: Կուսակցական ժողովներում և բյուրոյի նիստերում քննարկվել են առանձին կոմունիստների հաշվետվությունները, անդրադարձել են վերադաս մարմինների, միավորության կոլեգիայի և կուսկազմակերպության ընդունած որոշումների կատարման, պետական և աշխատանքային կարգապահության հարցերին: Եվ դա որոշակիորեն նպաստել է կոմունիստների ձեռներեցության ու ակտիվության զարգացմանը, հանձնարարված գործի նկատմամբ նրանց պատասխանատվության բարձրացմանը, համակարգի աշխատանքի բարելավմանը:

Հնգամյակի տարիներին պետական պլանային առաջադրանքները և սոցիալիստական պարտավորությունները հաջողությամբ կատարելու համար միավորությունը հինգ անգամ արժանացել է ճյուղային արհմիության միութենական Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին և առաջին կարգի դիպլոմին: Որոշակի գործ է կատարվել համակարգի ձեռնարկությունները բարձրարտադրողական սարքավորումներով ու մեքենաներով համալրելու, առաջավոր տեխնոլոգիական պրոցեսների ներդրման, կենցաղային ծառայությունների տեսականու ընդլայնման, նյութական ռեսուրսների ու էլեկտրաէներգիայի խնայողության նպատակով:

Հնգամյակի տարիներին գյուղական վայրերում ընդլայնվել են կենցաղային սպասարկման ցանցը, աշխատավորներին մատուցվող ծառայությունները: Բավական է նշել, որ անցած չորս տարում ֆինանսավորման բոլոր աղբյուրներով գյուղական վայրերում կառուցվել ու շահագործման են հանձնվել 226 կենցաղի տներ՝ պատվերների կոմպլեքսային ընդունման ու նորոգման կետերով: Դրանցից 179-ը կառուցվել է միավորության ուժերով: Մինչև ընթացիկ տարվա վերջը շահագործման կհանձնվի ևս 34 կենցաղի տուն: Այսպիսով, տասնմեկերորդ հնգամյակի վերջում գյուղական կենցաղային տների քանակը կհասնի 260-ի:

Սակայն, ինչպես նշվեց կուսակցական ժողովում, ձեռքբերումները կարող էին լինել ավելի մեծ ու ծանրակշիռ, եթե համակարգի բոլոր օղակները, միավորության ապարատի կոմունիստները գործեին ավելի կազմակերպված ու արդյունավետորեն, անհրաժեշտ վերահսկողություն սահմանեին ընդունած որոշումների կատարման վրա: Եվ, ամենագլխավորը, մշտապես իրենց տեսադաշտում պահեին ճյուղի զարգացման կարևորագույն, առաջնահերթ պրոբլեմները, վճռական գործողությունների դիմեին աշխատանքում տեղ գտած բացթողումները ժամանակին հաղթահարելու, այսպես ասած, «նեղ տեղերը» վերացնելու համար: Այդ գործում, անկասկած, թերացել է նաև կուսբյուրոն:

Չնայած սպասարկման ոլորտում եղած դրական միտումներին, այնուամենայնիվ,

կոմունիստների համար լուրջ քննություն էր միավորումը նոր տնտեսափորձի պայմաններում աշխատանքի փոխադրելը: Այդ անցումն իրականացվեց ընթացիկ տարվա սկզբին: Առաջին կիսամյակի արդյունքները վկայում են, որ նախապատրաստական աշխատանքները կատարվել են ժամանակին ու որակով: Արդյունքը՝ օգուտների պլանը գերազանցվել է 32 տոկոսով, որը հնարավորություն է ընձեռել զգալիորեն ավելացնել կոլեկտիվի անդամների նյութական խրախուսման, սոցիալ-կուլտուրական, արտադրության զարգացման ֆոնդերին փոխանցվող հատկացումները: Կիսամյակում արտադրանքի ինքնարժեքի լրացուցիչ իջեցման շնորհիվ տնտեսվել է 86 հազար ռուբլի, «Ն» և «Դ» ինդեքսով թողարկվող արտադրանքի տեսակարար կշիռը հասել է 46 տոկոսի՝ պլանով նախատեսված 39,6-ի փոխարեն:

Իրոք հպարտանալու արժանի գործեր, ոգևորող նվաճումներ, որոնք ձեռք են բերվել արտադրամասային և սկզբնական կուսկազմակերպությունների ծավալած կազմակերպչական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքով, առաջադրված խնդիրների լուծման գործում բոլոր կոմունիստների ակտիվ մասնակցությամբ:

Բացառական հետևողական աշխատանք է տարվել բրիգադային եղանակի ներդրման նպատակով: Ներկայումս այդ մեթոդով է աշխատում 75 բրիգադ, որոնց մեջ ընդգրկված է 1.728 բանվոր՝ միավորման բանվորների գրեթե 75 տոկոսը:

— Այս մեթոդը նպաստում է ոչ միայն զուտ արտադրական հարցերի լուծմանը, աշխատանքի արտադրողականության և արտադրանքի որակի բարձրացմանը,— իր ելույթում ասաց միավորման Անաստասավանի ֆաբրիկայի բանվորուհի Հ. Մարտիրոսյանը,— այլև կարգապահության ամրապնդմանը, մարդկանց մոտ փոխօգնության, կոլեկտիվիզմի սկզբունքների զարգացմանը, դաստիարակչական աշխատանքի արդյունավետության բարձրացմանը:

Միավորումում բրիգադային եղանակի արմատավորման նպատակով մեծ աշխատանք է կատարվել: Դա, անշուշտ, լավ է, բայց այսօրվա պահանջներին այն արդեն չի բավարարում, անհրաժեշտ է ստեղծել տնտհաշվարկային բրիգադներ: Դա հնարավորություն կընձեռի առավել արդյունավետորեն օգտագործել արտադրական ռեզերվները, սարքավորումները, նյութական և աշխատանքային ռեսուրսները: Դա լավ գիտեն տրիկոտաժագործները և այդ առումով որոշ տեղաշարժեր արդեն նկատվում են: № 4 արտադրամասում, օրինակ, ստեղծվել է 3 տնտհաշվարկային բրիգադ, նախապատրաստական աշխատանքներ են տարվում №№ 1, 2 արտադրամասերում:

Սակայն կատարվածը դեռևս քիչ է: Այժմ, երբ կուսակցությունը խնդիր է դնում ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում, բոլոր օղակներում լայնորեն անցնել տնտհաշվարկին, միավորման կոմունիստները պարտավոր են ավելի վճռականորեն, ավելի նախաձեռնողաբար զբաղվել այդ գործով: Դա հատկապես հրատապ է խնայողության ռեժիմի հետագա խորացման առումով: Տնտհաշվարկի դեպքում ավելի է բարձրանում յուրաքանչյուր բրիգադի, ամեն մի բանվորի շահագրգռությունը նյութերի, հումքի, էլեկտրաէներգիայի խնայողության համար: Եվ տրիկոտաժագործները պարտավորվել են այս տարի տնտեսել 13 տոննա հումք, 100 հազար **կվտ**-ժամ էլեկտրաէներգիա ու 2 օր աշխատել խնայվածի հաշվին: Իրենց խոստումը նրանք կատարում են անթերի:

Իր ելույթում № 1 արտադրամասի բրիգադավար Ծ. Խաչատրյանը խոսեց իրենց կոլեկտիվի լավ գործերի, կոմունիստների հայրենանվեր աշխատանքի, այն բարձր խանդավառության մասին, որով տրիկոտաժագործներն ընթանում են դեպի հարազատ կուսակցության XXVII համագումար: Արտադրամասի մարդիկ խնայել են զգալի քանակությամբ հումք, բոլոր նախադրյալները ստեղծել 1985 թվականի առաջադրանքները ժամկետից շուտ՝ դեկտեմբերի 1-ին կատարելու համար և պարտավորվել են եկող տարվա հունվար-փետրվար ամիսների պլանները կատարել 105—106 տոկոսով: Նախահամագումարյան սոցմրցությունը գլխավորում են կոմունիստները, որոնք ամենուրեք լավագույն աշխատանքի օրինակ են տալիս:

— Սակայն,— շարունակեց նա,— մեր կոլեկտիվի ցուցանիշները ավելի բարձր կլինեն, եթե ձեռնարկության բոլոր օղակները գործեն հստակ: Եզակի չեն այն դեպքերը, երբ արտադրամասում աշխատանքի համաչափությունը խախտվում է, պարապուրդներ են լինում հումքի մատակարարման խափանումների պատճառով:

Գործող արտադրամասի կոլեկտիվն իր առաջադրանքները կատարել է 116 տոկոսով, խնայել 1.870 կգ հումք և ամեն ինչ անում է տարվա բնագիծը ժամկետից շուտ նվաճելու համար:



Արտադրամասում լավ է կազմակերպված սոցմրցությունը, բոլոր բրիգադներն ու բանվորներն ունեն պարտավորություններ, որոնց կատարման ընթացքը ամփոփվում է պարբերաբար: Այս ամենի մասին իր ելույթում պատմեց արտադրամասային կուսկազմակերպության քարտուղար Ժ. Միքայելյանը:

— Մեր կուսբյուրոն,— շարունակեց նա,— մշտապես ուշադրության կենտրոնում է պահում արտադրանքի որակի, խնայողության, մարդկանց ստեղծագործական ակտիվության զարգացման խնդիրները, իր նիստերում պարբերաբար անդրադառնում այդ հարցերին: Կուսակցության պահանջներից ելնելով՝ մենք հետևողականորեն զբաղվում ենք աշխատանքային ու արտադրական կարգապահության հետագա ամրապնդմամբ և կոմունիստների, մրցության առաջավորների ջանքերով հասել ենք զգալի հաջողությունների:

Այս առումով դրական տեղաշարժերը նկատելի են ամբողջ միավորումում: Դրա հիմնական նախադրյալներից մեկն էլ այն է, որ կուսբյուրոն, տնտեսական ղեկավարները մոտիկից են զբաղվում կոլեկտիվի սոցիալական զարգացման, աշխատանքային պայմանների բարելավման, նյութական և բարոյական խթանման միջոցների ճիշտ զուգակցման հարցերով: Այդ ամենի շնորհիվ միավորման բոլոր օղակներում ստեղծվել են ամուր, կայուն կոլեկտիվներ, խիստ նվազել է կադրերի հոսունությունը: Հոսունության կրճատմանը նպաստել են աշխատատար գործողությունների մեքենայացումը, բրիգադային եղանակի լայն արմատավորումը, կոլեկտիվի անդամների հանգստի լավ կազմակերպումը և այլ միջոցառումներ:

Զեկուցողն ու գրեթե բոլոր ելույթ ունեցողները անդրադարձան թողարկվող արտադրանքի որակի հարցերին: Այդ կարևորագույն խնդիրը մշտապես գտնվել է կուսբյուրոյի, արտադրամասային կուսկազմակերպությունների, տնտեսական ղեկավարների տեսադաշտում: Վերջին տարիներին նոր, առավել կատարելագործված ու բարձրարտադրողական մեքենաներ ու սարքավորումներ են տեղադրվել ներկման, գործող, № 1 արտադրամասերում, Անաստասավանի մասնաճյուղում: Նոր տեխնիկան, անշուշտ, նկատելիորեն նպաստում է արտադրանքի որակի բարելավմանը: Այդ նպատակին են ծառայել նոր արտադրատեսակների նմուշների ստեղծումն ու թողարկումը:

Հաշվետու ժամանակաշրջանում, օրինակ, ստեղծվել և ներդրվել են մեծ պահանջարկ ունեցող 123 արտադրանմուշներ: Արտադրանքի որակի հարցերը պարբերաբար քննարկվել են կուսբյուրոյի նիստերում, արտադրամասային կուսկազմակերպությունների ժողովներում: Այդ ամենը նպաստել է գործերի բարելավմանը, այնուամենայնիվ անելիքներ դեռ շատ կան:

— Որակի հանձնաժողովի ստուգումները,— իր ելույթում ասաց № 2 կարող արտադրամասի բանվորուհի Ս. Հովսեփյանը,— վկայում են, որ կոլեկտիվի որոշ անդամների, այդ թվում առանձին կոմունիստների անփութության ու թափթփվածության պատճառով երբեմն սպառողին հասնում է ցածրորակ, նույնիսկ խոտան արտադրանք: Այդ մասին են վկայում միավորումում ստացված բողոքարկները:

Իսկ այդպիսիք քիչ չեն: Թեև անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ դրանք նվազել են, բայց և այնպես 9 ամսում ստացվել է 277 բողոքարկ: Արձանագրվել են հետևյալ թերությունները՝ արտադրանքի ցածր որակ, սխալ պիտակավորում, սխալ տեսակավորում: Ժողովը արտադրամասերի պետեր Ա. Ինդույանից, Հ. Համբարձումյանից, մասնաճյուղերի և այլ օղակների ղեկավարներից պահանջեց վճռական միջոցների դիմել խոտանը կանխելու համար: Միաժամանակ նշվեց, որ դեռևս չի լուծվել պատրաստի արտադրանքը փաթեթավորելու հարցը, որի պատճառով հաճախ տրիկոտաժեղենը սպառողին է հասնում ապրանքային տեսքը կորցրած վիճակում:

Ստախանովյան շարժման վետերանների, արտադրության առաջավորների և նորարարների հետ ՍՄԿԿ Կենտկոմում կայացած հանդիպման ժամանակ խոսելով ժողովրդական սպառման ապրանքների որակի մասին, ընկեր Մ. Ս. Գորբաչովը նշեց, որ կարելի է հասկանալ գնորդին, որը զարմանում է, թե ինչու մենք տիեզերանավեր, ատոմանավեր կարողանում ենք պատրաստել, իսկ ժամանակակից կեն-

ցաղային տեխնիկան, կոշկեղենը, հագուստեղենը հաճախ պատրաստում ենք թերություններով: Իսկ դա բերում է ոչ միայն նյութական, այլև բարոյաքաղաքական ծախքեր:

Հաշվետու-ընտրական ժողովը խնդիր դրեց արտադրանքի որակի համար բարձրացնել բոլոր օղակների, ամեն մի աշխատողի պատասխանատվությունը, միաժամանակ պահանջեց ուշադրությամբ ուսումնասիրել սպառողների պահանջները և նոր արտադրատեսակների թողարկումը կազմակերպել՝ հաշվի առնելով դրանք: Դա էապես կազդի բողոքարկների կրճատմանը, կկանխի առաքված ապրանքների վերադարձը:

Հաշվետու շրջանում կուսբյուրոն նկատելի աշխատանք է կատարել կոմունիստների, կոլեկտիվի բոլոր անդամների քաղաքական ու տնտեսագիտական ուսուցումը կազմակերպելու, գաղափարախոսական աշխատանքն ուժեղացնելու, մարդկանց արտադրական ակտիվությունը բարձրացնելու և ստեղծագործական նախաձեռնությունը զարգացնելու, կոլեկտիվի ուժերը առաջադրված խնդիրների լուծմանը ծառայեցնելու նպատակով: Վերևում հիշատակված արտադրական ցուցանիշներն ինքնին վկայում են այդ աշխատանքի արդյունավետության մասին: Կոլեկտիվի շատ անդամներ հանդես են եկել ուշագրավ նախաձեռնություններով, արտադրության արդյունավետության հետագա բարձրացմանը նպաստող առաջարկներով: Մարդկանց ստեղծագործական ակտիվության աճի արտահայտություններից մեկն էլ նորարարական շարժման հետագա ընդլայնումն է: Գ. Ծատուրյանը, Ռ. Հովհաննիսյանը, Վ. Հարությունյանը, Վ. Փոթիկյանը, տասնյակ այլ տրիկոտաժագործներ այս տարի ներկայացրել են 50 ռացիոնալիզատորական առաջարկ՝ 100 հազար ռուբլի տնտեսական արդյունավետությամբ: Կոմունիստներ Ա. Աղագուլյանի և Վ. Հակոբյանի մտահղացմամբ այժմ արտադրության թափոններից պատրաստվում են որոշ մեքենամասեր, որոնք մինչ այդ ներմուծվում էին արտասահմանից:

Միավորման գլխավոր դիրեկտոր Ռ. Մկրտչյանը, պլանային-արտադրական բաժնի պետ Վ. Մեսրոպյանը, ՀԿԿ Շահումյանի շրջկոմի երկրորդ քարտուղար Ջ. Մկրտչյանը և ուրիշներ, իրենց ելույթներում, խոսելով հաշվետու շրջանում ձեռք բերված հաջողությունների, միավորման զարգացման հեռանկարների մասին, կոմունիստների ուշադրությունը հրավիրեցին նաև նյութատեխնիկական մատակարարման, աշխատատեղերի ատեստավորման ու ռացիոնալացման, կադրերի ու ենթաշեֆ դպրոցներում տարվող աշխատանքների բարելավման հարցերի վրա:

Իսկ ի՞նչը վրիպեց ժողովի ուշադրությունից:

1984 թվականի հոկտեմբերին ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն ընդունեց «Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին» հայտնի որոշումը: Միավորման կուսբյուրոյի հաշվետվության ժամանակահատվածը գրեթե ամբողջությամբ համընկնում է այդ կարևորագույն որոշումից հետո անցած մեկ տարվա հետ: Թվում էր, որ հաշվետու զեկուցման մեջ խորությամբ կարտացոլվեն հանրապետության բոլոր կոմունիստների համար ծրագրային այդ փաստաթղթում բարձրացված հարցերը, կասվեր այն մասին, թե կուսբյուրոն, արտադրամասային ու սկզբնական կուսկազմակերպությունները ինչ են արել կուսակցության պահանջները կատարելու, այնտեղ նշված թերությունները վերացնելու, գաղափարախոսական աշխատանքը նոր խնդիրների մակարդակին հասցնելու համար: Սակայն այդ մասին ոչինչ չասվեց: «Գաղափարաքաղաքական դաստիարակությունն իր բոլոր ձևերով պետք է առավելագույնս շաղկապված լինի մեր օրերի գլխավոր խնդիրների՝ երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման հետ»: Հաշվետու շրջանում ի՞նչ է արվել կուսակցության այս պահանջն իրականացնելու նպատակով, քաղաքական ուսուցումը և տնտեսագիտական կրթությունը ինչպե՞ս են շաղկապվում կոլեկտիվի առջև դրված կոնկրետ խնդիրների հետ, պրոպագանդիստներն ինչպիսի՞ նոր, ակտիվ ձևեր ու մեթոդներ են կիրառում, ովքե՞ր են հասել ուսուցման արդյունավետության բարձրացման, ովքե՞ր ձևականորեն են կատարում իրենց այդ կարևոր պարտականությունը: Այդ ամենի մասին ժողովականները ոչինչ չիմացան:

Առհասարակ, հաշվետու ժողովում կուսակցական-կազմակերպական և դաստիարակչական հարցերը մեծ մասամբ արծարծվեցին մակերեսորեն: Մոռացության



էր տրվել նաև մարդկանց շրջանում տարվող դաստիարակչական աշխատանքի այնպիսի մասսայական ձևը, ինչպիսին քաղաքական բանավոր ագիտացիան է: Միավորման գլխամասային ձեռնարկությունում ու մասնաճյուղերում արդյոք գործո՞ւմ են ագիտկոլեկտիվներ, և եթե գործում են, ապա ագիտատորները ինչպե՞ս են կատարում իրենց պարտականությունները, ինչպե՞ս են նպաստում առաջավորների փորձի տարածմանը ու արմատավորմանը, սոցմրցության կազմակերպմանը: Դարձյալ ոչ մի խոսք:

Հաշվետու-ընտրական ժողովից մի քանի օր առաջ մամուլում հրապարակվեց ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումը ժողովրդական սպառման ապրանքների արտադրության և սպասարկումների ոլորտի զարգացման 1986—2000 թվականների կոմպլեքսային ծրագրի մասին: Այդպիսի ծրագիր մշակվել է առաջին անգամ և այն բեկումնային փուլ է նշանավորում աշխատավորների հարաճուն պահանջմունքների բավարարման գործում:

Կուսակցության ու կառավարության մշակած նոր ծրագիրը արտացոլում է յուրաքանչյուր սովետական ընտանիքի կենսականորեն կարևոր շահերը նոր, որակապես ավելի բարձր մակարդակի վրա: Այն մակարդակի վրա, որը համապատասխանում է հանրային արտադրության աճած հնարավորություններին: Հետևապես, մյասնիկյանցիները ևս իրենց ընթացիկ ու հեռանկարային խնդիրները պարտավոր են լուծել որակապես այդ նոր մակարդակի պահանջներից ելնելով:

Միավորման կուսկազմակերպության հաշվետու-ընտրական ժողովի ընթացքը, կոմունիստների գործնական առաջարկությունները ու ընդունած որոշումը, որով պահանջվում է ըստ ամենայնի ակտիվացնել մարդկային գործոնը, բարձրացնել բոլորի պատասխանատվությունը, վկայում են, որ տրիկոտաժագործների կոլեկտիվը, կոմունիստների ղեկավարությամբ, կգտնվի նոր խնդիրների լուծման բարձրության վրա:

Դ. ՀՈՎԱԿԻՄՅԱՆ

# ՈՐ ԱՎԵԼԻ ԳԵՂԵՑԻԿ ԼԻՆԻ ԵՐԵՎԱՆԸ

ԶԲՈՍԱՇՐՋԻԿՆԵՐԻ ԽՈՒՄԲՆ ԱՆՑՆՈՒՄ ԷՐ մայրաքաղաքի մի փողոցից մյուսը: Ավտոբուսը, որի վրա հայերեն ու անգլերեն գրված էր «Ինտուրիստ», երբեմն կանգ էր առնում որևէ շինության մոտ, ամեն ինչ տեսած տուրիստները ալարկոտ դուրս էին գալիս ավտոբուսից. ոմանք սկսում էին լուսանկարել շենքը, իրենց խմբի օտարոտի հագնված անդամներին, որոնք, հավաքված գիդի շուրջը, լսում էին նրա բացատրությունները...

— Սա մարշալ Բաղրամյանի պողոտան է,— ասում էր երիտասարդ գիդը,— այս կամարներով շինությունը կոմպոզիտոր Արամ Խաչատրյանի տուն-թանգարանն է... Ահա և Հայաստանի գիտությունների ակադեմիան... Իսկ սա երևանցիներն անվանում են Համագումարների պալատ:

Շատրվանը, սանդուղքները և բարձունքի վրա հպարտորեն կանգնած շինությունը լուսանկարելուց հետո մի տարեց պարոն մոտեցավ գիդին ու հարցրեց.

— Իսկ ո՞վ է կառուցել այս ամենը:

— Կառուցված է պետության միջոցներով:

— Այո՞: Սակայն կառուցող մարդիկ... Ովքե՞ր են նրանք:

Այդ ժամանակ գիդը բացատրեց.

— Մեր հանրապետությունում կան շինարարական կազմակերպություններ, որոնք էլ զբաղվում են այդ գործով: Իսկ այս գեղեցիկ շինությունը կառուցել է «Երարդշին» տրեստը:

— Ի՞նչ ասել է՝ «Երարդշին»,— հարցրեց օտարերկրացին:

— Դա հապավում է, որ նշանակում է՝ Երևանի արդյունաբերական շինարարության տրեստ:

— Սակայն այս շենքը ոչ գործարան է, ոչ ֆաբրիկա:

— Իրավացի եք: Սա հասարակական շինություն է: Մեր բոլոր շինարարական տրեստները կառուցում են թե՛ իրենց բնույթին համապատասխանող շինություններ,

թե՛ հասարակական ու մշակութային, առողջապահական, ուսումնական ու մարզական համալիրներ և, իհարկե, բնակելի տներ...

Պատահականությո՞ւն էր այս զրույցին ներկա գտնվելը, իհարկե, ո՛չ:

Ես շրջում էի մայրաքաղաքի փողոցներով՝ տեսնելու այն շինությունները, որոնք կառուցել են «Երարդշին»-ի շինմոնտաժային կոլեկտիվները: Չէ՞ որ ավելի լավ է մի անգամ տեսնել, քան հարյուր անգամ լսել: Մանավանդ որ ես մասնակցելու էի կուսակցական կազմակերպության հաշվետու-ընտրական ժողովին:

Ժողովը տեղի ունեցավ տրեստի հարմարություններից զուրկ, անշուք մշակույթի տանը: Իմաստուն է առածը՝ «Մաշակարը մաշիկ չի ունենում»: Ուրիշների համար կառուցում են, իսկ իրենք մի կարգին մշակույթի տուն չունեն:

Կուսկոմիտեի հաշվետվությամբ հանդես եկավ նրա երիտասարդ քարտուղար Պավել Մեհրաբյանը: Այնուհետև ծավալվեց մտքերի աշխույժ փոխանակություն: Ելույթ ունեցողներից մեկը շինարարական վարչության պետ է, մյուսը բրիգադավար, երրորդը՝ մեխանիզատոր:

Երբ ամբիոնին մոտեցավ № 32 շինվարչության որմնադիր Մելիքսեթ Ծմավոնյանը, շարքերում աշխուժության ալիք անցավ: Դե պարզ է, հնագույն աշխատողներից է, ճանաչում են. գիտեն, թե ինչպե՛ս կասի: Եվ իսկապես, նա սկսեց խոսել շատ սահուն, առանց թղթի ու կոնսպեկտի:

— Երեսունվեց տարի աշխատում եմ այս տրեստում,— ասաց որմնադիրը,— բայց չի եղել մի տարի, որ մենք հստակ իմանանք, թե եկող տարում ի՞նչ ենք անելու: Պատճառը՝ չկան նախագծեր: Մեզ ասում են՝ դուք շինարարությունն սկսեք, նախագծերը շուտով կստանաք: Իսկ նախագծերը ոչ թե շուտով, այլ մեծ ուշացումով ենք ստանում:

Նախագծերի մասին, իհարկե, խոսք եղավ նաև հաշվետու զեկուցման մեջ: Կուսկոմիտեի քարտուղարը նշեց, որ, չնայած տրեստի ընթացիկ տարվա ութ ամիսների ոչ վատ տեխնիկատնտեսական ցուցանիշներին, կառուցվող 102 օբյեկտներից ու հզորություններից քառասունյոթի շինմոնտաժային աշխատանքների պլանները չեն կատարվել: Մի շարք օբյեկտների ղեկավարներ, անտեսելով տնտեսավարության հիմնական օրենքը, որ ընդունված պլանը օրենք է և չի կարելի այն չկատարել, փնտրում են օբյեկտիվ պատճառներ՝ արդարացնելու ետ մնալը... Այնուամենայնիվ, չնվազեցնելով շինվարչությունների ղեկավարների և կուսկազմակերպությունների մեղքը, պետք է նշել, որ պլանների թերակատարման գործում մեղքի մի բաժինն ընկնում է պատվիրատու և ենթակապալառու կազմակերպությունների վրա: Հաշվետու ժամանակաշրջանում մեր տրեստի շրջանակներում իրենց առաջադրանքները չեն կատարել «Հայէլեկտրամոնտաժ», «Հայարդվենտիլյացիա», «Սոյուզլիֆտմոնտաժ» կազմակերպությունները:

— Ամեն տարի,— այնուհետև ասաց զեկուցողը,— տրեստի արտադրական պլանում թվարկվում են կառույցներ, որոնց շինարարությունը հնարավոր չէ սկսել, մինչև որ չկատարվեն նախագծերի ճշգրտումը և ֆինանսավորումը: Սովորաբար դրանք ավարտվում են միայն մայիս ամսին, այսինքն, երբ տարվա մեկ երրորդ մասն արդեն անցած է լինում: Փորձնական ուսումնադիդակտիկ իրերի գործարանի վերակառուցումը № 33 շինվարչությունը ձգձգում է նախագծերի բազմաթիվ փոփոխությունների, ինչպես նաև անհրաժեշտ սարքավորումներ և հատուկ նյութեր չստանալու պատճառով: Չնայած № 31 շինվարչությունը կառուցվող գործարանի շինմոնտաժային աշխատանքների պլանը կատարել է, սակայն այդ օբյեկտը չի գործարկվի ջեռուցման և օդափոխության նոր նախագծերի բացակայության պատճառով...

Վերադառնանք որմնադիր Մ. Ծմավոնյանի ելույթին: Նա սրտի ցավով նշեց, որ կառույցների գործարկումը ձգձգվում է, որովհետև... պակաս է շինանյութը, մեկ էլ տեսնում ես ցեմենտ չկա, բետոնի շաղախ չկա: Հերթը հասնում է պատուհաններին՝ տեսնում ես փեղկեր չկան, ապակի չկա: Ո՞ր շինարարը, աշխատող մարդը կուզի պարապ նստել: Մենք պատրաստ ենք ամբողջ օրն աշխատել, բայց հաճախ մեզ չեն ապահովում շինանյութերով...

Մենք այստեղ ընդհատում ենք բանվորի խոսքը՝ նրա և զեկուցողի մտքերի միջև զուգահեռ անցկացնելու միտումով: Կոմունիստ որմնադիրը, որ ինքն ու իր աշխատանքային ընկերներն են անմիջականորեն իրականացնում շինարարությունը, կուսկազմակերպության հաշվետու-ընտրական ժողովում, որին, ի դեպ, մասնակցում



էին հանրապետության արդյունաբերության շինարարության մինիստր Է. Ավագյանը, կուսակցական ու սովետական պատասխանատու աշխատողներ, համարձակորեն ասաց, որ հաճախակի պակասում են շինանյութերը:

Նա խստությամբ խոսեց գիտահետազոտական ինստիտուտների մասին: Գիտնականների համար ստեղծված են նպաստավոր ամեն տեսակ պայմաններ, սակայն նրանք մեզ պարզապես չեն օգնում: Սա ինչ բան է: Սվաղը դեռևս կատարվում է ձեռքով: Իսկ հայտնի է, թե դա որքան ծանր աշխատանք է: Ու նաև շատ երկար ժամանակ է խլում: Ի՞նչ են մտածում գիտնականները: Մի՞թե հնարավոր չէ սվաղող մեքենա կամ համապատասխան սարք ստեղծել:

Իսկ հիմա՝ հեռախոսի մասին: Հրաշալի կապի միջոց է հեռախոսը: Հիմա առանց հեռախոսի դժվար է պատկերացնել մեր կյանքը: Բայց հեռախոսը նաև վատ ազդեցություն է թողել: Վերադաս մարմիններում գտնվող առանձին աշխատողներ հիմա ղեկավարում են... հեռախոսով: Դա նշանակում է կյանքից կտրվել: Ղեկավար ընկերները, եթե ոչ ամեն օր, գոնե ամեն շաբաթ պետք է այցելեն շինարարական հրապարակ, իրենց աչքով տեսնեն կատարվածն ու նաև՝ չկատարվածը: Պետք է զրուցել բանվորների հետ: Պետք է ճանաչել բոլոր բանվորներին: Պետք է կտրվել հեռախոսներից ու գրասենյակից դուրս գալ, որքան մեզ մոտիկ՝ այնքան լավ թե՛ գործի համար, թե՛ մեզ համար, թե՛ ղեկավար ընկերների համար:

Ժողովի մասնակիցները գոհունակությամբ ընդունեցին կոմունիստ որմնադիրի ելույթը:

№ 33 շինվարչության պետ Պապիկ Հարությունյանը, № 35 շինվարչության բրիգադավար Էդիկ Թումանյանը, № 34 շինվարչության պետ Մարտին Գդլյանը խոսեցին թե՛ տրեստի ընդհանուր հաջողությունների, թե՛ իրենց կազմակերպությունների գործերի մասին:

— Լավը, հաջողությունը, որոնց մասին քիչ խոսվեց նաև կուսկոմիտեի հաշվետվության մեջ, մերն են,— ասաց Մ. Գդլյանը,— հիմա ավելի լավ է խոսենք այն խնդիրների շուրջ, որոնք պետք է լուծվեն, այլապես վտանգի տակ կլինի մեր ընդհանուր պլանների կատարումը: Մեր վարչությունը,— ասաց նա,— այս տարի պետք է հինգ կառույց հանձնի շահագործման: Սոցմրցությամբ պարտավորվել ենք դրանք հանձնել մեկ ամիս շուտ:

Երիտասարդ բրիգադավար Է. Թումանյանը շեշտեց շինարարական հրապարակները կատարելագործված մեխանիզմներով ապահովելու անհրաժեշտությունը, ապա խոսեց իրենց գործին նվիրված հմուտ կադրերի մասին: Գերազանց որակով է կառուցվում «Հայհաստոց» արտադրամիավորման մասնաշենքը: Այդ գործի գլուխ կանգնած է հիանալի աշխողեկ, իր մասնագիտության վարպետ Ռոմիկ Բոշյանը: Նա մեր մայրաքաղաքում բազմաթիվ շենքեր է կառուցել և բոլորը՝ գերազանց գնահատականով:

Այնուհետև բրիգադավարը քննադատեց տրեստի կուսկոմիտեին՝ ՍՄԿԿ շարքերը համալրելու գործը անբավարար կազմակերպելու համար: Նա ասաց, որ հաշվետու երկու տարիներին իրենց վարչությունից կուսակցության մեջ ընդունվել է ընդամենը երկու մարդ, այն դեպքում, երբ արժանավորների թիվը շատ է: Կուսկոմիտեի հաշվետվության մեջ, ի դեպ, նշվեց, որ տրեստի կուսկազմակերպությունը հաշվետու ժամանակաշրջանում ՍՄԿԿ շարքերն է ընդունել 37 մարդու, նրանցից 32-ը առավել աչքի ընկած, գիտակից, սկզբունքային բանվորներ են:

Գործարար ելույթ ունեցավ Լենինի շքանշանակիր, էքսկավատորավար Մարատ Մելքոնյանը:

— Ամեն տարի,— ասաց նա,— մեր տրեստը մեծանում է, ավելի ու ավելի շատ մեքենաներ ու մեխանիզմներ ենք ստանում, սակայն մեր տարածքը մնում է նույնը: Կարելի է ասել՝ շարժվելու տեղ չունենք:

Հետո նա զայրույթով խոսեց ստացվող մեքենաների ու մեխանիզմների վիճակի մասին:

— Մինչև դրանք տեղ են հասնում, երկաթուղու ճանապարհին թալանվում, ջարդոտվում են և առանց նորոգելու հնարավոր չէ գործի դնել: Ե՞րբ պետք է վերջ տրվի այդ ահավոր վնասարարությանը: Ե՞րբ պետք է երկաթուղին տեր կանգնի իր փոխադրած ապրանքին. չէ՞ որ այսպես շարունակել չի կարելի:

Երբ վարպետ-մեխանիզատոր Մ. Մելքոնյանը ելույթ էր ունենում, հարց տրվեց,

թե ինչ եք անում երիտասարդ կադրեր պատրաստելու համար: Եվ նա պատասխանեց.

— Երիտասարդները հաճույքով չեն գալիս մեր հավաքականյան: Դժվար է էքսկավատորի վրա աշխատելը, իսկ շատերը խուսափում են դժվարությունից: Մի երիտասարդ, կլիներ 18—19 տարեկան, եկավ ինձ մոտ ու հարցրեց. «Վարպետ, որ սովորեմ քո գործը, ինչքա՞ն փող կստանամ»: Ափսոս, որ նա հենց սկզբից փողի մասին էր մտածում և ոչ թե արհեստի, վարպետ դառնալու մասին: Հիշում եմ, թե ինչպես մեր ջահել ժամանակ քաշվում էինք վարպետից, աշխատում ընդօրինակել նրան:

Երևում է, որ կոմերիտական կազմակերպությունը չի մտահոգվում մեր հավաքականյան երիտասարդներ ուղարկելու գործով: Թե չէ՝ ով եկել, սիրով սովորեցրել ենք մեր արհեստը, դարձրել հմուտ մասնագետ:

Տրեստի կառավարիչ Լևոն Ծահբազյանը մասնավորապես ասաց, որ տրեստը գլխավոր կապալառուի գծով կատարել է 75,2 միլիոն ռուբլու, իսկ սեփական ուժերով 60,6 միլիոն ռուբլու շինմոնտաժային աշխատանքներ: Շահագործման են հանձնվել 70 կառույցներ ու հզորություններ: Դրանցից կարելի է հիշատակել «Նորք—2» կենտրոնական կաթսայատունը, Սովետական շրջանի ծննդատունը, ավտոգործարանի լաբորատորիայի մասնաշենքը, Աջափնյակի պոլիկլինիկան, «Գարուն» միավորման № 3 փաբրիկան, ՀԼԿԵՄ Կենտկոմի մասնաշենքը: Վերակառուցվել են Արամ Խաչատրյանի տուն-թանգարանը, Արամ Խաչատրյանի անվան համերգային մեծ դահլիճը, մի շարք այլ շինություններ, ինչպես նաև 12,6 հազար քմ ընդհանուր մակերեսով բնակելի տներ՝ մայրաքաղաքի տարբեր մասերում:

— Գործերը,— ասաց նա,— հաջող են նաև հնգամյակի եզրափակիչ տարում: Կատարել ենք ինն ամսվա պլանները: Սակայն կառույցների շահագործման հանձնման առաջադրանքը դեռ չի կատարված, 43 օբյեկտներից հանձնված է միայն երեքը: Մնացած քառասունը պատրաստ կլինի վերջին եռամսյակում: Մենք, իհարկե, դա կկատարենք: Իսկ դրա համար կպահանջվեն մեծ ջանքեր ու լարում, աշխատանքային բարձր կարգապահություն:

Կուսկազմակերպության հաշվետու-ընտրական ժողովում թե՛ զեկուցողը, թե՛ ելույթ ունեցողները խոսեցին մի շարք խնդիրների մասին, որոնց լուծումը պայմանավորված է օբյեկտիվ ու սուբյեկտիվ գործոններով: Սակայն կա մի բան, որը ոչ մի կապ չունի ոչ պատվիրատու մարմինների, ոչ նախագծային հիմնարկների, ոչ էլ ենթակապալառու կազմակերպությունների գործունեության հետ: Դա աշխատանքային կարգապահությունն է: Մեր տրեստում շինարարական-մոնտաժային աշխատանքներում զբաղված է 2.500 մարդ: Եթե նրանցից յուրաքանչյուրն օրվա ընթացքում հենց այնպես կորցնի ընդամենը հինգ րոպե, պատկերացնո՞ւմ եք, թե որքան աշխատաժամանակ կկորչի:

— Երկու հնգամյակ շարունակ,— ասաց նա,— ընդունող հանձնաժողովները մեր շահագործման հանձնած բոլոր կառույցները գնահատել են միայն լավ և գերազանց: Տրեստն արժանացել է կառավարական բարձր պարգևի՝ Աշխատանքային Կարմիր դրոշի շքանշանի, ինչպես նաև բազմիցս հաղթող է ճանաչվել համամիութենական և հանրապետական սոցմրցության մեջ: Ուրեմն, մենք կարող ենք և պետք է միայն բարձր որակի շինություններ կառուցենք, արդյունաբերական, հասարակական ու մշակութային շենքերով գեղեցկացնենք Երևանը:

Սոցմրցության հարցերի շուրջն առավել մանրամասն խոսվեց հաշվետու զեկուցման մեջ: Ասվեց, որ ձեռնարկված միջոցների շնորհիվ տրեստի աշխատավորների գերակշիռ մասը ընդգրկված է սոցմրցության մեջ և հաջողությամբ իրականացնում է ստանձնած պարտավորությունները: Սոցմրցության արդյունքներն ամփոփելուց հետո հաշվետու ժամանակաշրջանում հաղթող են ճանաչվել տրեստի 30 կոլեկտիվներ, 828 բանվորներ, վարպետներ ու մասնագետներ, 71 բանվորներ պարգևատրվել են «Սոցմրցության հաղթող» կրծքանշանով, իսկ 7 բրիգադներ արժանացել են «Կոմունիստական աշխատանքի բրիգադ» պատվավոր կոչման: Հատկապես նշանակալից է ընթացիկ տարում ծավալված սոցմրցությունը. տրեստի կոլեկտիվը պարտավորվել է հնգամյակը եզրափակել բարձր ցուցանիշներով:

ՀԿԿ 26 կոմիսարների անվան շրջկոմի երկրորդ քարտուղար Աննա Ստեփանյանը նշեց, որ կուսկոմիտեի հաշվետու զեկուցման ծանրակշիռ մասը վերաբերում է արտադրական հարցերին: Ներկուսակցական աշխատանքներին պակաս ուշադրություն է նվիրված, մի հանգամանք, որը պետք է նկատի ունենա նորընտիր կուսկոմիտեն: Նա միանգամայն տեղին համարեց ժողովում արված քննադատությունը այն ղեկավար ընկերների հասցեին, ովքեր բավարարվում են հեռախոսային հաշվետվություններ ընդունելով և նույնպիսի հրահանգներ տալով: Շրջկոմի քարտուղարը նշեց, որ այդ քննադատությունը վերաբերում է նաև 26 կոմիսարների անվան կուսշրջկոմի ապարատի որոշ աշխատողների:

Այնուհետև հաշվետվության մեջ հանգամանալից խոսվեց կադրային քաղաքականության մասին, շեշտվեց, որ տրեստի կուսկոմիտեն առանձնակի ուշադրություն է նվիրել կադրերի ընտրության, նրանց տեղաբաշխման ու դաստիարակության հարցերին: Հետևողական աշխատանք է տարվել, որպեսզի տրեստի մասնաճյուղերը, շինվարչությունները, մի խոսքով՝ ղեկավար պոստերը գլխավորեն գաղափարապես կոփված մարդիկ, ովքեր օժտված են նախաձեռնողի գործարար հատկություններով: Եվ այսօր կոմունիստներն են գլխավորում տրեստի առավել կարևոր, պատասխանատու տեղամասերը:

Զեկուցման մեջ նշվեց նաև այսպիսի փաստ. հաշվետու ժամանակաշրջանում «Երարդշին» տրեստում աշխատող 95 կոմունիստներ, այսինքն՝ կազմակերպության քառորդ մասը, զանազան պատճառներով հեռացել են տրեստից: Ասվեց նաև, որ երիտասարդ բանվորները չեն ամրապնդվում կառույցներում, որ դեռևս մեծ է հոսունությունը:

Իսկ ինչո՞ւ: Անհանգստացնող չէ՞ն, արդյոք, 95 կոմունիստների աշխատանքից հեռանալը, երիտասարդների մեծ հոսունությունը: Ցավոք, կուսկոմիտեի հաշվետվության մեջ այդ փաստը մեկնաբանվեց շատ անորոշ մի արտահայտությամբ՝ «զանազան պատճառներով»: Գուցե այդ «զանազան պատճառներից» մեկը կոլեկտիվի սոցիալական զարգացման խնդիրների անտեսո՞ւմն է: Հաշվետու զեկուցման մեջ, որը տևեց շուրջ մեկ ժամ, շատ քիչ տեղ տրվեց կոլեկտիվի սոցիալ-մշակութային հարցերին: Ահա այն. «Կուսակցական կոմիտեն տրեստի ղեկավարության և հասարակական կազմակերպությունների հետ համատեղ որոշակի աշխատանք է կատարել բանվորների աշխատանքային պայմանները և հանգիստը բարելավելու նպատակով: Սակայն այդ աշխատանքում դեռևս կան բացթողումներ»:

Երբ ժողովից հետո զրուցում էինք տրեստի միացյալ արհկոմի նախագահ Ժ. Սարգսյանի հետ, նա ասաց, որ տրեստում ավելի քան երեք հազար մարդ է աշխատում, սակայն պրոֆիլակտորիան դեռևս նոր է կառուցվում, պիոներական ճամբար չկա, բանվոր-ծառայողների և նրանց ընտանիքների անդամների հանգիստը կազմակերպելու հնարավորություններ ներկայիս մշակույթի տունը չունի, մարզական հրապարակներ չկան, բնակարանի կարիք ունեցողների թիվը մեծ է, իսկ ֆոնդերը՝ շատ քիչ: Մի խոսքով՝ մարդիկ աշխատում են, իսկ նրանց կենցաղով և հանգստի կազմակերպմամբ հետաքրքրվող չկա: Փաստորեն կուսկոմիտեն այդ կարևոր հարցով հաշվետու ժամանակաշրջանում չի զբաղվել:

Հաշվետու ժողովում ամփոփվեցին արտադրամասային կուսկազմակերպությունների կատարած աշխատանքները: Նշվեց, որ սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում առաջնահերթ նշանակություն է տրվել այն հարցին, որ հարկավոր է անել ամեն ինչ ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումի որոշումները կենսագործելու և ընթացիկ տարվա ու հնգամյա պլանները անթերի կատարելու, կուսակցության առաջիկա XXVII և Հայաստանի կոմկուսի XXVIII համագումարները պատվով դիմավորելու համար:

«Երարդշին» տրեստի կուսկազմակերպության հաշվետու-ընտրական ժողովն անցավ քննադատության և ինքնաքննադատության մթնոլորտում, կոմունիստները հանգեցին այն խորին համոզման, որ անհրաժեշտ է է՛լ ավելի բարձրացնել աշխատանքի որակն ու արդյունավետությունը, մեքենայացնել աշխատատար պրոցեսները:

Ժողովն ընտրեց կուսկոմիտեի նոր կազմ և ՀԿԿ 26 կոմիսարների անվան շրջանի կուսակցական կոնֆերանսի պատգամավորներ: Կուսկոմիտեի քարտուղար ընտրվեց Պ. Մեհրաբյանը:

Երբ ժողովն ավարտվեց, մայրաքաղաքն արդեն ողողվել էր էլեկտրական լույսերով: Եվ այդ լույսերի մեջ մի առանձին գեղեցկությամբ երևում էին այն հոյակապ շինությունները, որոնք կառուցել են տրեստի շինարարները:

**Խ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ**

# ՀԱՅ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՖԵՈԴԱԼԱԿԱՆԱՑՄԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ ՎԱՂ ՄԻՋՆԱԴԱՐՈՒՄ

**Է. ԴԱՆԻԵԼՅԱՆ**
*Պատմական գիտությունների թեկնածու*

Հայաստանը կարևոր դեր է խաղացել Առաջավոր Ասիայի հասարակական-քաղաքական կյանքում, սակայն իր գրաված աշխարհագրական դիրքով այն կովախնձոր է եղել Հռոմեական կայսրության և Պարթևական Իրանի, այնուհետև՝ Արևելյան Հռոմեական կայսրության (կամ, ինչպես ընդունված է ասել Բյուզանդական կայսրության) ու Սասանյան Իրանի, իսկ վերջինիս կործանումից հետո՝ Արաբական խալիֆայության միջև:

Հին աշխարհի սոցիալ-քաղաքական ճգնաժամի պայմաններում, մի քանի տասնամյակ զերծ մնալով օտար տերությունների հարձակումներից, Հայաստանն ապրեց ներքին և արտաքին քաղաքական վիճակի կայունացում: Մեծ Հայքի թագավորությունը ծանր փորձություններից հետո կարողացավ վերականգնել իր տերիտորիալ ամբողջականությունն ու կառավարման համակարգը և հին աշխարհի վերջալույսին քրիստոնեությունն ընդունեց պետական կրոն (301 թ.): Ֆ. Էնգելսը գրել է. «Իր ծագումից երեք հարյուր տարի անց քրիստոնեությունը դարձավ ճանաչված պետական կրոն...» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 22, стр. 467):

Սոցիալ-տնտեսական հարաբերությունները Հայաստանում IV դարի առաջին կեսում զարգանում էին նոր՝ ֆեոդալական հասարակարգի հունով: Վերելք էին ապրում առևտուրը և արհեստները, ձեռնարկվում էին շինարարական և անտառատընկման լայն աշխատանքներ: Այդ ժամանակաընթացքում էլ Մեծ Հայքի թագավորության արքունիքը Արտաշատից տեղափոխվում է Դվին, որը IV դ. երկրորդ կեսից դառնում է երկրի քաղաքական կենտրոնը (տե՛ս *Հայ ժողովրդի պատմություն*, Ե., ԳԱ հրատ., 1984, հ. II, էջ 83, 152): Զգալի տեղաշարժեր եղան հայ հասարակության սոցիալ-դասակարգային կառուցվածքում: Դասակարգային և ներդասային (վերնախավում) պայքարի սրման վկայությունն էին նորակառույց Արշակավանի շուրջ ծավալված իրադարձությունները: Վաղ ֆեոդալական հարաբերությունների ձևավորումն ուղեկցվում էր երկրի սոցիալ-հասարակական կյանքում գյուղական համայնքի տեսակարար կշռի նվազեցմամբ:

Դեռևս մ. թ. ա. II դարում Հայաստանում, պետության հովանավորության շնորհիվ, որն արտահայտվեց Արտաշես I-ի (189—161 թթ. մ. թ. ա.) հայտնի հողային ռեֆորմով, մասնավոր տնտեսությունների՝ ագարակների և դաստակերտների, ինչպես նաև տաճարային տնտեսությունների մրցակցությունը չխափանեց գյուղական համայնքի գոյությունը: Գ. Խ. Սարգսյանն իրավամբ գրում է. «Ռեֆորմը ելնում էր թագավորի հիմնական նեցուկը հանդիսացող նորելուկ հողատեր-ստրկատերերի՝ ռազմավարչական ազնվականության շահերից, քանի որ օրինականացվում էին տեղի ունեցած փոփոխությունները, այսինքն՝ այդ դասի ձեռք բերած նվաճումները: Բայց միևնույն ժամանակ այն ուղղված էր համայնքի դիրքերի եթե ոչ հետագա ամրապնդմանը, ապա գոնե պահպանմանը ինչ-որ հաստատուն մակարդակի վրա (*Հայ ժողովրդի պատմություն*, Ե., ԳԱ հրատ., հ. 1, 1971, էջ 797):



Գյուղական համայնքների հողերի անջատումը սեփականատիրական կալվածքներից կոչված էր ամրապնդելու կենտրոնական իշխանության ռազմատնտեսական հիմքերը: Հետագայում, մասնավոր ժառանգական հողատիրության աճի հետ մեկտեղ, գյուղական համայնքն ավելի ու ավելի է կախվածության մեջ ընկնում հողատերերից և ստանում ֆեոդալականապես կախյալ գյուղի բնույթ (տե՛ս С. Т. Еремян, О рабстве и рабовладении в древней Армении, ВДИ, 1950, № 1, стр. 26):

Վաղֆեոդալական դարաշրջանում առաջին ծանր հարվածը Հայկական թագավորությանը հասցվեց 363 թվականին՝ Հռոմի և Պարսկաստանի միջև կնքված «ամոթալի» պայմանագրով (այդպես է կոչում Ամիանոս Մարկելինոսը), որին հաջորդած պարսկական ասպատակությունները (364—368 թթ.) ավերիչ հետևանքներ ունեցան Հայաստանի համար (տե՛ս Փավստոս Բուզանդ, Դ, խա—ծթ: Հ. Մանանդյան, **Երկեր**, Բ, ՀՍՍՀ ԳԱ հրատ. 1978, էջ 182—193): Հռոմեական կայսրության և Սասանյան Պարսկաստանի միջև 385 թվականին կայացած Հայաստանի բաժանմամբ սկսվեց Մեծ Հայքի Արշակունյաց թագավորության մայրամուտը, չնայած այն հանգամանքին, որ հայոց թագավորներ Խոսրով III-ը (385—388) և Վռամշապուհը (388—414) որոշ ժամանակ հարկ վճարեցին թե՛ կայսերական և թե սասանյան գանձարաններին՝ փորձելով փրկել վիճակը:

Հելլենիստական դարաշրջանից սերող՝ ծագումով արևելաստրկատիրական բնույթի հայ Արշակունիների թագավորության պետական կառուցվածքի բախումը երկրում ձևավորվող ֆեոդալական հարաբերությունների հետ, ֆեոդալական վերնախավի կենտրոնախույս միտումնավորության և նվաճող տերությունների շահանախնդրության պայմաններում, հանգեցրեց Մեծ Հայքի թագավորության անկմանը: 428 թ. Մեծ Հայքի Արշակունիների թագավորությունը մարեց (տե՛ս *Հայ ժողովրդի պատմություն*, հ. II, էջ 107, 125):

Մարքս-լենինյան պատմագիտության ուշադրության առարկան է եղել նվաճող տերությունների սոցիալ-քաղաքական կառուցվածքից և նվաճվող երկրների սոցիալ-տնտեսական ու քաղաքական զարգացումից բխող փոխազդեցությունների խնդիրը:

Հայաստանի նվաճման ժամանակաշրջանում Սասանյան Իրանում և Բյուզանդիայում տիրող սոցիալ-տնտեսական հարաբերություններն ունեին ստրկատիրականից ֆեոդալականին անցնելու բնույթ: Այդ պրոցեսի տարբեր ընթացքը պայմանավորված էր հիշյալ երկրների զարգացման առանձնահատկություններով: Ե՛վ նվաճող, և՛ նվաճվող երկրներում սոցիալ-տնտեսական հարաբերություններն ընթանում էին ֆեոդալականացման պրոցեսների շրջանակներում, որոնք Հայաստանում, ի տարբերություն Սասանյան Իրանի և Բյուզանդական կայսրության, ավելի էին առաջադիմել: Դրա պատճառներից հիմնականը՝ իր բնորրանում, Հայկական լեռնաշխարհում, միաէթնիկ հիմքի վրա հայ հասարակության ներքին, գլխավորապես, անընդմեջ զարգացումն էր նախորդ դարաշրջաններում:

Հայաստանի տարբեր մասերին տիրելով՝ նվաճողները ձգտում էին դրանք դարձնել իրենց տերությունների կցորդները: Այդ արվում էր մի քանի փուլերով. տերիտորիալ բռնազավթում, քաղաքական և տնտեսական ճնշում, հոգևոր ստրկացում: Նվաճող տերությունները Հայաստանում իրականացնում էին իրենց ընդհանուր պետական՝ ռազմավարչական և տընտեսական ռեֆորմները, որոնք ամենևին չէին համընկնում հայ հասարակության զարգացման օրինաչափություններին, ընդհակառակը՝ երկրում գոյություն ունեցող սոցիալ-տնտեսական հարաբերությունների խոչընդոտման աղբյուր էին: Համաշխարհային պատմական փորձը ևս ցույց է տալիս արտաքին քաղաքական ու գաղափարական գործոնների զգալի ազդեցությունը ներփորմացիոն պրոցեսների վրա (տե՛ս Ե. Մ. Ժուկով):

Անհրաժեշտ է նշել, որ ընդհանուր պետական ռեֆորմներով Բյուզանդիայի ու Իրանի տիրակալները ձգտում էին համահարթել նվաճված երկրների հասարակությունների զարգացման մակարդակները և կարգավորել իրենց երկրների ֆեոդալականացման պրոցեսներից բխող այն միտումները, որոնցից ծագող երևույթները կարող էին բախվել դեռևս ստրկատիրական հասարակարգից սերող կառավարման պետական համակարգերի հետ: Այդ առումով ավելի կենսունակ գտնվեց Բյուզանդական կայսրությունը:

Հուստինիանոս I-ի (527—565 թթ.) և Խոսրով Անուշիրվանի (531—579 թթ.) ռեֆորմները խիստ բացասաբար ազդեցին Հայաստանի սոցիալ-տնտեսական զար-

գացման և քաղաքական կյանքի վրա: Հուստինիանոսի ռեֆորմներով Հայաստանի բյուզանդական հատվածի հայ հասարակության հետագա գոյատևումը հարմարեցվում էր բյուզանդական պետականության նորմերին: Այդ ցայտուն դրսևորվեց Հուստինիանոսի՝ «Հայերի մասին, որպեսզի նրանք ևս ամեն ինչում հետևեն հռոմեացիների օրենքներին» հրահանգում (Н. Адонц, Армения в эпоху Юстиниана, Ер., 1971, стр. 181—184): Հայաստանի բյուզանդական հատվածին վերապահվում էր դառնալ սահմանային ռազմականացված գոտի Պարսկաստանի դեմ մղված պայքարում: Վերածվելով ռազմական ամրությունների շրջանի՝ Հայաստանի այդ հատվածը կորցնում էր տնտեսական ու քաղաքական կապերը մյուս մասի հետ: Այդ երկրամասի քաղաքները, զրկվելով տարանցիկ առևտրի հնարավորություններից, դադարեցին առևտրի և արհեստների կենտրոններ լինելուց (ինչպիսին էին դարեր շարունակ) և դարձան ռազմական ուժերի կենտրոնատեղիներ: Խախտելով հայ ժողովրդի դարավոր ավանդույթները՝ Հուստինիանոս I-ը իր ռեֆորմներով հասավ այն բանին, որ Բյուզանդիայի տիրապետության տակ գտնվող հայկական հողերում սկսեցին առաջանալ բյուզանդական Փոքր Ասիային բնորոշ սոցիալական ու տնտեսական կենցաղի հատկանիշներ. գյուղում գերակշռում էին մանր հողատերերի տնտեսությունները՝ միավորված համայնքներում, որոնք ավելի ու ավելի էին կորցնում իրենց ազատությունը՝ տնտեսական կախվածության մեջ ընկնելով Արշակունիների նախկին պետական դոմենի տերիտորիաները զավթած խոշոր և մանր հողատերերից (տե՛ս Очерки истории СССР, стр. 213):

Խոսրով I Անուշիրվանի ռազմավարչական և հարկային ռեֆորմներով Հայաստանի՝ պարսկական տիրապետության տակ անցած մասը, որպես առանձին մարզպանություն, Ատրպատականի, Վիրք-Քարթլիի և Աղվանքի հետ մեկտեղ մտցրվեցին Սասանյան Իրանի Հյուսիսային Քուստակի կազմի մեջ՝ Ատրպատականի Գանձակ կենտրոնով: Բնակչության, հատկապես շահագործվող մասի վրա ընկավ հարկային (բնամթերքով և դրամով) ծանր լուծը: Հարկի գանձումը դրամով Հայաստանի համար նոր երևույթ էր և կրկնակի վնասակար. դրամը, դուրս գալով երկրի ներքին շրջանառությունից, արտահոսում էր նվաճող տերության գանձարանը (դրանով խախտվում էր առևտրատնտեսական բալանսը Հայաստանում): Այդ երևույթը, չբխելով Հայաստանի սոցիալ-տնտեսական զարգացման ներքին ընթացքից, քայքայում էր երկրի տնտեսական հիմքերը: Նվաճողների համար շահավետ էին դրամական գանձումները, որոնք, հոսելով արքունական գանձարանը, ավելի էին ուռճացնում այնտեղ կուտակված հարստությունները: Պարսկական և բյուզանդական տիրապետության ծանր լուծը քայքայված ու ընչազուրկ գյուղացիներին դուրս էր մղում բնամթերային արտադրության ոլորտից, և նրանք ստիպված հեռանում էին իրենց հարազատ վայրերից:

Ժողովրդի քաղաքական և սոցիալական ազատագրման ուղին անցնում է կենաց ու մահու պայքարի միջով, որը Հայաստանում V—VI դդ. ընթացքում արտահայտվեց օտար նվաճողների դեմ բռնկված համաժողովրդական հուժկու ապստամբություններով: «Քանի դեռ կենունակ ժողովուրդը շղթայված է օտար նվաճողների կողմից,— գրել է Ֆ. Էնգելսը,— նա, ըստ անհրաժեշտության, իր բոլոր ուժերը, իր բոլոր ձգտումները, իր ողջ եռանդն ուղղում է ընդդեմ օտար թշնամու, և քանի դեռ նրա ներքին կյանքը մնում է այդպիսով կաթվածահար, նա ընդունակ չէ պայքարելու սոցիալական ազատագրության համար» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 18. стр. 555):

Հայ ժողովուրդը, շնորհիվ համառ պայքարի, կարողանում էր ժամանակ առ ժամանակ հասնել նշանակալից արդյունքների և Հայաստանը զերծ պահել իսպառ կլանումից: «Հայկական ֆեոդալիզմի կայունացման ու հարատևման համար,— գրել է Հ. Մանանդյանը,— 484 թվի դաշինքը կարելի է, անտարակույս, համարել մի նոր դարաշրջանի սկիզբ, որը տևել էր այնուհետև մինչև արաբական տիրապետությունը» (Հ. Մանանդյան, **Ֆեոդալիզմը Հին Հայաստանում**, Եր., 1934, էջ 293):

Ֆ. Էնգելսը, ավելի ուշ ժամանակաշրջանի առումով, գրելով մահմեդականի համեմատ քրիստոնյա աշխարհում կրոնական երանգավորումով տեղի ունեցած ժողովրդական ապստամբությունների առաջադիմական նշանակության մասին, նշել է. «Քրիստոնյա Արևմուտքի ժողովրդական ապստամբություններում կրոնական թաղանթը ծառայում է միայն որպես դրոշ և քող հնացող տնտեսական կարգի վրա հարձակվելու համար, վերջինս ի վերջո տապալվում է, դրան փոխարինում է նո-



րը, աշխարհը շարունակում է զարգանալ» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 22, стр. 468):

Վաղֆեոդալական ժամանակաշրջանի հայ մշակույթը օտար ծանր լծի պայմաններում վերելք ապրեց, որն ազատագրական պայքարի հիմնական դրսևորումն էր հոգևոր և գաղափարական ասպարեզներում: Ազգային ինքնատիպ մշակույթի համար հայ ժողովրդի մղած պայքարը պատասխանն էր նվաճողների ուծացման քաղաքականության: Հայրենիքի ազատագրության համար մղած պայքարն իմաստավորված էր հայրենասիրական պարտքի խոր գիտակցությամբ:

Դժվարին գոյամարտում հայ ժողովուրդն օտար նվաճողներին դիմակայել է ո՛չ միայն զենքով, այլև գիր ու գրականությամբ, հոգևոր ու նյութական մշակույթի արժեքներով: Համակված հայ ժողովրդի ազատագրման վեհ գաղափարով՝ գիտության ու լուսավորության առաջամարտիկներն իրենց հայրենանվեր գործունեությամբ մեծագույնս նպաստեցին հարազատ ժողովրդի լայն խավերի գաղափարական միաձուլմանը՝ կենաց ու մահու պայքարում: Հայ լուսավորիչները զրադաշտական խավարամոլության դեմ ծավալված պայքարը վարում էին ժողովրդական զանգվածների հոգևոր ու մտավոր աշխարհը հարստացնելու հունով:

Պատմական տարբեր ժամանակաշրջաններում և հակառակ իրավիճակներում են տեղի ունեցել հայ վաղմիջնադարյան մշակութային վերելքը և եվրոպական վերածնունդը: Առաջինը Վահագնի նման ծնունդ առավ բոցի մեջ, հայ ժողովրդի գոյատևման համար մղված մարտերում, իսկ երկրորդը զարթոնք էր եվրոպական ժողովուրդների մշակութային կյանքում՝ արգասիք դարակազմիկ երևույթների: Սակայն երկու դեպքում էլ պահանջվեցին մտավոր հզոր կարողությամբ օժտված անհատներ, Մեսրոպ Մաշտոցի, Կորյունի, Ագաթանգեղոսի, Փավստոս Բուզանդի, Եղիշեի, Եզնիկ Կողբացու, Ղազար Փարպեցու, Մովսես Խորենացու, Դավիթ Անհաղթի, հետագայում Անանիա Շիրակացու և նրանց գրչընկերների ու համախոհների հայրենանվեր գործունեության արդյունքը եղավ օտար տիրապետության դեմ մղած պայքարում ծնված, ազգային խոր արմատներ գցած ու հարատևող ժառանգությունը:

VI դարի վերջից, երբ Հայաստանի մեծ մասը՝ 591 թվականի պարսկաբյուզանդական պայմանագրով անցավ բյուզանդական կայսրությանը, երկրի ֆեոդալական հարաբերությունների զարգացմանը խոչընդոտող հանգամանքներին գումարվեց Մավրիկիոսի (582—602) քաղաքականությունը, որի նպատակն էր, սասանյան արքայի հետ միաբանելով, Հայաստանը լիցքաթափել ռազմական ուժերից և դրանք օգտագործել նվաճող տերությունների հեռավոր սահմանների վրա: Մավրիկիոսը Խոսրով Փարվեզին հղած նամակում գրել է. «Ազգ մի խոտոր և անհնազանդ... կան ի միջի մերում և պղտորեն: Բայց եկ... ես զիմս ժողովեմ և ի Թրակէ գումարեմ և դու զքոյդ ժողովէ և հրամայէ յԱրևելս տանել: Զի եթէ մեռանին՝ թշնամիք մեռանին. և եթէ սպանանեն՝ զթշնամիս սպանանեն. և մեք կեցցուք խաղաղությամբ: Զի եթէ դոքա յերկրի իւրեանց լինիցին՝ մեզ հանգչել ոչ լինի» (**Պատմութիւն Սեբէոսի,** աշխատասիրությամբ Գ. Վ. Աբգարյանի, Եր., 1979, էջ 86): Նման քաղաքականություն վարում էր դեռևս Հազկերտ *II*-ը (439—457): Հայոց այրուձին նա օգտագործում էր Իրանի արևելյան ծայրամասերում ընթացող մարտերում, իսկ խաղաղ ժամանակ պահում Հայաստանից հեռու գտնվող ռազմական ճամբարներում, նպատակ ունենալով թուլացնել երկրի դիմադրողական ուժերը: Հազկերտի ձեռնարկումները և, համարյա մեկ ու կես դար անց, «Մավրիկիոսի դոկտրինան», որի էությունն էր Հայաստանի տերիտորիան դարձնել անպաշտպան, մեռյալ գոտի՝ ի բարօրություն օտար նվաճողների, նախօրինակ են XIX դարի վերջին և XX դարի առաջին տասնամյակներում իմպերիալիստական տերությունների թողտվությամբ հայ ազգաբնակչության հանդեպ թուրքական կառավարության և ջարդարարների վարած մարդատյաց քաղաքականության, քաղաքակիրթ մարդկության բանականությունից դուրս մի վայրագ քաղաքականություն, որի բարձրակետը եղավ 1915 թվականի ցեղասպանությունը:

Պարսկական և բյուզանդական տիրապետության ժամանակաշրջանում հայոց ռազմական ուժերի Հայաստանից դուրս տարվելը, քայքայված աշխատավորության արտագաղթը և պարսկաբյուզանդական պատերազմների ընթացքում մի կողմից ազգաբնակչության կոտորածը, իսկ մյուս կողմից գերեվարությունները խիստ բացասական հետևանքներ ունեցան երկրի դեմոգրաֆիական պատկերի վրա: Դվինի 645 թ. ժողովի յոթերորդ կանոնից (որը կոչված էր կարգավորելու գերեվարու-

թյունների հետևանքով երկրում ստեղծված վիճակը ամուսնությունների բնագավառում) հետևում էր, որ Օրենսդիր մարմին հանդիսացող հայոց եկեղեցին փորձում էր ինչ-որ չափով Հայաստանը դուրս բերել դեմոգրաֆիական ճգնաժամից (տե՛ս Կանոնագիրք Հայոց, աշխատ. Վ. Հակոբյանի, Բ. ԼԸ, Եր., 1971, էջ 205—206):

VII դարի առաջին տասնամյակներում առավել հստակ ի հայտ եկավ, որ Սասանյան Իրանի պետական և սոցիալական կառուցվածքն իր դարն ապրել է: Սասանյանների դինաստիան հսկայական ճիգեր գործադրեց քաղաքական ասպարեզում մնալու համար: Նրա գոյատևման հիմնական պայմաններից էր այն եկամուտը, որը հարկային ճնշման, ավարառության և կողոպուտի միջոցով ստացվում էր զավթված երկրներից: Հսկայածավալ նվաճումների միջոցով այդ պետությունը կարճ ժամանակով կարողացավ երկարաձգել իր մայրամուտը: Սասանյանների ռազմական հաջողություններին նպաստեց այն ծանր վիճակը, որում այն ժամանակ գտնվում էր Բյուզանդական կայսրությունը: Տնտեսական ճգնաժամը և ստրկատիրական հասարակարգի քայքայումը պատճառ էին դարձել VI դ. վերջում և VII դ. սկզբներին դասակարգային պայքարի սրման՝ կայսրության խոշորագույն կենտրոններում (տե՛ս Н. В. Пигулевская, Византия и Иран на рубеже VI—VII вв., М.—Л., 1946, стр. 197—198, նույնի Византия на путях в Индию, М., 1951, стр. 403):

Այդ պայմաններում Խոսրով Փարվեզը (591—628 թթ.) զգալի երկրամասերի տիրացավ Միջագետքում, Հայաստանում, Փոքր Ասիայում, Պաղեստինում և Եգիպտոսում: Դառնալով պարսկաբյուզանդական պատերազմական գործողությունների թատերաբեմ՝ Հայաստանը կրկին ենթարկվեց ավերածությունների, ավարառության և գերեվարության:

Ստեղծված իրավիճակում սասանյան արքունիքը պետք է գործ ունենար նվաճված հսկայական տերիտորիայի վրա բնակվող այլադավան բնակչության հետ: Խոսրով Փարվեզը փորձեց ամրապնդել իր նվաճումները՝ օգտվելով հրեաների ու քրիստոնյաների փոխադարձ թշնամությունից ու քրիստոնյա կրոնի տարբեր ուղղությունների սպասավորների միջև եղած հակասություններից: Տիզբոնում հրավիրված նվաճված երկրների քրիստոնեական եկեղեցիների ժողովում (615 կամ 616 թ.) Խոսրովը առաջնությունը տվեց հայոց եկեղեցու դավանանքին (**Պատմութիւն Սեբէոսի**, էջ 151): Նրա այդ վճիռը բխում էր սասանյանների քաղաքական շահերից: Ձնայած տերիտորիալ նվաճումների նախաձեռնությունը Պարսկաստանինն էր, այնուամենայնիվ, կայսրության արտաքին քաղաքականության մեջ կարևոր գործոն էր մնում քաղկեդոնական դավանանքի կիրառման ոլորտի ընդլայնումը: Ուստի Խոսրովը հանդես եկավ հայոց միաբնակ եկեղեցու (որը մերժողական դիրք էր գրավել քաղկեդոնականության հանդեպ) «հովանավորի» դերում: Եթե հիշենք սասանյանների դարավոր թշնամանքը հայ ժողովրդի նկատմամբ, ապա պարզ կդառնա այն հեղհեղուկ վիճակը, որը, չնայած տերիտորիալ զգալի նվաճումներին, ստեղծվել էր կործանման եզրին կանգնած Սասանյան Իրանի համար: Հայոց միաբնակ եկեղեցու հանդեպ վարած քաղաքականության կտրուկ շրջադարձը պայմանավորված էր քաղաքական, սոցիալ-տնտեսական և գրադաշտական դավանանքի գաղափարախոսության բնագավառներում Սասանյանների պետության խոր ճգնաժամով:

Հասարակարգային և քաղաքական առումով Բյուզանդիան ավելի կենսունակ գտնվեց, քան Սասանյան Իրանը: Հերակլ կայսեր (610—641 թթ.) ռազմավարչական բնույթի ռեֆորմները նպաստեցին կայսրության հակահարձակման անցնելուն: Խոսրով Փարվեզի նվաճումներին կարճ ժամանակում վերջ տվեց Հերակլը. մի քանի արշավանքներ ձեռնարկեց նա VII դարի 20-ական թթ. ընթացքում: Հայաստանը շարունակեց մնալ հակամարտող տերությունների ռազմական գործողությունների թատերաբեմ:

Վաղֆեոդալական ժամանակաշրջանում պարսկական և բյուզանդական տիրապետությունը խիստ բացասական նշանակություն ունեցավ Հայաստանի սոցիալ-տընտեսական և քաղաքական զարգացման համար. առանց այդ էլ ֆեոդալական դարաշրջանին բնորոշ մասնատվածության պայմաններում, երկրի երկարատև բաժանվածության հետևանքով, թուլացել և որոշ դեպքերում խափանվել էին տնտեսական ու քաղաքական կապերը առանձին երկրամասերի ու շրջանների միջև: Այդ ժամանակաշրջանից սկիզբ առած իրադարձությունները հող նախապատրաստեցին թե՛ նոր նվաճումների և թե դրանց իրականացմամբ հայ ֆեոդալական հասարակության զարգացման ընթացքի կասեցման համար:



Մինչ իրար դեմ պայքարում էին Բյուզանդիան ու Պարսկաստանը, ասպարեզ եկավ Արաբական խալիֆայությունը, որը կարճ ժամանակում կլանեց Սասանյանների պետությունը և դարձավ Բյուզանդական կայսրության լուրջ մրցակիցը: Սկզբնական ժամանակաշրջանում Հայաստանը չնվաճվեց խալիֆայության կողմից: Արաբական առաջին արշավանքները* ավարտվեցին ավարառությամբ, ավերածություններով, կողոպուտով ու գերեվարությամբ: Ռազմավարական առումով դրանք հետախուզական բնույթի արշավանքներ էին՝ անդրկովկասյան երկրները նվաճելու համար հենակետեր ստեղծելու նպատակով: Խալիֆայության առաջխաղացմամբ փոփոխվում էր ուժերի հարաբերակցությունը: Սասանյանների պետության փլուզման պայմաններում բավականին ինքնուրույն հակահայկական քաղաքականություն սկսեց վարել «Մարաց իշխանությունը» (**Սեբէոս**, էջ 143): Բյուզանդական կայսրության և այդ իշխանության միջև VII դ. 30-ական թթ. կնքված և 646 թ. վերահաստատված դաշինքը թվում է թե օբյեկտիվորեն պետք է ուղղվեր իր նվաճումները ընդլայնող խալիֆայության դեմ, սակայն այն ուղղվեց արաբական նվաճումներին դիմակայող Հայաստանի դեմ: Արդյունքը չհապաղեց. հաջորդ տարի (647 թ.) արաբները ավերիչ արշավանք ձեռնարկեցին Հայաստանում, Վիրքում և Աղվանքում: Նույն ժամանակ կամ մեկ-երկու տարի անց «Մարաց իշխանությունն» ընկավ խալիֆայության տիրապետության տակ:

Բյուզանդիայի նվաճողական քաղաքականությունը, հայ ժողովրդին ուղղակի չարիք լինելուց բացի, նաև ուղիներ էր բացում հարավից և արևելքից եկող հրոսակախմբերի համար, որոնց ներխուժումները աղետալի էին Հայաստանի համար: Կայսրությունը խալիֆայության առաջխաղացման սկզբնական շրջանում ավանդաբար շարունակեց իր նվաճողական քաղաքականությունը Հայաստանի հանդեպ, չընայած ստեղծված միջազգային իրավիճակում շոշափելի արդյունքի չհասավ: VIII դ. սկզբներին իր տիրապետության հաստատումը Հայաստանում խալիֆայությունն ընկնեց արյունալի կոտորածներով: Հայ ժողովրդի պատմության այդ ողբերգական ժամանակաշրջանի մասին Ղևոնդը գրել է. «Մահմետը կարգադրեց ոմն Կասիմի... իր մոտ կանչել Հայաստանի նախարարներին, իրենց հեծյալներով մեկտեղ... Ոմանց հավաքեցին Նախճավանի եկեղեցում, իսկ մյուս կեսը ուղարկեցին Խրամ ավանը և նրա եկեղեցին նետելով՝ նրանց վրա պահապաններ կարգեցին... Ազատատոհմ մարդկանց դուրս բերեցին արգելանոցից, իսկ նրանց, որ սրբարանում արգելափակված էին, հրկիզեցին ու տոչորեցին սատրվածային խորանի կամարների տակ: ...Իսկ ազատանի նախարարներին... սպանեցին (կախաղանի) փայտից կախելով: ...Այդ ժամանակ մեր Հայոց աշխարհը թափուր մնալով նախարարական տոհմերից, գայլերի մեջ մնացած ոչխարների նման եղավ: Թշնամիները անօրինակ չարիքներ պատճառեցին և մեր Հայոց աշխարհի բնակիչներին այնպիսի անհուն աղետների մեջ էին պահում, որ տանջվելով անտրդար նեղություններից, երկինք էին բարձրանում հառաչանքների և հեծությանն աղաղակները» (Ղևոնդ, **Պատմություն**, թարգմ. Ա. Տեր-Ղևոնդյանի, Եր., 1982 , էջ 38—40): Վ. Հակոբյանը **Կանոնագիրք Հայոցի** առաջաբանում (Եր., 1964, էջ XIII) ճիշտ է եզրակացրել. «Արաբները VIII դ. սկզբներին, ոչնչացնելով հայ ազնվականության զգալի մասը, ձըգտեցին թուլացնել հայ նախարարների զինված ուժերը: Եվ երբ այդ բանը արդեն ժամանակավորապես նրանց հաջողված էր, խալիֆաթը Հովհաննես Օձնեցու միջնորդությամբ նոր միայն ազատեց աքսորված նախարարների մի մասին, որը վերադարձավ հայրենիք և օտար իշխողների «ողորմածության» շնորհիվ ստացավ իր կորցրած վաղեմի հողերն ու արտոնությունները: Մինչդեռ աշխատավոր ժողովրդի վրա ընկած էին պատերազմական ավերածությունների հետևանքները և հարկային լուծը»:

Խալիֆայությունը զարգացման ցածր մակարդակի վրա գտնվող վաչկատուն, խաշնարած ցեղերի պետական միավորում էր: Այն, բնականաբար, արտադրության առաջավոր ձև չհաստատեց Հայաստանում: Խալիֆայության նվաճումները Հայաստանում տիրող սոցիալ-տնտեսական հարաբերությունների դեֆորմացիայի աղբյուր են հանդիսացել:

* *Դրանց մասին հայտնվել են տարբեր կարծիքներ: Աղբյուրների քննությունը ցույց է տալիս, որ 640 և 641 թթ. արաբները կատարեցին չորս արշավանք դեպի Հայաստան: Դվինը գրավվեց արաբների կողմից 641 թ. հոկտեմբերի 12-ին:*

Խալիֆայության տիրապետության ժամանակաշրջանում հայ ժողովրդին բաժին հասած արհավիրքներին գումարվեց նաև մի այնպիսի իրողություն, որը կործանարար հետևանքներ ունեցավ հետագայում: Խոսքը արաբական խաշնարած ցեղերի վերաբնակեցման մասին է Հայկական լեռնաշխարհի կենտրոնական հրաբխային սարահարթի մարգագետիններով հարուստ շրջաններում, որոնք հիանալի արոտավայրեր էին: Այդ հանգամանքն ազդեց որոշ գավառների դեմոգրաֆիական պատկերի վրա: Երկրում արտադրաուժերը զրկվում էին հիմնական արտադրամիջոցից՝ հողից: Ուրեմն, Հայաստանում վաղֆեոդալական հարաբերությունների դեֆորմացիայի հիմնական պատճառներից էր խալիֆայության տիրապետության պայմաններում ֆեոդալական արտադրաեղանակի բազիսը հանդիսացող գյուղացիական տնտեսությունների քայքայումը:

Խալիֆայության տիրապետության ժամանակ ֆեոդալական հասարակական տնտեսական հարաբերությունները Հայաստանում երկարատև ճգնաժամ ապրեցին: Հայկական ֆեոդալական հասարակության անցումը նոր, ավելի զարգացած հարաբերությունների փուլին կասեցվեց մինչև IX դարի կեսը:

Հասարակական-տնտեսական որևէ ֆորմացիայի զարգացմանն անդրադառնալիս անհրաժեշտ է ղեկավարվել Վ. Ի. Լենինի հետևյալ նկատառումով. «Մինչև այժմ սոցիոլոգները հասարակական երևույթների բարդ ցանցի մեջ դժվարանում էին տարբերել կարևոր և անկարևոր երևույթները (դա սուբյեկտիվիզմի արմատն է սոցիոլոգիայի մեջ) և չէին կարողանում օբյեկտիվ չափանիշ գտնել այդպիսի սահմանազատման համար: Մատերիալիզմը միանգամայն օբյեկտիվ չափանիշ տվեց՝ զատելով **արտադրական հարաբերությունները**, իբրև հասարակության կառուցվածք, և հնարավորություն տալով այդ հարաբերությունների նկատմամբ կիրառելու կրկնելիության այն ընդհանուր-գիտական չափանիշը, որի կիրառելիությունը սոցիոլոգիայի նկատմամբ ժխտում էին սուբյեկտիվիստները... Հասարակական նյութական հարաբերությունների վերլուծությունը... միանգամից հնարավորություն տվեց նշմարելու կրկնելիությունն ու կանոնավորությունը և ընդհանրացնելու տարբեր երկրների կարգերը **հասարակական ֆորմացիա** մի հիմնական հասկացության մեջ: Հենց միայն այդպիսի ընդհանրացումն էր, որ հնարավորություն տվեց հասարակական երևույթների նկարագրությունից... անցնելու նրանց խիստ գիտական վերլուծությանը...» (Վ. Ի. Լենին, **ԵԼԺ**, հ. 1, էջ 158—159): Լենինյան այս մտքի լույսի ներքո պարզ է դառնում, որ հասարակական-տնտեսական որևէ ֆորմացիայի զարգացման մասին խոսք կարող է լինել այն դեպքում, երբ առկա են այդ պրոցեսը պայմանավորող, առաջընթաց ապրող բազիսային ու վերնաշենքային գործոնները:

Հայաստանում խալիֆայության տիրապետության վերացմամբ (արտաքին հանգամանքների հետ մեկտեղ այն արագացվեց VIII—IX դդ. հայ ժողովրդի ապստամբություններով) ներքին և արտաքին պայմանները նպաստեցին ֆեոդալական հարաբերությունների զարգացմանը և անցմանը դրանց հասուն փուլին (տե՛ս С. Т. Еремян, Опыт периодизации истории Армении эпохи феодализма, «Вопросы истории», 1951, № 7, стр. 57). որի քաղաքական դրսևորումներից էր հայ ֆեոդալական պետականության վերականգնումը՝ ի դեմս հայ Բագրատունիների թագավորության: «Ավելի ընդարձակ տերիտորիաների միավորումը ֆեոդալական թագավորությունների մեջ,— գրել են Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը,— պահանջ էր ինչպես հողային ազնվականության, այնպես էլ քաղաքների համար: Դրա համար էլ տիրապետող դասակարգի՝ ազնվականության կազմակերպության գլուխ ամենուրեք կանգնած էր միապետը» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, **Ընտիր երկեր**, հ. 1, «Հայաստան» հրատ., 1972, էջ 16):

Այսպիսով, կարելի է եզրակացնել, որ Հայաստանում ֆեոդալական հարաբերությունների ձևավորման ու զարգացման պրոցեսները դանդաղեցվում և որոշ դեպքերում կասեցվում էին օտար լծի հաստատման հետևանքով, իսկ անցումն այդ հարաբերությունների հասուն փուլին արդյունք էր հայ հասարակության ներքին զարգացման, որն զգալի չափով պայմանավորված էր հայ ժողովրդի՝ օտար նվաճողների դեմ մղած անկոտրում ու տևական պայքարով:

---



# ԳԻՏԱԿԱՆ ԿՈԼԵԿՏԻՎԻ ՍՈՑԻԱԼ-ՀՈԳԵԲԱՆԱԿԱՆ ՆԿԱՐԱԳԻՐԸ

Մեր հասարակության մեջ գնալով ավելի է մեծանում աշխատաքային կոլեկտիվի սոցիալ-հոգեբանական կլիմայի նշանակությունը, որի կառավարումն ու կատարելագործումը կապահովեն կոլեկտիվի մտավոր ու ֆիզիկական ուժերի լիակատար բացահայտումը, ստեղծագործական արդյունավետության բարձրացումը:

Տարբեր կերպ են վերաբերվում գիտնականները կոլեկտիվի սոցիալ-հոգեբանական կլիմայի հետ կապված հարցերի պարզաբանմանը: Օրինակ, ըստ Ե. Կուզմինի այդ մարզում կարևոր են նրա անդամների փոխհարաբերությունները (տե՛ս Е. С. Кузьмин. Социальная психология, Л. 1979, стр. 193): Գ. Մոշյոնովն ու Վ. Անտոնյուկը նշում են կոլեկտիվի անդամների օբյեկտիվ կապերը: Գ. Վինոգրադովը հայտնում է այն տեսակետը, ըստ որի սոցիալ-հոգեբանական կլիման որոշվում է աշխատողների համախմբվածությամբ և նրանց կողմից ստեղծագործական մթնոլորտի գնահատմամբ (տե՛ս Г. В. Виноградов. Оценка уровня психологического климата научного коллектива. Л., 1973, стр. 145): Ըստ Բ. Պարիգինի, կոլեկտիվի սոցիալ-հոգեբանական կլիման նրանում գերակշռող և առավել կայուն հոգեկան տրամադրությունն է, որը բազմազան ձևերով հանդես է գալիս նրա գործունեության ողջ ընթացքում (տե՛ս Б. Д. Парыгин. Социально-психологический климат коллектива. Л., 1981, стр. 11):

Ընդհանրացնելով այս ամենը՝ ասենք, որ կոլեկտիվի սոցիալ-հոգեբանական կլիման ընդգրկում է աշխատողների վերաբերմունքն աշխատանքի նկատմամբ, նրանց միջև եղած գործնական ու անձնական հարաբերությունները, անձի վերաբերմունքն իր իսկ հանդեպ, ինքնարտահայտումը: Այս երեք գործոնները մշտապես գտնվում են փոխներգործության մեջ: Ինքնըստինքյան պարզ է, որ ամենակարևոր գործոնը աշխատողների վերաբերմունքն է կատարած աշխատանքի նկատմամբ, քանի որ վերջինիս մակարդակից է կախված տնտեսական արդյունավետության աստիճանը: Վերջինս հանդես է գալիս որպես հիմնաքար մարդկանց կենսամակարդակի բարձրացման գործում: Ցյումեն քաղաքի աշխատավորության հետ ունեցած հանդիպման ժամանակ ընկ. Մ. Ս. Գորբաչովն իր ելույթում ասաց. «Յուրաքանչյուր ոք, ինչ աշխատանքով էլ որ նա զբաղվելիս լինի մեր հասարակության մեջ, պետք է լինվին պատասխանատու լինի հանձնարարված գործի համար, այն կատարի մեծ բարեխղճությամբ, ջանադրությամբ ու ձեռներեցությամբ»:

Յուրաքանչյուր կոլեկտիվի սոցիալ-հոգեբանական կլիման սերտորեն կապված է գիտատեխնիկական առաջընթացի հետ: Վերջինս մուտք է գործել մարդկային գործունեության բոլոր բնագավառները: Տեխնիկապես կատարելագործված և գեղագիտորեն ձևավորված դազգահի կամ սարքի հետ առնչվող բանվորի արտադրողականությունը բարձր է: Զարգանում են նրա մտային կարողությունները, մշակվում, հղկվում է նրա բարոյական վարքագիծը, որը և նպաստում է աշխատողների փոխհարաբերությունների բարելավմանը: Գիտատեխնիկական առաջընթացը դրդիչ հանգամանք է նաև աշխատողների ինքնահաստատման ձգտումը բարձրացնելու գործում:

Հիրավի, զգալի է գիտատեխնիկական առաջընթացի դերը աշխատավորական կոլեկտիվների սոցիալ-հոգեբանական իրավիճակի կարգավորման գործում: Տեխնիկայի վերջին խոսքով հագեցված սարքավորումներն ու ապարատները, անշուշտ, ոչ միայն հեշտացնում են աշխատանքը, այլև բարձրացնում են աշխատողի տրամադրությունը, նպաստում նրա մասնագիտական կատարելագործմանը: Վերջինս դրական ազդեցություն է ունենում կոլեկտիվի անձնակազմի փոխհարաբերությունների վրա: Սոցիալ-հոգեբանական կլիման իր հերթին ազդում է գիտատեխնիկական առաջընթացի տեմպերի վրա: Աշխատանքի նկատմամբ հոգատար վերաբերմունքը մեծապես նպաստում է աշխատողի ստեղծարար հակումների դրսևորմանը:

Դրական ներգործություն ունի գիտատեխնի-

կական առաջադիմությունը կոլեկտիվի անդամների մասնագիտական ու հանրակրթական գիտելիքների հարստացման առումով: Կենսական անհրաժեշտություն է, որպեսզի գիտաշխատողը հաղորդակցվի գիտատեխնիկական առաջընթացի նորամուծություններին, հակառակ դեպքում նա կարող է ետ մնալ: Իրողություն է, որ գիտատեխնիկական և հասարակական ինֆորմացիան բացում է լայն հնարավորություններ անձի մտավոր ու հոգեկան պոտենցիալի հետագա զարգացման համար: Ինչպես ընկ. Մ. Ս. Գորբաչովն է նշում. «Մեզ հարկավոր է այնպիսի մեխանիզմ, որը ռեալ կերպով առավելություններ ապահովի այն աշխատավորական կոլեկտիվների համար, որոնք հաջողությունների են հասնում գիտատեխնիկական առաջադիմությունն արագացնելու գործում»:

Գիտատեխնիկական առաջընթացն ու գիտական կոլեկտիվի սոցիալ-հոգեբանական իրավիճակը մշտապես փոխներգործում են իրար վրա: Վերջինս յուրովի է ներազդում կոլեկտիվի անդամների՝ գործի նկատմամբ ունեցած վերաբերմունքի վրա:

Գիտահետազոտական աշխատանքը պահանջում է մտային ողջ ունակությունների լարում: Վերջինս ենթադրում է ֆիզիոլոգիական, հոգեբանական և սոցիալական մի շարք գործոնների առկայություն: Աշխատողի նվիրվածությունը գիտական հետազոտությանը կարող է նվազել, երբ այն վեր է նրա կարողություններից, կամ՝ հակառակը:

Հաճախ աշխատողի ներգրավումը գիտական հետազոտությանը պայմանավորված է լինում այդ աշխատանքի սպասվելիք արդյունքներով և վարձատրման օբյեկտիվությամբ: Գիտությանը նվիրվելը կախված է նաև թեմատիկայի ընտրությունից: Ընդհանրապես գիտաշխատողն իր ողջ ստեղծագործական կորովը ներդնում է գիտական գործունեության մեջ, որը մեծ մասամբ ուղեկցվում է դրական հույզերով: Նա ուրախանում է հանրօգուտ, հեղինակությունը բարձրացնող նոր հայտնագործության համար: Գիտաշխատողի՝ գործի նկատմամբ ունեցած վերաբերմունքի համար էական նշանակություն ունեն աշխատանքի և ժամանակի ճիշտ կազմակերպումը, բնակարանային բարվոք պայմանները, ընտանեկան դրությունը և այլն:

Ինչ վերաբերվում է աշխատողների փոխհարաբերությանը, ապա գիտական կոլեկտիվում դրանց մակարդակը որոշվում է ոչ թե անձնական համակրանքով կամ հակակրանքով, այլ գիտաստեղծագործական ներդաշնակությամբ: Համախոհությունը գիտական կոլեկտիվում դրսևորվում է գործնական հարաբերություններում, ստեղծագործական ծրագրերում, աշխատողների գործիմացության մեջ: Պատահում է, որ պայծառ մտահղացումները դեմ են առնում հնամոլ, իրենց դարն ապրած դրույթների՝ ստեղծելով հոգեբանական խոչընդոտներ: Դեպքեր են լինում, երբ որևէ գիտական պրոբլեմի լուծման ժամանակ համախոհ գիտաշխատողների հարաբերությունները լարվում են, նույնիսկ թշնամանում՝ մի այլ պրոբլեմի լուծման ժամանակ տարակարծիք լինելու պատճառով:

Ինչպես նշվեց, գիտատեխնիկական առաջընթացն ու գիտական կոլեկտիվի սոցիալ-հոգեբանական կլիման բազմաթիվ թելերով կապված են իրար հետ: Առաջինը խթանում է կոլեկտիվի գիտական մակարդակի բարձրացմանը, երկրորդն ազդում է գիտատեխնիկական առաջընթացի բովանդակության ու տեմպերի վրա: Բարձրացնելով աշխատողների կուլտուրական մակարդակը և կարգավորելով կոլեկտիվի անդամների փոխհարաբերությունները՝ այն չի բացառում գիտաշխատողների մոտ մտավոր գերծանրաբեռնվածությունը, որը լի է լարված հոգեկան պահերով: Այդուհանդերձ, բացառված չէ, երբ հոգեկան սուր լարվածության արդյունքը լինում է նոր հայտնագործությունը: Նկատենք նաև, որ ստեղծագործական աշխատանքում անխուսափելի են հակամետ կարծիքների, մեթոդների ու մոտեցումների առկայությունը: Այդ իսկ պատճառով վիճաբանությունները բնական են գիտական աշխատանքի կատարման համարյա ողջ ընթացքում՝ սկսած ծրագրավորումից, վերջացրած ներդրումով: Հաճախ այդ վիճաբանությունները վեր են ածվում սուր բախումների: Երբեմն էլ գիտական կոլեկտիվի անդամներից որևէ մեկի մտահղացումը հասու չի լինում մյուս անդամներին, որը և հանգեցնում է բախման:

Հազիվ թե կարելի է համաձայնել այն մտայնությանը, թե տաղանդավոր գիտնականները դժվարությամբ են մերձենում կոլեկտիվին, համախմբվում, համերաշխ աշխատում: Կյանքը հակառակն է ապացուցում. նրանք մեծ մասամբ մեղմ են, համեստ, չնայած նեղ են նրանց անձնական շփման եզրերը՝ գործին նվիրված լինելու պատճառով:

Գիտահետազոտական կոլեկտիվում երբեմն ընդհարումներ են ծագում նաև նյութական և բարոյական միջոցների ոչ ճիշտ բաշխման, կարգապահության անտեսման, սուբյեկտիվ վերաբերմունքի պատճառով: Ուսումնասիրությունները ցույց են տվել, որ հետընդհարումային ժամանակահատվածը ավելի երկար է, քան ընդհարմանը: Ղեկավարի կամ գործընկերոջ անտակտության հետևանքով ծագած նյարդային լարվածությունը երկար է տևում:

Կազմալուծող կոնֆլիկտների հետևանքները ծանր են լինում. հիվանդություն, կոլեկտիվի անդամի տեղափոխում այլ հիմնարկ, հեռացում: Հիրավի, անչափ կարևոր են աշխատանքային հարաբերությունների կուլտուրան, ինքնատիրապետումը: Չէ որ սուր բախումները կարող են անցանկալի հետևանքներ ունենալ: Կանադացի հռչակավոր կենսաբան Գ. Սելիեն իրավամբ գտնում է, որ սթրեսային իրավիճակի շարունակական ներգործությունը վնասում է նյարդային հանգույցները: Այդ վնասված հանգույցները երբեք չեն վերականգնվում: Եթե այդ ազդեցությունը շատ մեծ է, ապա հնարավոր է, որ դրա հետևանքը ողբերգական լինի: Գիտաշխատողների շրջանում հազվադեպ չեն սրտամկանային ինֆարկտով, ստենոկարդիայով, հիպերտոնիայով, նևրոստենիայով տառապող հիվանդները: Ապացուցված է, որ գիտական գործունեությունն առանձնահատուկ ներգործություն է ունենում սրտանոթային համակարգերի և նյարդային հանգույցների վրա: Հաճախ դա նկատելի է նույնիսկ երիտասարդ գիտաշխատողների մոտ: ՍՍՀՄ բժշկական գիտությունների ակադեմիայի Մյասնիկովի անվան թերապիայի ինստիտուտի աշխատակիցների կատարած սրտամկանային ինֆարկտի հետազոտություններից պարզվել է, որ այն բանվորների մոտ երկու անգամ պակաս է՝ ծառայողների և 3—4 անգամ պակաս՝ գիտաշխատողների համեմատությամբ:

Արդեն ասվեց, որ կոլեկտիվի սոցիալ-հոգեբանական կլիմայի մյուս գործոնը աշխատողի ինքն իր նկատմամբ ունեցած վերաբերմունքն է: Այն առանձնահատուկ կերպով է դրսևորվում գիտական կոլեկտիվում: Այստեղ շատ կարևոր են գիտաշխատողի հեղինակությունն ու ինքնահաստատումը: Բարձր հեղինակության ու ինքնահաստատման ձգտումը գիտական կոլեկտիվում բարձրացնում է ստեղծագործական ակտիվությունը:

Գիտական գործունեությամբ չափավոր ծանրաբեռնվածությունն օգնում է կոլեկտիվի սոցիալ-հոգեբանական կլիմայի բարելավմանը և նպաստում գիտատեխնիկական առաջընթացի ինտենսիվ զարգացմանը: Հակառակը՝ աշխատանքով գերծանրաբեռնված լինելն աշխատողին դարձնում է սաստիկ դյուրազգաց, նյարդային, որը և խանգարում է շրջապատի անդորրը: Այդ ամենը բացասաբար է անդրադառնում գիտական կոլեկտիվի սոցիալ-հոգեբանական իրավիճակի վրա:

Աշխատանքային և ազատ ժամանակը փոխադարձաբար պայմանավորված են միմյանցով: Չափավոր մտավոր աշխատանքը կարող է ավելի երկար տևել, քան ֆիզիկականը, բայց օրգանիզմի ֆիզիկական ուժի վերականգնման համար պահանջվում է երկարատև հանգիստ:

Գիտատեխնիկական առաջընթացի ինտենսիվ զարգացման, կոլեկտիվում պատշաճ սոցիալ-հոգեբանական կլիմայի հաստատման առումով ոչ պակաս նշանակություն ունեն աշխատանքային պայմանները, հասարակական երևույթները, աշխատողների դեմոգրաֆիական գործոնները և այլն: Ինչ վերաբերում է աշխատանքային պայմաններին, ապա շրջապատող միջավայրը կարող է բարձրացնել կամ իջեցնել գիտական աշխատանքի արդյունավետությունը, մտավոր գերհոգնածությունը, նվազեցնել կամ ավելացնել նյարդային լարվածությունը: Աշխատանքային անհրաժեշտ պայմանները խթանում են աշխատողների, հատկապես գիտաշխատողների ուժերի և ընդունակությունների լավագույն ձևով և ռացիոնալ դրսևորմանը:

Անառարկելի է, որ կրթական մակարդակն իր կնիքն է թողնում ինչպես աշխատանքի, այնպես էլ շրջապատի հանդեպ ունեցած վերաբերմունքի վրա: Այս հարցում ոչ պակաս կարևոր ազդակ է նաև ընտրած մասնագիտությունը: Մեծ դեր է հատկացվում նաև տվյալ կոլեկտիվում ունեցած աշխատանքային ստաժին: Նույն կոլեկտիվում երկար աշխատանքային ստաժ ունեցող գիտաշխատողը մեծ մասամբ տալիս է ստեղծագործական բարձր ցուցանիշներ: Նա ընդհանրապես նորմալ փոխհարաբերությունների մեջ է լինում կոլեկտիվի անդամների հետ, ավելի շուտ է հասնում ինքնահաստատման ու ինքնարտահայտման:

Կոլեկտիվի սոցիալ-հոգեբանական անհրաժեշտ կլիմայի հաստատման և գիտատեխնիկական առաջընթացի զարգացման գործում կարևոր գործոններ են նաև աշխատողի տարիքն ու սեռը: Դրանք ոչ միայն կենսաբանական, այլև սոցիալ-հոգեբանական ցուցանիշներ են: Անհերքելի է, որ տղամարդիկ ազատ ժամանակը ստեղծագործական առումով ավելի բովանդակալից են անցկացնում: Կանանց մեծ մասի մոտ ուշադրության կենտրոնում հիմնականում երեխաներն ու տան հոգսերն են: Հետևաբար, նրանց ավելի քիչ ժամանակ է մնում հոգեկան պահանջմունքների բավարարման համար:

Ինչպես գիտական, նույնպես և արտադրական ու այլ կոլեկտիվներում սոցիալ-հոգեբանական, առողջ մթնոլորտի առումով ակնբախ է տղամարդկանց դերը, որոնց մոտ ավելի շատ են շեշտվում առաջնային վերաբերմունքը

գործի նկատմամբ, ձգտումը գիտական պրոբլեմների բազմազանության: Բնորոշ է և այն իրողությունը, որ նրանց մոտ հոգեկան լարվածության պահերը մեծ մասամբ հետևանք են գիտական գործունեության ծանրաբեռնվածության: Տղամարդիկ ավելի են հակված կոլեկտիվում գործարար հարաբերությունների հաստատմանը: Մինչդեռ կանանց զգալի մասը (նույնիսկ որոշ կին գիտաշխատողներ) մեծ նշանակություն են տալիս անձնական հարաբերություններին՝ կոնֆլիկտային վիճակներ ստեղծելով զուտ անձնական հողի վրա: Ինչ խոսք, մեծ է գիտությանը նվիրված կին գիտաշխատողների թիվը, որն իր նպաստն է բերում գիտատեխնիկական առաջընթացի արագացմանը:

Հետազոտությունների արդյունքները վկայում են, որ գիտաշխատողների ստեղծագործական ակտիվությունն ու գիտական աստիճանի ձեռքբերումը հիմնականում տեղի են ունենում 31—36 տարեկանում: Սակայն քիչ չեն դեպքերը, երբ աշխատողի մտային ծաղկումը ի հայտ է գալիս ուշ՝ մինչև 50 տարեկանը: Եթե գիտաշխատողը 45 տարեկանից հետո չի կորցնում բարձր մակարդակով ստեղծագործելու իր ընդունակությունները, նշանակում է նա վստահ է իր ուժերին, և մեծ մասամբ դա պայմանավորված է նրա կատարած աշխատանքների ոչ միօրինակ բնույթով: Փաստերը վկայում են, որ կան նաև այնպիսի գիտաշխատողներ, որոնք տարիքն առնելուց հետո էլ աշխատում են բարձր արդյունավետությամբ:

Ինչ վերաբերվում է կոլեկտիվում տիրող փոխհարաբերություններին, ապա գիտաշխատողի համար գործընկերների հետ ունեցած կապերն ունեն էական նշանակություն առանձնապես երիտասարդ տարիքում: Գիտական գործունեությունը հատկապես երիտասարդ գիտաշխատողին է թելադրում փոխհարաբերությունների մեջ մտնել ավելի փորձված մասնագետների հետ: Ձգտումը դեպի նորը, դեպի հայտնագործությունը մղում է նրան անընդհատ ընդլայնելու գիտական շրջապատի, գործնական ծանոթությունների շրջանակը:

Գիտական կոլեկտիվի սոցիալ-հոգեբանական բարենպաստ մթնոլորտի համար կարևոր ազդակ է նաև արվեստը: Հաղորդակցումը արվեստին բարձրացնում է ոչ միայն անհատ գիտաշխատողի, այլև ողջ գիտական խմբի տրամադրությունը, ոգևորում, մղում է նրանց աշխատանքային արգասալի գործունեության, թուլացնում մտավոր հոգնածությունը, հոգեկան լարվածությունը, կենտրոնացնում ուշադրությունը: Արվեստը ևս նպաստում է գիտաշխատողների փոխհարաբերությունների նորմալ ընթացքին: Դրան է ծառայում նաև սպորտով զբաղվելը: Այն ոչ միայն ապահովում է աշխատողի առողջությունը, այլև բարձրացնում է տրամադրությունը, որը և օժանդակում է կոլեկտիվի անդամների փոխհարաբերությունների կարգավորմանը: Գիտական կոլեկտիվի սոցիալ-հոգեբանական մթնոլորտի վրա մեծ ազդեցություն ունեն գիտաշխատողի ընտանեկան վիճակը, կենցաղային պայմանները: Նորմալ անձնական կյանքը նպաստում է գիտաշխատողի նոր մտահղացումների երևան գալուն, դարձնում նրան ավելի բարյացակամ կոլեկտիվի անդամների նկատմամբ:

Սոցիալ-հոգեբանական հետազոտությունների արդյունքները վկայում են, որ գոյություն ունեն մշտական առնչություններ, որոնք մեծապես ազդում են կոլեկտիվի սոցիալ-հոգեբանական կլիմայի ձևավորման վրա. աշխատողների ստեղծագործական ակտիվության բարձրացում, աշխատանքն ինքնուրույն կատարելու կարողության դրսևորում, առաջխաղացում աշխատանքում, աշխատանքային ստաժ, կոլեկտիվի անդամների միջև հաստատված փոխհարաբերությունների բնույթ:

Այսպիսով, կոլեկտիվի, հատկապես գիտական կոլեկտիվի սոցիալ-հոգեբանական կլիմայի բարեփոխումը հրատապ խնդիր է, որի լուծումը կարագացնի գիտատեխնիկական առաջընթացի վերելքը, կապահովի աշխատողների և առանձնապես գիտաշխատողների աշխատանքային ու ստեղծագործական բարձր արդյունավետությունը: Այս գործին կնպաստեն գիտատեխնիկական ինֆորմացիոն բաժանմունքների աշխատանքի ճիշտ կազմակերպումը, գիտաշխատողին անհրաժեշտ և հույժ կարևոր նյութերի ընտրությունն ու մատուցման պատշաճ ձևերը՝ նպատակ հետապնդելով թուլացնել մտավոր գերծանրաբեռնվածությունն ու նրա հետևանք հանդիսացող լարված հոգեկան վիճակը:

Գիտատեխնիկական առաջընթացի ինտենսիվ զարգացման ու կոլեկտիվի սոցիալ-հոգեբանական կլիմայի մակարդակի բարձրացման համար կարևոր նշանակություն ունի նաև կադրերի հետ տարվող աշխատանքը: Ուշադիր և հոգատար վերաբերմունքը դեպի յուրաքանչյուր աշխատողը բարձրացնում է վերջինիս աշխատանքային ու ստեղծագործական արդյունավետությունը:

Ելնելով կուսակցության այսօրվա պահանջներից՝ անհրաժեշտ է աշխատանքային կոլեկտիվներում իրոք գիտահոգեբանական հիմքերի վրա դնել մարդկային հարաբերությունների ողջ ներկապնակը:

Հ. ԺԱՄԿՈՉՅԱՆ

## Հիշարժան տարեթվեր

# ԱՐԳԱՍԱԼԻ ԿՅԱՆՔ

### (ԹԱԴԵՎՈՍ ԱՎԴԱԼԲԵԳՅԱՆԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ հարգանքի տուրք է մատուցում իր բազմավաստակ զավակներին, որոնք իրենց կյանքն ու գործը նվիրաբերել են նոր աշխարհի արարմանը: Այդ անձնվեր գործիչներից էր Թադևոս Ավդալբեգյանը, որի ծառայությունները երախտագիտությամբ են նշում սերունդները:

Լինելով ինքնատիպ անհատականություն՝ նա իրեն դրսևորել է տարբեր գիտությունների բնագավառներում— տնտեսագիտության, պատմության, բանասիրության: Անուրանալի է նրա ավանդը բառարանագիտության ու թարգմանչական արվեստի ասպարեզում:

Միքայել Նալբանդյանի մասին գրած մենագրության համար 1913 թ. Գևորգյան ճեմարանի սանի նկատմամբ ցարական գրաքննությունը հարուցում է պետական-հասարակական կարգը տապալման կոչելու մեղադրանք: Խուսափելով ոստիկանության հետապնդումից՝ Ավդալբեգյանը պատսպարվում է Պարսկաստանում, որտեղից ցարիզմի տապալումից հետո վերադառնում է Հայաստան:

Սովետական կարգերի հաստատման առաջին իսկ օրերից Ավդալբեգյանը լծվում է ստեղծագործական աշխատանքի հրատարակչության բնագավառում, այնուհետև պետական համալսարանում, կուսդըպրոցում կարդում հասարակական մտքի և տնտեսական պատմության դասընթացները: Նա աշխատել է նաև հանրապետության գիտության և արվեստի ինստիտուտում, մասնակցել հնագիտական արշավներին: Քսանական թվականների վերջերին Ավդալբեգյանը իր նպաստն է բերել երկրի ոռոգման ցանցի, ինչպես և հանրապետության բամբակագործության հնգամյա պլանների մշակման աշխատանքներին:

Նրա տնտեսագիտական ու պատմաբանասիրական ուսումնասիրությունները սերտորեն կապված են և փոխադարձաբար լրացնում են միմյանց: Այդուհանդերձ, Ավդալբեգյանի գիտական հետազոտություններում իր ուրույն տեղն ունի մարքսիստական քաղաքատնտեսության պրոպագանդան, հատկապես արժեքավոր է Կապիտալի երեք հատորների հայերեն թարգմանությունը՝ կատարված գերմաներենից, որտեղ, ինչպես նաև իր բառարաններում, ակնբախ է նրա լուրջ ներդրումը տնտեսագիտական տերմինաբանության ստեղծման ու մշակման գործում: Լինելով խորամիտ տնտեսագետ և լայն գիտական ընդգրկումների տեր գիտնական՝ նրան հաջողվել է բազմաթիվ նորաստեղծ բառերով ճշգրտորեն արտահայտել տնտեսական կատեգորիաների մարքսյան ուսմունքի գիտական իմաստն ու բովանդակությունը: Աշխատուժ, սպառարժեք, փոխանակարժեք, հաստատուն և փոփոխուն կապիտալ, արժեձև և շատ ու շատ բառեր, արտահայտություններ կարճ ժամանակում դարձան հանրաճանաչ և կարևորագույն ներդրում տնտեսագիտական գրականության մեջ: Ավդալբեգյանը գերազանցապես տնտեսագիտության, հայ տնտեսագիտական մտքի պատմաբան է:

Սովետական կարգերի հաստատման առաջին իսկ տարիներից հայրենասեր գիտնականը մտահոգվում է Հայաստանի տընտեսական պատմության ստեղծման գործով: Նա իրավամբ գտնում է, որ հայ ժողովրդի պատմության հիմքը Հայաստանի տնտեսական պատմությունն է, որը «հայագիտության ամենահիմնական առարկաներից մեկն է» (Թ. Ավդալբեգյան, **Հայագիտական հետազոտություններ**, ՀՍՍՀ ԳԱ հրատ., 1969, էջ 306): Հայագիտության այս կարևոր ճյուղը, սակայն, նոր է ձևավորվում, նկատում է հեղինակը: Այդ բնագավառում առաջին քայլերը կատարում է ինքը՝ Ավդալբեգյանը, ստեղծելով մի քանի աշխատություններ՝ նվիրված միջին դարերում Հայաստանի տնտեսության զարգացման առանձին խնդիրներին:

Հատկապես արժեքավոր են «հաս», «սակ», «բաժ» հասկացություններին նվիրված հետազոտությունները: Հայ պատմագրության մեջ այդ հասկացությունները մեկնաբանվել են իբրև հարկատեսակներ, որն Ալդալբեգյանը մերժում է և դրանց բովանդակությունը լուսաբանում՝ կապված հասարակական տնտեսության զարգացման ընթացքի հետ: Նա առաջնորդվում է այն ճիշտ սկզբունքով, որ տարբեր ժամանակներում այդ տնտեսական կատեգորիաներն արտահայտել են տարբեր հասարակական հարաբերություններ, որով և պայմանավորված է դրանց բովանդակության փոփոխությունը: **Հասը**՝ հասնել բայի արմատն է, գրում է Ալդալբեգյանը, որն ունի նաև հասանելիք, հասույթ իմաստները: Այս առումով էլ եկեղեցուն և հոգևորականներին տրված բոլոր հատկացումները կոչվել են **հաս,** որն աստիճանաբար ստացել է եկեղեցական հարկերի հասկացության իմաստ: Նման բնույթի հասույթներ ունեցել է նաև պետությունը, որի եկամուտների մեծ մասը հարկային ձև է ընդունել: Այս դեպքում արդեն **հասը** ստացել է տիպիկ հարկային բովանդակություն: Ալդալբեգյանը լուսաբանում է նաև **սակ** հասկացության փոփոխության ընթացքը: Նա համոզիչ փաստերով ցույց է տալիս, որ հայ մատենագրության մեջ բազմաթիվ դեպքերում **սակը** ամենևին էլ հարկի իմաստ չի ունեցել: Այն հաճախ է գործածվել **չափ, դրույք** իմաստներով: Վկայակոչելով պատմական իրողությունը՝ նա ցույց է տալիս, որ օտար նվաճողները հաճախ են հայ տոհմիկ ազնվականներին գերի պահել՝ փրկանք ստանալու դիտավորությամբ: Նման դեպքերում **սակը** նշանակել է գլխագին: Վերջինս իր իմաստաբանական զարգացման հաջորդ աստիճաններում ստանում է հարկի բովանդակություն, որն արաբների տիրապետության օրոք դառնում է հիմնական հարկատեսակ:

Ալդալբեգյանը ավելի հանգամանորեն է քննարկում **բաժ** հասկացությունը, որը հայագիտական գրականության մեջ մեկնաբանվել է միայն որպես մաքս: Մինչդեռ **բաժը** իրականում արտահայտել է նաև բազմաթիվ այլ բնույթի հարաբերություններ: Նախնադարում **բաժանումը, բաժինը** արտահայտել են բաշխման հարաբերություններ, հետագայում պետությունների պահպանման համար հատկացված բաժինը դառնում է **բաժ-հարկ,** իսկ փոխանակային հարաբերությունների զարգացման բարձր աստիճանում, պետությունների սահմանագլխին առաջանում են **բաժ-մաքս** գանձույթները:

Առևտրի զարգացմանը զուգընթաց փոխանակային հարաբերությունները հետզհետե բարդանում են, առաջանում են գանձույթների նորանոր տեսակներ, և **բաժի** իմաստաբանական բովանդակությունը հարըստանում է: Ալդալբեգյանը ցույց է տալիս, որ միջին դարերում **բաժը** օգտագործվել է առևտրական հարկի իմաստով, իսկ այնուհետև՝ նաև անցիզի, արհեստավորական հարկի, կոմունալ, ֆինանսական գանձույթների իմաստով: «Այսպիսով, տնտեսական զարգացման հետևանքով,— գրում է հեղինակը,— ո՛չ միայն առաջ են գալիս բառի նորանոր առումներ, այլև այս առումները զորանում, ծավալվում, գերիշխում են և կամ թուլանում, աղոտանում, կծկվում, սահում են տափետափ՝ տնտեսական պայմանների պահանջներին հլու, հնազանդ» (նույն տեղը, էջ 404): Հեղինակի այս հետևությունները հիմնավորվում են մատենագիտական աղբյուրների մանրազնին վերլուծությամբ:

Վիմական արձանագրությունների տվյալների ուսումնասիրության հիման վրա Ալդալբեգյանը նշում է հայ իշխանների ու մեծատունների՝ վանքերին արված նվիրատվությունների (այգիներ, հողեր, գյուղեր, անասուններ, շարժական ու անշարժ կայք) և նրանց հոգու փրկության համար տրված ժամ-պատարագների թվի ու տևողության միջև որոշակի կապերի գոյությունը, որոնց լուսաբանմամբ նա ցույց է տալիս, որ ժամ-պատարագներն ունեցել են սակագին: Այստեղ իրավամբ նշվում է այդ սակագների սահմանման բացառիկ կարևորությունն այն առումով, որ հնարավորություն է տալիս որոշելու վանքին նվիրաբերված կայքի ընդհանուր արժողությունը, դրանց միավորների գինը, որոնք օգնում են պարզելու զանազան տնտեսական օբյեկտների եկամտաբերության չափը, հարկային դրույքները, պատկերացում կազմելու ապրանքային հարաբերությունների զարգացման աստիճանի, դրամաշրջանառության ծավալի մասին և լուսաբանելու երկրի տնտեսական պատմության հետ կապված բազում հարցեր:

Հողային հարաբերությունների ուսումնասիրությունը կենտրոնական տեղ է գրավում տնտեսական պատմության մեջ: Ալդալբեգյանը նկատում է, որ հողային հարաբերությունների նյութական արտահայտությունը հարկերն են, որոնց հետազոտությամբ և պարզվում է հողային հարաբերությունների բնույթը: Հանգամանորեն ուսումնասիրելով օտար և յուրային շահագործողներին վճարվող հայ գյուղացիների բազմաթիվ հարկատեսակները և դրանց գանձման հանգամանքները՝ Ալդալբեգյանը պարզում է հավելյալ արդյունքի նորման և ցույց տալիս, որ «ռուսաց նվաճման նախօրեին երկրագործների շահագործման աստիճանն ընդհանրապես 125 տոկոս էր, իսկ մի մասինը, որը, այնուամենայնիվ, բավական ստվար թիվ է կազմում, հավասար է 260 տոկոսի» (Թ. Ալդալբեգյան, **Երկրագործական հավելյալ արդյունքի նորման 17—18 դարերում և 19-րդ դարի սկզբին,** «Նորք», 1923 թ., գիրք երկրորդ, էջ 115): Համեմատելով համապատասխան տվյալները՝ հեղինակը ցույց է տալիս, որ XIX դարի առաջին տասնամյակներում գյուղացիության դրությունը, նախորդ երկու դարերի համեմատությամբ, ավելի քան կրկնակի վատթարացել էր:

Տնտեսագիտական մտքի պատմությանը նվիրված՝ Ալդալբեգյանի աշխատություններում ընդգրկված են հետևյալ պրոբլեմները. հայ միջնադարյան աշխատավորական շարժումների գաղափարախոսություն, հայ ազատագրական շարժումների գաղափարախոսություն, կապիտալիզմի դարաշրջանի հայ հասարակական հոսանքների բնութագրություն, մարքսիստական տնտեսագիտական ուսմունքի պրոպագանդա:

Միջին դարերում աշխատավորական շարժումների տարածված ձևը աղանդավորական հոսանքներն էին, որոնց գաղափարախոսությունը լայնորեն լուսաբանված է հայ պատմագրության մեջ (մծղնեականներ, բորբորիտներ, մանիքեականներ, պավլիկյաններ, թոնդրակեցիներ, արևորդիներ): Ալդալբեգյանը հանգամանորեն վերլուծում է XVI—XVII դարերի երկու նորահայտ հակաեկեղեցական շարժումների բովանդակությունը՝ կապված հոգևորական Մեխլուի և արհեստավոր Թովմասի անունների հետ: Մեխլուի պայքարն ուղղված էր կուսակրոնների ցոփ ու պորտաբույծ կյանքի դեմ, որը հակասում էր հասարակական կենցաղավարության վերաբերյալ ունեցած աշխատավորների ըմբռնումներին: Այդ շարժումը «...ձգտում էր դեպի վաղօրյա սակավապետ ու ճգնական քրիստոնեությունը», ամփոփում է այս հոսանքի իր բնութագրությունը Ալդալբեգյանը՝ չժխտելով, սակայն, շարժման հակաֆեոդալական բնույթը:

Նարոդնիկության մանրբուրժուական ծրագրի գնահատականը տալիս Վ. Ի. Լենինը պահանջում էր շրջահայաց լինել՝ նրանց ռեակցիոն կողմերը ցույց տալով հանդերձ չմոռանալ և դեմոկրատականը:

Աղանդավորների հասարակական բաշխման պահանջը վերցված էր վաղ քրիստոնեության համայնավարության ուսմունքից, որն արտահայտում է հավասարության սկզբունքի դեմոկրատական բնույթը: Դերձակ Թովմասի անվան հետ կապված աղանդը իր գաղափարական բովանդակությամբ եղել է ամենաարմատականը միջնադարյան բոլոր շարժումների համեմատությամբ, գրում է Ալդալբեգյանը և այդ հաստատում մեր մատենագիրների աշխատություններից քաղված համապատասխան վկայակոչումներով: Ծարժման թափի ու հզորության մասին է վկայում այն փաստը, որ Նոր Ջուղայի առաջնորդ Խաչատուր Կեսարացին գումարում է հատուկ հանձնաժողով, որն անհաշտ պայքար է ծավալում աղանդավորների դեմ:

Թուրք-պարսկական բռնակալության դեմ հայ ազատագրական շարժումը ինչպես բուն Հայաստանում, այնպես էլ հայկական գաղութներում ծավալվում էր երկու ուղղությամբ: Հնդկաստանում զարգացող առևտրական բուրժուազիայի գործունեության շրջանակներն աստիճանաբար սեղմվում էին անգլիական կապիտալի կողմից, և նա տենչում էր ազատ ու անկաշկանդ գործունեություն ծավալել ազատագրված հայրենի երկրում, որտեղ հայկական վերածնունդը պետք է կատարվեր բուրժուական սահմանադրության հիմունքներով: Այս հոսանքի գաղափարախոս Ծահամիր Ծահամիրյանը հայ հարուստներին կոչ էր անում. **«Առեք ձեր գանձերը միաբան և գնացեք իսկույն Հայաստան աշխարհը,** որովհետև այն է ձեր տունը և միայն ձերն է» (Թ. Ալդալբեգյան, **Հայագիտական հետազոտություններ,** էջ 251): Ծահամիրյանի խմբակի այս ծրագիրը, սակայն, անընդունելի էր հայ կղերականավատիրական շրջանների համար, որոնց խնդիրն էր Հայաստանի պետականությունը վերականգնել միապետական իշխանության սկզբունքներով՝ հիմնված կալվածատիրական սեփականության վրա: Այս երկու հոսանքներն էլ, իրենց քաղաքական հայացքների տարբերությամբ հանդերձ, Հայաստանի ազատագրման հարցը կապում էին ռուսական պետության քաղաքականության հետ:

Ալդալբեգյանը քննարկում է Ռուսաստանի կողմից հայերի ազատագրման երեք

նախագիծ, որոնցից առաջինը Ծահամիրյանի **Տետրակ, որ կոչի Նշավակ** գրքում շարադրված դաշնագիրն է: Երկրորդը կազմել էին կղերակալվածատիրական հոսանքի ներկայացուցիչները (Հովսեփ Արղությանի գլխավորությամբ), իսկ մյուսը հայ պատմագրության մեջ համարվում էր կազմված ռուսների կողմից՝ հանրապետական սահմանադրության հիմունքներով: Ավդալբեգյանը ցույց է տալիս, որ Եկատերինայի դարաշրջանի բռնապետական Ռուսաստանի դիվանագետներից և ոչ մեկը չէր կարող զբաղվել «հանրապետական գաղափարների քարոզությամբ» (նույն տեղը, էջ 222): Ծահամիրյանի **Նշավակ** և **Որոգայթ փառաց** աշխատությունների համապատասխան բաժինների վերլուծության հիման վրա Ավդալբեգյանը ցույց է տալիս, որ ռուսներին վերագրվող դաշնագրի հեղինակը նույն ինքը Ծահամիրյանն է, որին նա համարում էր նորելուկ բուրժուազիայի լուսամիտ գաղափարախոս, բուրժուադեմոկրատական հոսանքի հիմնադիր հայ իրականության մեջ: Կապիտալիզմի ժամանակաշրջանի հայ հասարակական հոսանքների ներկայացուցիչների հայացքների բնութագրությանը Ավդալբեգյանն անդրադարձել է իր գործունեության առաջին շրջանում գրված մի շարք աշխատություններում:

Նալբանդյանին նվիրված ուսումնասիրության մեջ նա գրել է, որ ազատության ջատագովը, հասարակ ժողովրդի շահերի պաշտպանը հանդես էր գալիս կապիտալիստական հասարակության այլանդակությունների ծավալուն քննադատությամբ: Նալբանդյանը իրավամբ ցույց է տվել, որ հարստությունը լցվում է շահագործող փոքրամասնության գրպանը, իսկ այդ հարստություն ստեղծող աշխատավորներն իրենց աղքատիկ գոյությունը քարշ են տալիս տառապանքներով: Այս աղաղակող անարդարության հիմքը գրողը համարում է հողի ու կապիտալի մասնավոր սեփականությունը, որից և բխում է հողի հանրայնացման՝ որպես չարիքը արմատախիլ անելու միակ միջոցի, նրա տրամաբանական պահանջը:

Ավդալբեգյանը միանգամայն ճիշտ է գնահատում Նալբանդյանի հայացքները նաև ազգային հարցի վերաբերյալ: Ի տարբերություն բուրժուական ազգայնականների, նա գտնում է, որ ազգությունը դա հասարակ ժողովուրդն է, որի ազատագրումը յուրային և օտար կեղեքողներից ազգային հարցի լուծման միակ ուղին է: Իսկ աշխատավորության ազատագրումը հնարավոր է զինված ապստամբությամբ, հեղափոխական պայքարի միջոցով: Այդ առթիվ Ավդալբեգյանը նկատում է, որ Նալբանդյանի կյանքի նպատակը հարստահարված ժողովրդի ազատագրության գործին ծառայելն է, որին «...հասնելու համար չէ պիտո ընկրկինք ոչ բանտի և ոչ աքսորի առջև, ոչ միայն բանիվ և գրչով, այլև զենքով և արյունով...»:

Հայ դեմոկրատական շարժման աչքի ընկնող ներկայացուցիչներից մեկը Արսեն Թոխմախյանն էր, որի աշխարհայացքի բնութագրմանը Ավդալբեգյանը նվիրել է առանձին ուսումնասիրություն: Այստեղ ցույց է տրված Թոխմախյանի մերժողական վերաբերմունքը հայ պատմագրության այն հակագիտական տեսակետի նկատմամբ, ըստ որի հայ ժողովուրդը ներկայացվում է որպես միաձույլ ամբողջություն, իսկ նրա պատմությունը՝ որպես թագավորների, նախարարների ու բարձրաստիճան հոգևորականների սխրանքների ու բարեգործությունների անվերջ շղթա: Ժողովրդի մասին խոսում են այնքանով և այն դեպքերում միայն, երբ նա տասնյակ հազարներով ոչնչացել է սովից, համաճարակներից, բռնակալների կոտորածներից կամ գերեվարվել, բողոքում է հայ պատմագրության դեմ Թոխմախյանը: Նրա կարծիքով, գրում է Ավդալբեգյանը, հայ նախարարները կարող էին ավելի կամ պակաս չափով քաջ ու խելացի լինել օտարազգի շահերից ու բեգերից, բայց ժողովրդի հանդեպ նրանց ունեցած վերաբերմունքի մեջ նա էական տարբերություն չի տեսնում: Տարբեր նախարարները, ինչպես նաև տարբեր թուրք, քուրդ ցեղախմբերը կոտորել են իրար կամ օտարներին և բոլոր դեպքերում կեղեքել ցեղակից կամ օտարացեղ ժողովրդին (տե՛ս Թ. Ավդալբեգյան, **Արսեն Թոխմախյան**, Երևան, 1926, էջ 20):

Թոխմախյանն արտահայտել է այն միտքը, թե ազգությունը կապիտալիստական հարաբերությունների ծնունդ է, այն ոչ թե բիոլոգիական, այլ պատմասոցիալական միավորում է: Արսեն Թոխմախյանի կողմից հայ պատմագրության քննադատությունը, ազգությունների ձևավորման և նրանց դասակարգային կառուցվածքի մասին դրույթները XIX դարի 80-ական թվա-





կանների սկզբներին պետք է համարել հայ սոցիալ-տնտեսագիտական մտքի փայլուն էջերից մեկը, իրավամբ նկատում է Ավդալբեգյանը:

Արևմտահայության ազատագրումը նույնպես, ըստ Թոխմախյանի, քաղաքական հրապարակախոսության հիմնական խնդիրն է և այդ հարցում տարակարծություններ չունի մտավորականության հետ: Ավդալբեգյանն ընթերցողին է ներկայացնում Թոխմախյանի հայացքները՝ կապված ժողովրդի սոցիալական կառուցվածքի հարցերի հետ: Թուրք, քուրդ կեղեքիչների լուծը, անշուշտ, անտանելի էր հայ ժողովրդի համար: Բայց հայ աշխատավորությունը արդյոք կեղեքվում էր միայն օտա՞ր բռնակալների կողմից, հարցնում է հեղինակը և իր գրիչն ուղղում արևմտահայության հարուստ, ունևոր դասի դեմ, որը հայ գյուղացուն ավելի պակաս դաժանությամբ չի կողոպտում, քան թուրք բեկերը: Թոխմախյանը հայ գյուղացու դասակարգային թշնամիներն է համարում հայ առևտրականին ու վաշխառուին, որոնք աստիճանաբար տիրանում են գյուղացու հողին ու կայքին և նրան դարձնում «արծաթագին ստրուկ» (նույն տեղը, էջ 27): Թոխմախյանը գտնում էր, որ այս յուրային հարստահարիչներն ավելի վտանգավոր են, քան օտարները, գրում է Ավդալբեգյանը, քանի որ վերջիններիս հափշտակության դեմ կար ինքնապաշտպանության փորձված միջոցը, որին դիմողներին հաշվի չառնել չէր կարելի, իսկ յուրային կեղեքիչները գյուղացու ընտանիքը հասցնում էին անխուսափելի կործանման:

Հասարակության վերակառուցման Թոխմախյանի ծրագրի գիտական արժանիքը, ըստ Ավդալբեգյանի, այն է, որ նա արևմտահայերի քաղաքական ազատագրումը դասակարգային շահագործման պրոբլեմի լուծում դեռ չէր համարում: Հասարակության բոլոր դասակարգերը ձգտում էին հայերին ազատագրել բռնակալների լծից, մեկնաբանում է Ավդալբեգյանը Թոխմախյանի դատողությունները, սակայն նրանցից յուրաքանչյուրն ունի իր ակնկալությունները այդ ազատագրումից: Արևմտահայ էֆենդիները և անհատապաշտ մտավորականները այդ ազատագրումը դիտում էին որպես իշխանություն և բարձր պաշտոններ ստանալու միջոց: Հարուստներն ու վաճառականները հուսով էին, որ յուրայինների իշխանության ներքո կվերանան իրենց կապիտալը մեծացնելու խոչընդոտները, և իրենք կհասնեն ազնվականության աստիճանի: Իսկ գյուղացիներն այդ ազատագրումից սպասում էին խաղաղ աշխատանք և դրա պտուղները ապահով վայելելու հնարավորություն: Ամբողջ հարցն էլ հենց այն է, որ ունևոր դասակարգերը կստանան և՛ իշխանություն, և՛ հարստանալու լայն հնարավորություններ, գրում է Թոխմախյանը: Բայց այդ տեղի կունենա հայ գյուղացու ստրկության շղթաների փոփոխության հաշվին միայն: Այդուհանդերձ, Թոխմախյանի ծրագիրը զուրկ է տիրող կարգերի անողոք քննադատության ոգուց: Նա ներքին պայքարը համարում է հասարակական չարիք, որը կդառնա ամբողջ հասարակության կործանման պատճառ: Դասակարգային հակասություններ բացահայտող մարտիկը հրաժարվում է դասակարգային պայքարից և հանդես է գալիս շահագործողների մտավոր ու բարոյական վերածնության քարոզով, որը նա համարում է հասարակության տնտեսական ու քաղաքական ազատագրման պրոբլեմի լուծման ուղին: Այսինքն՝ հասարակության վերակառուցման Թոխմախյանի ծրագրի հիմքում ընկած է բուրժուական լուսավորչի աշխարհըմբռնումը:

Թադևոս Ավդալբեգյանն զբաղվել է նաև հայ գրողների երկերի ուսումնասիրությամբ, սակայն ոչ իբրև գեղագետ, այլ իբրև սոցիոլոգ-տնտեսագետ: Այդ առումով հատկապես կարևոր են Խաչատուր Աբովյանի և Մուրացանի երկերին նվիրված նրա աշխատությունները:

Ավդալբեգյանը գտնում է, որ գրական երկերի վերլուծության հիմնական խնդիրներից մեկը հեղինակի աշխարհայացքի լուսաբանումն է, որի համար անհրաժեշտ է նախապես ուսումնասիրել գրողի կյանքի ու գործունեության միջավայրը, պարզել այդ հասարակության «տնտեսական առաջադիմությունն ու հասարակական խմբերի դրությունը» (Թ. Ավդալբեգյան, **Խաչատուր Աբովյան**, Վաղարշապատ, 1910, էջ 3): Ավդալբեգյանը պահանջում է գրականագիտական սոցիոլոգիական ուսումնասիրությունների ժամանակ ղեկավարվել պատմափիլիսոփայական հետևյալ դրույթով. «...հասարակության կեցության հեղաշրջմանը հաջորդում է մարդկանց գիտակցության փոփոխությունը» (Թ. Ավդալբեգյան, **Հողի վիշտը Մուրացանի երկերում**, Վաղարշապատ, 1912, էջ 24): Այս տեսանկյունով նա քննադատում է աշխատավորների սոցիալական ազատագրության՝ Մուրացանի բուրժուալուսավորչական ուտո-

պիկ ծրագիրը: Նա իրավամբ գրում է, որ գործող օրենքները միշտ պաշտպանել են շահագործողներին. «Պատմությունը վկայում է, որ տիրող դասակարգերը երբեք հոժար կամքով զիջել չգիտեն: Նրանք միշտ զիջել են հավաքված հոնքերի, արյունալի աչքերի ու ամբարձած բռունցքի առաջ» (նույն տեղը, էջ 31): Այդ բռունցք բարձրացնողը պետք է լինի բանվոր դասակարգը, և երբ իր դրոշի տակ համախմբելով կապիտալիզմի հարվածներից կեղեքվող գյուղացիությանը՝ ոտքի ելնի օրհասական պայքարի, «այն ժամանակ կհնչի կապիտալիստական **հասարակության վերջին ժամը**» (նույն տեղը, էջ 54):

Մարքսի տնտեսական զարգացման թեորիային նվիրված աշխատության մեջ նա փորձել է ցույց տալ մարքսյան ուսմունքի զարգացման պատմական ընթացքը: Մարքսիզմի դասականների մեծագույն ծառայություններից մեկը Ավդալբեգյանն իրավամբ համարում է հասարակական-տնտեսական ֆորմացիաների մասին ուսմունքի ստեղծումը և փորձում է հանգամանորեն լուսաբանել ասիական տնտեսաձևի էությունը, որը քսանական թվականներին վիճաբանությունների առարկա էր: Մարքսիզմի դասականների աշխատություններից կատարված մեջբերումներով նա աշխատում է ցույց տալ, որ ասիական տնտեսաձևի հիմնական առանձնահատկություններից են հողի պետական սեփականությունը, հողային համայնքի առկայությունը և ազատ գյուղացիների գոյությունը, որոնք պատմական զարգացման որոշ շրջաններում կարող են լինել նաև հողի սեփականատեր: Այս առնչությամբ նա ուշագրավ դիտողություն է անում. «Մասնավորելով խոսքը Հայաստանի տնտեսական պատմության մասին՝ պետք է ասենք, որ, այսպես թե այնպես, մեր խորին համոզումով ասիական տնտեսության գաղափարն այս ասպարեզում անգնահատելի ծառայություններ կարող է մատուցանել և պիտի մատուցանե մեր ուսումնասիրողներին՝ սրանց զերծ պահելով ամենուրեք պարտադրաբար ստրուկ կամ ճորտ տեսնելու «արդիական» նախապաշարումներից» (Թ. Ավդալբեգյան, **Կարլ Մարքսի տնտեսական զարգացման թեորիան**, Երևան, 1926, էջ 45):

Քսանական թվականներին գրեթե տիրապետող էր այն հակագիտական տեսակետը, որ քաղաքատնտեսությունը որպես թե զբաղվում է միայն կապիտալիստական հարաբերությունների ուսումնասիրությամբ: Ավդալբեգյանը հիմնավորապես հերքում է այդ սխալ բնութագրումը՝ դրան հակադրելով Էնգելսի այն դրույթը, որ քաղաքատնտեսությունը լայն առումով գիտություն է արտադրության, բաշխման, փոխանակության և սպառման հարաբերությունների մասին՝ հասարակության զարգացման բոլոր ժամանակներում:

Ավդալբեգյանն անդրադարձել է նաև Մարքսի՝ ընդլայնված վերարտադրության սխեմաների վերլուծությանը: Մասնավորապես նա ցույց է տվել, որ վերարտադրության տեսության նշանակությունը հսկայական է ո՛չ միայն կապիտալիստական անկազմակերպ տնտեսության երևույթների ուսումնասիրության ու ըմբռնման, այլ նաև կազմակերպված սոցիալիստական տնտեսության տեսական ընդգրկման և գործնական պլանավորման համար: Հանգամանորեն ուսումնասիրելով հասարակական ամբողջական արդյունքի շրջանառության օրինաչափությունները՝ նա հատկապես անդրադառնում է կուտակմանը, հետազոտում վերջինիս չափերը, ինտենսիվության աստիճանը, ցույց տալիս դրա տեղն ու դերը հասարակական վերարտադրության ընդլայնման գործում:

Ընդլայնված վերարտադրության մարքսյան սխեմաների այս հանգամանալի ուսումնասիրությունն ամենևին չի սպառվում այդ ուսմունքի բնութագրմամբ: Այն նրա համար տեսական հիմք էր՝ բացահայտելու սոցիալիստական տնտեսության վերարտադրության օրինաչափությունները: Այդ ուղղությամբ կատարած հեղինակի հետազոտությունների արդյունքներն ամփոփված են նրա **Սոցիալիստական տնտեսության պարզ վերարտադրության սխեմաները** տեսական ու գործնական հետաքրքիր աշխատության մեջ:

Հիրավի, հարուստ է Թադևոս Ավդալբեգյանի գրական ժառանգությունը, մասնավորապես մեծ է նրա ավանդը տնտեսագիտության մի շարք բնագավառներում, հայ տնտեսագիտական մտքի պատմության մշակման ասպարեզում:

**Ն. ԹՈՎՄԱՍՅԱՆ**
**Տնտեսական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր**



# *ԾԱԿԱՏԱՄԱՐՏԵՐԻ ԵՎ ՀԱՂԹԱՆԱԿՆԵՐԻ ԲՈՎՈՒՄ*

**Պատերազմում հաղթեցին ո՛չ միայն մեր զենքը, էկոնոմիկան և քաղաքական կարգերը: Դա հաղթանակն էր այն գաղափարների, հանուն որոնց կատարվեց հեղափոխությունը, հանուն որոնց կռվում ու մեռնում էին սովետական մարդիկ: Դա հումանիզմի և արդարության վեհ սկզբունքները կրող մեր գաղափարախոսության և բարոյականության հաղթանակն էր ֆաշիզմի մարդատյաց գաղափարախոսության դեմ:**

**Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎ**

ՉՈՐՍ ՏԱՍՆԱՄՅԱԿ Է ԱՆՑԵԼ գերմանական ֆաշիզմի դեմ սովետական ժողովրդի մղած ահեղ ճակատամարտերից: Ավելի ու ավելի են հեռացել պայթող ռումբերի ու արկերի կործանիչ որոտների արձագանքները, բայց պատերազմի դժնդակ ժամանակաշրջանի արհավիրքները երբեք չեն ջնջվել մարդկանց հիշողությունից: Դրանք վավերագրվել, գրի են առնվել տարբեր ժանրերով— հոդվածներ, ակնարկներ, հուշագրություններ, վիպակներ, վեպեր: Ինչպես միշտ օրհասական պահերին, այնպես էլ դրանցից հետո, մարդկանց ոգևորել, թշնամու նկատմամբ ատելությամբ են համակել, հերոսության մղել հրապարակախոսության ոգեշունչ տողերը, գեղարվեստական արձակի անմոռաց կերպարները, հայրենասիրական հուզիչ երգերը, բանաստեղծություններն ու ներկայացումները, հուշագրությունները...

Հրապարակի վրա է գեներալ-մայոր, Սովետական Միության հերոս Աշոտ Ղազարյանի **Պատերազմ, մարդիկ, ճակատագրեր** ժողովածուի չորրորդ գիրքը*, ուր հանրապետության զինկոմը ներկայացնում է մեր երկրի զինված ուժերի վետերանների, ռազմաճակատի ու թիկունքի հայ և այլազգի հերոսների, ճանաչված զորավարների ու զորապետների կյանքն ու քաջագործությունները, աշխատանքային սխրանքները: Վավերագրական այս ակնարկները հանգամանալի ու խոր ուսումնասիրությունների ու պրպտումների արգասիք են: Այստեղ օգտագործված են նաև ականատեսների վկայությունները, ինչպես և նոր, սակավ հայտնի վավերագրեր:

Գիրքն սկսվում է հրետանու գեներալ-լեյտենանտ Ի. Դ. Վեքիլովին նվիրված ակնարկով: Առաջին համաշխարհային պատերազմի ավարտին ցարական բանակի նախկին սպա Ի. Վեքիլովը 1918 թվականին, որպես հայկական կորպուսի 5-րդ մարտկոցի հրամանատար, Սարիղամիշում կռվում է թուրք հրոսակների դեմ: Հետագայում նա կամավոր մտնում է կարմիր բանակի շարքերը և մինչև կյանքի վերջը հավատարիմ մնում մեծ Հոկտեմբերի դրոշին, նրա վեհ ավանդներին:

Հայրենական մեծ պատերազմի առաջին իսկ օրերին գնդապետ Ի. Վեքիլովը նշանակվում է Հարավային ռազմաճակատի հրետանու շտաբի պետ: Անդադրում զինվորականը արկերի որոտի տակ հասնում էր հրետանային դիվիզիոններն ու մարտկոցները, մասնակցում մարտական գործողություններին, անձնական օրինակով ոգևորում մարտիկներին:

Քառասունմեկի դեկտեմբերին Ի. Վեքիլովը նշանակվում է հարավ-արևմտյան ռազմաճակատի հրետանու հրամանատարի տեղակալ: Նրան շնորհվում է հրետանու գեներալ-մայորի կոչում: Մեկուկես տարի չանցած, տաղանդավոր զորապետը նշանակվում է կարմիր բանակի հրետանու շտաբի պետի տեղակալ և ստանում գեներալ-լեյտենանտի կոչում: Նրա ձեռնարկած շատ գործողություններ փառքով են պսակել մեր հրետանավորների մարտական ուղին:

Պատերազմի հաղթական ավարտից հե-

* А. В. Казарян, «Война, люди, судьбы», изд. «Айастан», 1984.

տո զինվորական գործի հմուտ գիտակն ու տեսաբանը նշանակվում է ավագ դասախոս Կ. Ե. Վորոշիլովի անվան ռազմական ակադեմիայում: Բանիմաց, արտակարգ աշխատասեր, հիանալի մանկավարժը վայելում էր սովորողների, դասախոսական կազմի ջերմ համակրանքն ու խոր հարգանքը: Նա պարգևատրվել է բազում շքանշաններով ու մեդալներով:

Իր երկրորդ տունն էր համարում Վեքիլովը ռազմական ակադեմիան, որտեղ և, հենց պարապմունքի ժամանակ, դադարեց բաբախել նրա հայրենանվեր սիրտը:

Հնատոհմ բանվորի ընտանիքում ծնված, սոցիալիստական աշխատանքի հերոս, գեներալ-մայոր, ակադեմիկոս Ա. Մ. Պետրոսյանցին է նվիրված **Անվերջանալի որոնում** ակնարկը: Բնածին ընդունակություններով օժտված երիտասարդ Անդրանիկը մեխանիկամեքենաշինական ինստիտուտն ավարտելուց հետո աշխատանքի է անցնում Սվերդլովսկի Սերգո Օրջոնիկիձեի անվան մեքենաշինական գործարանում: Մի շարք պատասխանատու պաշտոններ է վարում ծանր արդյունաբերության բնագավառում: Հայրենական մեծ պատերազմի առաջին օրերին Պետրոսյանցը նշանակվում է ՍՍՀՄ տանկային արդյունաբերության ժողովրդական կոմիսարի տեղակալ: Այստեղ երևան են գալիս նրա կազմակերպչական մեծ ունակությունները: Գիշեր ու զոր արդյունաբերական ձեռնարկություններում է նա. գիտնականների ու ինժեներների հետ մեկտեղ պրպտում, ջանում է գտնել նորագույն տիպի տանկերի ստեղծման ձևեր ու միջոցներ, ինքնագնաց հրանոթների այնպիսի սարքեր, որոնք իրենց տեխնիկական ու մարտական հատկություններով գերազանցեն հակառակորդի տանկերին: Իրագործվում է նպատակը: Ռազմաճակատ են հասնում նորագույն ու հզոր տանկեր: Հենց այդ տանկերն էին, որ խորտակեցին թշնամու պաշտպանությունը Բելոռուսիայում և Մերձբալթիկայում, Վիսլայի և Օդերի ամրություններում...

Ավարտվեց պատերազմը, որի գլխավոր գործող անձը զինվորի շինել, բանվորի արտահագուստ կրող մեր ժողովուրդն էր՝ հաղթանակը դարբնողն ու ապահովողը: Ստեղծվեցին ապրելու և աշխատելու խաղաղ պայմաններ: Արդյունաբերության տարբեր բնագավառներում ղեկավար պաշտոններ է վարում Պետրոսյանցը: Անվանավոր գիտնականը, սոցիալիստական աշխատանքի հերոսը, ՍՍՀՄ պետական մրցանակի դափնեկիրը, ՀՍՍՀ ԳԱ իսկական անդամը... 1962 թվականին նշանակվում է ՍՍՀՄ ատոմային էներգիայի օգտագործման պետական կոմիտեի նախագահ և բոլոր ուժերը նվիրաբերում խաղաղ ատոմի յուրացմանն ու օգտագործմանը՝ անուրանալի ավանդ ներդնելով գիտության բնագավառում: Իր ողջ գործունեությամբ ու աշխատանքով նա հաստատել է այն ճըշմարտությունը, որ ատոմի՝ խաղաղ թե ռազմական օգտագործման ճակատագիրը իր իսկ՝ մարդու ձեռքին է:

Ծնունդով ալեքսանդրապոլցի է Բ. Ա. Վլադիմիրովը, որին Ա. Ղազարյանը նվիրել է **Հայրենակիցդ եմ, Լենինական** անկեղծ ջերմությամբ գրված ակնարկը: Հայաստանում սովետական կարգերի հաստատման առաջին իսկ օրերին տասնհինգամյա Բորիսը կամավոր զինվորագրվում է կարմիր բանակին և շատ շուտ աչքի ընկնում իր կարգապահությամբ, պարտաճանաչությամբ: Հրամանատարությունը նրան ուղարկում է Թիֆլիսի ռազմահետևակային ուսումնարան սովորելու: Այն ավարտելուց հետո իր հրամանատարական գործունեությունն սկսում է Կովկասյան առաջին հրաձգային գնդում: Յոթ տարում Բ. Վլադիմիրովը դասակի հրամանատարից հասնում է գնդի շտաբի պետի օգնականի պաշտոնի...

Սկսվում է Հայրենական մեծ պատերազմը: 1941 թվականի վերջերին Բ. Վլադիմիրովը հրամանատարն է առանձին հրաձգային բրիգադի, որը Հեռավոր Արևելքից փոխադրվում է Լենինգրադյան ռազմաճակատ, ակտիվ մասնակցում անկոտրում քաղաքի պաշտպանությանը: Շուտով բրիգադը վերանվանվում է գվարդիական: Չանցած մեկ տարի՝ Բ. Վլադիմիրովը նըշանակվում է հրաձգային դիվիզիայի հրամանատար: 1944 թ. նոյեմբերին նրան շընորհվում է գեներալ-մայորի կոչում:

Քառասունհինգ թվական... Վլադիմիրովի դիվիզիան Առաջին բելոռուսական ռազմաճակատի զորքերի կազմում ահեղ մարտերով Վիսլայից հասնում է Օդեր: Հայրենիքին մատուցած ծառայությունների համար Բ. Վլադիմիրովն արժանանում է Սովետական Միության հերոսի կոչման: Նա իր դիվիզիայով պատերազմն ավարտում է հակառակորդի հողում:

Հուզիչ ու տպավորիչ են Անաստաս Իվանովիչ Միկոյանի որդիներին՝ գեներալ-լեյտենանտներ Ստեփան և Ալեքսեյ Միկոյաններին ներկայացնող ակնարկները: «Պատահաբար չեմ ես դարձել օդաչու, իսկ հետո՝ փորձարկող օդաչու: Դեռ մանկուց սիրել եմ տեխնիկան, նորը: Հատկապես օդագնացությունը: Եվ իմ այդ սերը հարատև էր»,— գրել է Ստեփան Միկոյանը: Այդ սերը բորբոքող խթաններից էր նրա սրտամոտ, սերտ բարեկամությունը հորեղբոր՝ ապագա մեծ ավիակոնստրուկտոր Արտեմ Միկոյանի հետ: Պատանու իդեալն էր նա, և ամեն ինչում ջանում էր նմանվել նրան:

Ավարտելով տասնամյակը՝ Ստեփանը իր մտերիմ ընկերոջ, քաղաքացիական կռիվների լեգենդար զորավար Ֆրունզեի որդու՝ Թիմուրի հետ ընդունվում է Կաչինսկի ռազմաօդային ուսումնարանը: Նրանք երդվում են գերազանց ուսմամբ բարձր պահել մայրաքաղաքի հեղինակությունը: 1941 թ. հունիսի 22-ին ուսումնարանն ավարտող սաները պետք է երկինք բարձրանային ինքնուրույն թռիչքի... Բայց այդ կիրակի ողջ երկրով մեկ տարածվեց պատերազմի բոթը: Ստեփանը և Թիմուրը նշանակում ստացան Մոսկվան պաշտպանող կործանիչ ավիացիոն գնդում: 1942 թ. հունվարին Մոսկվայի երկինքը պաշտպանելու համար մղված կռիվներում հակառակորդի գնդացրի հերթազարկից վնասվում է Ս. Միկոյանի ինքնաթիռը, բոցավառվում է բենզինի բաքը, այրվում են խիզախ օդաչուի ձեռքերն ու դեմքը: Մեծ դժվարությամբ նա վայրէջք է կատարում, հրաշքով փրկվում: Ապաքինվելուց հետո մասնակցում է Ստալինգրադյան ճակատամարտին: Այստեղ Ստեփանը հանդիպում է իր կրտսեր եղբորը՝ օդաչու Վլադիմիրին: Վերջինս զոհվում է օդային կատաղի մարտերից մեկում:

Ստալինգրադում, ապա այլ ուղղություններում մղած օդային մարտերից հետո կապիտան Ս. Միկոյանը գործում է Մոսկվայի հակաօդային պաշտպանության զորամասերում: Սովետական ժողովրդի մեծ հաղթանակից հետո նա ավարտում է Ն. Ժուկովսկու անվան ռազմաօդային ինժեներական ակադեմիան: Երկար տարիներ սովետական ռազմաօդային ուժերի շարքերում եղել է փորձարկող օդաչու: Հայրենիքի հանդեպ իր պարտքը ազնվորեն կատարելու, օդանավերի փորձարկման ժամանակ անօրինակ սխրանքի ու արիության համար արժանացել է Սովետական Միության հերոսի կոչման: Հմուտ օդաչուի լավագույն բնութագիրը նրա թռիչքային գրքույկի հետևյալ խոսքերն են. «Պատրաստ է ամենաբարդ փորձարկումների համար»:

**Մի երազանք ունի օդաչուն.** այսպես է վերնագրել Ա. Ղազարյանը Ալեքսեյ Միկոյանին նվիրված իր ակնարկը: 1943 թվականի հունվարին 18-ամյա Ալեքսեյն ընդունվում է օդաչուների հատուկ խըմբում, նպատակ ունենալով դառնալ կործանիչ օդաչու: Ուսուցումն անցնում է արագացրած ծրագրով, որն ավարտելուց հետո լեյտենանտի կոչումով նշանակվում է 12-րդ գվարդիական կործանիչ գնդում: Հակառակորդի դեմ առաջին օդային կռիվը կործանիչ-օդաչուն մղում է 1943 թվականի մայիսին: Թշնամու դեմ մղված օդային կռիվներում Ալեքսեյը բազմիցս աչքի է ընկել իր խիզախությամբ ու տոկունությամբ, արժանացել կառավարական պարգևների ու վերադաս հրամանատարության խրախուսանքին:

Հետպատերազմյան շրջանում Ա. Միկոյանը ձգտում է ավելի հիմնորեն տիրապետել ժամանակակից օդային մարտավարության արվեստին: Նա ընդունվում և հաջողությամբ ավարտում է ռազմաօդային ակադեմիան: Մոսկվայի զինվորական օկրուգում Ա. Միկոյանին վստահվում են մի շարք պատասխանատու պոստեր: Իր պահանջկոտությամբ, միաժամանակ բարի ու հոգատար վերաբերմունքով նա մեծ հեղինակություն է վայելում ենթակաների շըրջանում:

Գրքում ակնարկներ են զետեղված նաև զորապետներ Գ. Ն. Ֆիլիպովի, Վ. Ս. Տամուրչիի, Գ. Ք. Չալախյանի, Ա. Գ. Խանդանյանի, բժշկական ծառայության գեներալ-մայոր Ս. Ի. Կարճիկյանի, երկարամյա քաղաշխատող գնդապետ Ա. Հ. Հարությունյանի և ուրիշների մասին: Գրքի բոլոր ակնարկներում շեշտված է կոմունիստների ու կոմերիտականների ավանգարդային դերը ահեղ կռիվներում: Նրանցից շատերը զոհաբերել են իրենց կյանքը հանուն հաղթանակի:

Գրքի ընթերցողները ուրախությամբ ընդունեցին այն լուրը, որ Ա. Ղազարյանի՝ **Պատերազմ, մարդիկ, ճակատագրեր** քառահատոր հուշագրությունն արժանացել է ՀՍՍՀ 1985 թ. պետական մրցանակի:

**Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ**
**Պաշտոնաթող փոխգնդապետ**

ՔՆՆԱՐԿՈՒՄ ԵՆՔ ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՆԱԽԱԳԾԵՐԸ



ՄԵԾ ՀԱՂԹԱՆԱԿԻ 40 ՏԱՐԻՆ



ՄԵԾ ՀԱՂԹԱՆԱԿԻ ՏԱՐԵԳՐՈՒԹՅԱՆ ԷՋԵՐԻՑ





ՌՈՒՍԱՍՏԱՆՅԱՆ ԱՌԱՋԻՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ 80-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ



ԵՐԵՎԱՆԻ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ 80-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ



ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՊՐԱԿՏԻԿԱ



ՀԱՇՎԵՏՎՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԵՎ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՍԿԶԲՆԱԿԱՆ ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ



ՏԱՍՆՄԵԿԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿԻ ԲՆԱԳԾԵՐՈՒՄ



ՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԵՐ



ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԻ ՃԱԿԱՏՆԵՐՈՒՄ



ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ ԴԻՐՔԵՐՈՒՄ



ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԹԵՄԱՆԵՐ



ՆՈՐ ՄԱՐԴՈՒ ՁԵՎԱՎՈՐՄԱՆ ՊՐՈԲԼԵՄՆԵՐ



ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՄՇԱԿՈՒՅԹ



ԳԻՏՈՒԹՅԱՆ ՀՈՐԻԶՈՆՆԵՐԸ

---



---

Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе, 2.

Խմբագրության հասցեն՝ **375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06, պատասխանատու քարտուղար՝ 52—99—22, մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժին՝ 52—05—58, կուսակցական կյանք բաժին՝ 52—25—43, էկոնոմիկայի բաժին՝ 52—57—56, գիտության և կուլտուրայի բաժին՝ 52—99—84, խմբագրության վարիչ՝ 53—86—11, գրական աշխատողներ՝ 52—66—77:

---

*Հանձնված է շարվածքի 08.11.85 թ.: Ստորագրված է տպագրության 16.12.85 թ.: ՎՖ 05292: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրություն՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,8 հրատ. մամ., Տպաքանակ՝ 16.832: Պատվեր՝ 2523:*

---

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան 23, Օրջոնիկիձեի պող. № 2:*

**Типография издательства ЦК КП Армении.**

**Ереван-23, пр. Орджоникидзе, 2.**